ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

**12**

ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1971

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջապես կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12** ԴԵԿՏԵՄԲԵՐ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


Բովանդակություն

### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



### ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# Содержание

Статьи





# ՀՈԴՎԱԾՆԵՐ


Մ. ՍՈՒՍԼՈՎ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, քարտուղար


## ՍՄԿԿ-Ն ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ Է*

Ներկայումս սովետական ժողովուրդը լուծում է սոցիալիստական հասարակության հետագա բազմակողմանի զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բարդ և բազմազան խնդիրները, որ նշել է ՍՄԿԿ XXIV համագումարը։ Մենք խորապես համոզված ենք, որ այդ խընդիրները կկատարվեն։ Մեր կոմունիստական կուսակցությունը, որը զինված է մարքսիստական-լենինյան մեծ ուսմունքով, շարունակ հարստացնելով և զարգացնելով այն, մեծ հաջողությամբ է ղեկավարում մասսաների հեղափոխական-վերափոխող գործունեությունը։

Աշխարհի բոլոր պրոգրեսիվ, իսկապես հեղափոխական ուժերն ընդունում են, որ ՍՄԿԿ-ն, որի ղեկավարությամբ ՍՍՀՄ-ում առաջին անգամ իրագործված է հասարակության սոցիալիստական վերափոխությունը և հարթվում է դեպի կոմունիզմ տանող ճանապարհը,— համաշխարհային կոմունիստական շարժման թեորիապես և քաղաքականապես փորձված ու կոփված ջոկատն է։

ՍՄԿԿ XXIV համագումարը կրկին անգամ համոզիչ կերպով ցույց տվեց, որ ՍՄԿԿ եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցություն, որը խորապես կապված է ժողովրդի հետ, արտահայտում է նրա կենսական շահերը, եղել և մնում է ստեղծագործական մարքսիզմի կուսակցություն, մի կուսակցություն, որն իր ամբողջ գործունեության մեջ օրգանապես մարմնավորում է հեղափոխական թեորիայի և հեղափոխական պրակտիկայի միասնությունը՝ հասարակական զարգացման նորագույն տենդենցների գիտական վերլուծման և ընդհանրացման հիման վրա։

---

* Ներածական խոսք՝ մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի, Հասարակական գիտությունների ակադեմիայի, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական բարձրագույն դպրոցի և ՍՍՀՄ ԳԱ հասարակական գիտությունների սեկցիայի գիտական կոնֆերանսում, որը նվիրված էր՝ «ՍՄԿԿ XXIV համագումարը և մարքսիստական-լենինյան թեորիայի զարգացումը» պրոբլեմին։

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի՝ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, նոր հնգամյա պլանի դիրեկտիվներում, պատվիրակների ելույթներում, համագումարի բոլոր փաստաթղթերում և որոշումներում մարմնավորված է կուսակցության կոլեկտիվ միտքը, կոլեկտիվ փորձը և կոլեկտիվ կամքը, բազմակողմանիորեն բացահայտված են ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործման և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման արմատական հարցերը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա համախմբման և զարգացման հարցերը, խաղաղության, դեմոկրատիայի, ժողովուրդների ազգային անկախության և սոցիալական պրոգրեսի համար պայքարի հեռանկարները, միջազգային կոմունիստական շարժման համախմբման հարցերը։ Համագումարի աշխատանքի արդյունքներն ակնառու և համոզիչ կերպով ցույց են տալիս, որ մեր կուսակցությունն իր ողջ գործունեության մեջ հենվում է լենինյան գաղափարական ժառանգության վրա, հաստատ հետևում է լենինյան քաղաքականությանը, ստեղծագործորեն է լուծում հասարակական պրոգրեսի հասունացած պրոբլեմները։

Եղբայրական կուսակցությունները ՍՄԿԿ XXIV համագումարում իրենց ներկայացուցիչների ունեցած ելույթներում, իրենց համագումարներում և կենտրոնական կոմիտեների պլենումներում ընդունած փաստաթղթերում, ինչպես նաև մամուլում, նշում են, որ ներքին քաղաքականության հարցերի և միջազգային պրոբլեմների վերաբերյալ ՍՄԿԿ գիտականորեն հիմնավորված որոշումները հսկայական նշանակություն ունեն բանվոր դասակարգի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության համար, կապիտալիզմի տիրապետության տապալման, սոցիալիզմի կառուցման և ամրապնդման գործում հեղափոխական ուժերի պայքարի համար։

Մարքսիստական-լենինյան տեսության մեջ նշանակալից ավանդ է խաղաղության և միջազգային անվտանգության համար, ագրեսիայի իմպերիալիստական քաղաքականության դեմ, գաղութայնության մնացուկները և նոր գաղութայնությունը լիկվիդացնելու, փոխադարձաբար շահավետ համագործակցության համար XXIV համագումարի նշած պայքարի կոնստրուկտիվ ծրագիրը։ ՍՄԿԿ և սովետական կառավարությունը ոչ միայն առաջ են քաշել խաղաղության ծրագիր, այլև, հենվելով ՍՍՀՄ վիթխարի և հարաճուն հզորության վրա, սոցիալիստական մյուս երկրների հետ դաշնակցած, բոլոր դեմոկրատական, խաղաղասեր ուժերի օժանդակությամբ, կենսագործում են խաղաղության այդ ծրագիրը։ Այդ ամենը մեծացնում է սոցիալիզմի ձգողական ուժը, ամրապնդում է նրա դիրքերը, պատմական ավելի բարենպաստ պայմաններ է ստեղծում համաշխարհային հեղափոխական պրոցեսի ընդլայնման և խորացման համար։

ՍՄԿԿ XXIV համագումարը տվեց սոցիալիզմի և կապիտալիզմի հակամարտության ներկա էտապի գիտական խոր վերլուծությունը։ Այդ էտապի առանձնահատկություններն են՝ համաշխարհային սոցիալիզմը վերջնականապես հաստատել է իր պատմական նախաձեռնությունը, որոշում է հասարակական զարգացման գլխավոր բովանդակությունը և ուղղությունը, ուժերի հարաբերակցության մեջ արմատական փոփոխություն է առաջ բերել և շարունակում է արտամղել կապիտալիզմը, թևակոխել է այնպիսի փուլ, երբ սոցիալիզմի առավելությունները գնալով ավելի լրիվ ու բազմակողմանի են բա-



ցահայտվում։ Կյանքն ամբողջովին հաստատեց ՍՄԿԿ ծրագրի այն դրույթի ճշմարտացիությունը, որ հասարակական զարգացման ընթացքի վրա գնալով ավելի կաճի համաշխարհային սոցիալիստական սիստեմի ներգործությունը։ Համաշխարհային պատմության զարգացման վրա սոցիալիզմի ներգործությունն իսկապես համընդհանուր բնույթ է ստացել։ Այն աշխարհում տեղի ունեցող պրոցեսների վրա ազդում է իր տնտեսական, սոցիալ-քաղաքական, գիտա-տեխնիկական և գաղափարախոսական զարգացմամբ։ Սոցիալիզմի և կապիտալիզմի պատմական հակամարտության ընթացքում ամրապնդվում է արդիականության երեք գլխավոր հեղափոխական ուժերի՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և ազգային-ազատագրական շարժման ընդհանուր ճակատը։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսը ծավալվում է գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում։ Այդ ամենը ժամանակակից դարաշրջանը դարձնում է մարդկության պատմության մեջ առավել հեղափոխական դարաշրջան։

Կապիտալիզմը հարկադրված է ամեն կերպ հարմարվել այն փոփոխություններին, որոնք աշխարհում առաջ են բերում ամրապնդվող սոցիալիզմը, բոլոր հեղափոխական դեմոկրատական ուժերը։ Սակայն կապիտալիզմը չունի սոցիալ-քաղաքական ռեզերվներ, և ոչ հոգևոր արժեքներ, որ մշակի այնպիսի գաղափարներ, որոնք ունակ լինեին հրապուրելու մասսաներին և դրանով իսկ պատասխանելու դարի վճռական պատմական մարտահրավերին— սոցիալիզմի մարտահրավերին։ Ներկայումս ավելի պարզորոշ է դարձել, որ մոնոպոլիստական բուրժուազիայի վարած մանևրելու և հարմարվելու քաղաքականությունն ունակ չէ վերացնելու կապիտալիզմի անբուժելի արատները և անխուսափելի կործանումից փրկելու իր դարն ապրած այդ հասարակական սիստեմը։

Տնտեսական և քաղաքական անկայունության ուժեղացում, հին հակասությունների սրում ու նոր հակասությունների դրսևորում, ռեակցիա ներքին և արտաքին քաղաքականության մեջ, հասարակական ողջ կյանքի միլիտարացում, ռազմական ագրեսիա աշխարհի մեկ այս մեկ այն մասում, ջերմամիջուկային պատերազմի մշտական սպառնալիք, տնտեսական ճգնաժամեր և վալյուտային ցնցումներ, գործազրկություն, սոցիալական անհավասարության աճ և միլիոնավոր մարդկանց աղքատություն արտադրական վիթխարի հնարավորությունների և մի բուռ միլիարդատերերի հարստացման ֆոնի վրա— ահա թե ինչ է բերում մարդկությանը մոնոպոլիստական կապիտալի տիրապետությունը։ Կապիտալիստական հասարակության բոլոր հակամարտությունների չտեսնված սրումը հրամայական անհրաժեշտություն է դարձնում հեղափոխական վերափոխությունները։

Սոցիալիզմի հաջողությունների վերընթացը և համաշխարհային հեղափոխական պրոցեսի շրջանակների ընդլայնումն ուղեկցվում են գաղափարական պայքարի խիստ սրվածությամբ։ Հեղափոխական ուժերի ճնշման տակ իմպերիալիստական բուրժուազիայի դիրքերի խարխլումն ուժեղացնում է նրա դիմադրության կատաղությունը։ Նա գործադրում է պայքարի ավելի նրբին ձևեր, դիմում է գաղափարախոսական դիվերսիայի, փորձում է օգտագործել ռեֆորմիստական ամեն տեսակ տատանումները։ Չի կարելի հաշվի չառնել նաև այն, որ ոչ-պրոլետարական լայն մասսաներին հակաիմպերիալիստական պայքարի մեջ ներգրավելու կապակցությամբ հաճախ իրեն զգալ

են տալիս այդ մասսաների քաղաքական անկայունությունը և գաղափարախոսական խակությունը։ Այդ ամենն առաջ է բերում մարքսիզմ-լենինիզմին խորթ տարբեր տեսակի հոսանքներ՝ ավանտյուրիստական «ձախլիկության» և տաբերայնության քարոզ, ճղճղան հեղափոխականություն և համաձայնողականություն։ Կոմունիստական շարժման հակառակորդների շարքերում պայքարում են անարխիստներ և տրոցկիստներ, մաոիստներ և այլ ռևիզիոնիստներ ու ռեֆորմիստներ։ Շատ բնորոշ է, որ այդ ուղղությունների միջև տարբերությունները գնալով ավելի են ջնջվում-վերանում։ Աջ և «ձախ» օպորտունիստներն ավելի հաճախակի են իրար միանում հակասովետականության, հակակոմունիզմի, նացիոնալիզմի հողի վրա, իրական սոցիալիզմի դեմ պայքարելու հողի վրա։ XXIV համագումարը, որը նոր ավանդ և համախմբվածություն մտցրեց կոմունիստական շարքերում, գաղափարական-տեսական հուժկու հարված հասցրեց օպորտունիզմի և ռևիզիոնիզմի բոլոր տեսակներին, համաշխարհային հեղափոխական պրոցեսում ավելի բարձրացրեց սոցիալիզմի վարկը և կոմունիստական շարժման ղեկավար դերը։

Համագումարը ժամանակակից պայմաններին համեմատ զարգացրեց մարքսիստական-լենինյան դրույթը՝ մեր ժամանակի հասարակական բոլոր շարժումների մեջ բանվոր դասակարգի հեղափոխական-վերափոխիչ առաջատար դերի մասին, ջախջախեց հասարակության մեջ բանվոր դասակարգի դերի նսեմացման փորձերը։ Հայտնի է, որ վերջին տարիներին, արտասահմանում մեծ չափով տարածվել են կապիտուլյանտական արատավոր դատողություններ բանվոր դասակարգի հեղափոխական պոտենցիալի իբրև թե թուլացման, հասարակության կյանքում նրա տեսակարար կշռի անկման մասին։ Երևան են եկել բանվոր դասակարգին կամ մտավորականությանը, կամ գյուղացիությանը և կամ ուսանողությանը հակադրելու անհիմն տենդենցներ։ Բուրժուական ռեֆորմիզմը, օպորտունիստական գաղափարախոսությունը և քաղաքականությունն իմպերիալիզմն օգտագործում է բանվորական շարժումը ներսից պայթեցնելու, այն կապիտալիզմի սիստեմի մեջ «ներմիացնելու» փորձերով։ ՍՄԿԿ XXIV համագումարը, լիովին համապատասխան մարքսիստական-լենինյան ուսմունքին, գիտականորեն ընդհանրացնելով արդիական իրական պրոցեսները, ցույց տվեց, որ դարի բոլոր արմատական փոփոխությունները, լինեն դրանք սոցիալական, տնտեսական թե գիտա-տեխնիկական, չեն թուլացնում, այլ ուժեղացնում են բանվոր դասակարգի, որպես կապիտալիզմի գերեզմանափորի, սոցիալիզմի ստեղծողի և կազմակերպչի համաշխարհային, պատմական դերը։

Բանվոր դասակարգի մարտական ավանգարդը, նրա առաջնորդն ու գաղափարական ղեկավարը մարքսիստական-լենինյան կոմունիստական և բանվորական կուսակցություններն են, որոնք ամուր հաստատել են իրենց դիրքը որպես արդիականության ամենաազդեցիկ, ամենակազմակերպված և ակտիվ քաղաքական ուժի, որն իրապես կանգնել է մարդկության սոցիալական պրոգրեսի գլուխ։

XXIV համագումարը նշեց, որ կապիտալիզմի երկրների բանվոր դասակարգը վերջին տարիներին ավելի է բարձրացրել իր մարտունակությունը, որպես մոնոպոլիաների գլխավոր և առավել ուժեղ հակառակորդի։ Բանվոր դասակարգը բոլոր շահագործվող խավերի, հակամոնոպոլիստական ճակատի բոլոր ջոկատների ձգողական կենտրոնն է։ Կապիտալիզմի միջնաբերդերում



պրոլետարիատի դասակարգային կռիվների մասշտաբների ընդլայնումը, այդ կռիվների մասսայականության և սրության վերընթացը, համբավաբերներն են նոր, ավելի հզոր ճակատամարտերի, որոնք կարող են հանգեցնել հասարակական արմատական վերափոխությունների, կապիտալիստական մոնոպոլիաների ամենազորության տապալմանը և աշխատավորության մյուս խավերի հետ դաշնակցած բանվոր դասակարգի կողմից իշխանության նվաճմանը։

Համագումարի փաստաթղթերում տրված է սոցիալիզմի ամրապնդման և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում բանվոր դասակարգի առաջատար դերի աճման գիտական հիմնավորումը։ Բանվոր դասակարգի պատմական միսիայի մեծացումը որոշվում է սոցիալիստական արտադրության սիստեմում նրա նշանակության ուժեղացմամբ, հասարակական հարաբերություններում նրա ղեկավար դերով, նրա բնորոշ գծերով՝ հեղափոխականությամբ, կարգապահությամբ, կազմակերպվածությամբ, գիտակցականությամբ, քանի որ հենց բանվոր դասակարգն է գիտական սոցիալիզմի գաղափարների դրոշակակիրը, որն ունակ է կոմունիստական իդեալի հիման վրա իր շուրջը միավորելու ժողովրդական լայն մասսաներին։

Սովետական հասարակության զարգացման ժամանակակից էտապի բովանդակության և նրա հեռանկարների վերլուծությունը ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից, խոշոր ավանդ է գիտական կոմունիզմի տեսության մեջ։ Այդ էտապի առանձնահատկությունն այն է, որ ՍՍՀՄ-ում պատմության մեջ առաջին անգամ կառուցված է և հաջողությամբ գործում է սոցիալիստական զարգացած հասարակություն։ Այդ դրությունը սկզբունքային վիթխարի նշանակություն ունի։ Դա տալիս է պարզորոշ ուղղություն, որով պետք է ընթանան մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման պրոբլեմների տեսական հետազոտությունները։

Որոշելով սոցիալիզմի պատմական տեղը՝ գիտական գրականության մեջ երբեմն սահմանափակվում են սոսկ այնպիսի բնութագրումներով, թե սոցիալիզմն անզարգացած, ոչ հասուն հասարակություն է (լիակատար կոմունիզմի համեմատությամբ)։ Դա ճիշտ է սոցիալիզմի, որպես կոմունիզմի առաջին փուլի, նրա բարձրագույն փուլին վերաճելու պատմական հեռանկարի տեսակետից։ Խոսելով սոցիալիզմի մասին, մենք բնականաբար, միշտ էլ նկատի ունենք նրա զարգացման հեռանկարը։ Կոմունիզմը մեր մեծ նպատակն է, կոմունիզմը մեզ համար սրբազան է, և մեր տեսական աշխատողների կարևորագույն խնդիրն է գիտականորեն խոր կերպով հիմնավորել նրան հասնելու ուղիներն ու միջոցները։ Բայց ոչ պակաս կարևոր է այն պրոբլեմների տեսական մշակումը, որոնք լիակատարությամբ բացահայտում են այն բոլոր ասպեկտները, թե իրապես ինչ է սոցիալիզմը անցյալի համեմատությամբ, թե այն պատմական ինչ բարձրության է հասցնում մարդկությանը։

Մեր հասարակության նյութական հիմքի՝ արտադրության սոցիալիստական եղանակի, նրա պատմական տեղի և կապիտալիզմից ունեցած սկզբունքային տարբերության, սոցիալիզմի յուրահատուկ սպեցիֆիկ օրենքների, այդ օրենքների ներգործության օբյեկտիվ մեխանիզմի և ամբողջ հասարակության օգտին դրանց պլանաչափ օգտագործման բազմակողմանի և խոր հետազոտությունը մարքսիստ-գիտնականների կարևորագույն խնդիրն է։ Մեզ անհրաժեշտ են գիտականորեն խոր գիտելիքներ սոցիալիստական ռեալ իրականության մասին, որովհետև միայն դրանց հիման վրա է կառուցվում կու-

սակցության տնտեսական քաղաքականությունը: մշակվում են ժողովրդատնտեսական պլանները, կատարելագործվում են տնտեսության պետական կառավարման ամբողջ սիստեմը, սոցիալիստական տնտեսավարության ձևերն ու մեթոդները:

Հասուն սոցիալիզմը ենթադրում է կյանքի տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական պայմանների բազմակողմանի և ներդաշնակ զարգացում: Այդ փուլում հասարակությունն ունի նյութա-տեխնիկական հզոր բազա, որն ստեղծվում է ժողովրդական տնտեսության բազմակողմանի զարգացման, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումներն արտադրության մեջ կիրառելու հիման վրա: Սոցիալիզմն ապահովում է արտադրության և աշխատանքի արտադրողականության աճման կայուն և բարձր տեմպ: Զարգացած սոցիալիզմի համար բնորոշ են հասարակական հասուն հարաբերություններ, որոնք գոյանում են սոցիալիստական սեփականության լիակատար տիրապետության, ամեն տեսակ շահագործող տարրերի վերացման և հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության հաստատման հիման վրա: Այստեղ լիովին հաստատվում է ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման սոցիալիստական սկզբունքը: Զարգացած սոցիալիստական հասարակությունն ունի համապատասխան քաղաքական վերնաշենք՝ համաժողովրդական պետություն, որը մարմնավորում է ամենախոր դեմոկրատիզմ: Նրան յուրահատուկ են ժողովրդական կրթության լայն զարգացում, մարքսիստական-լենինյան աշխարհայացքի ընդհանուր տարածում և հաստատում:

Սոցիալիստական հասարակության զարգացման դիալեկտիկան այնպես է, որ իր առաջընթացի մեջ այն գնալով ավելի լրիվ է իրացնում իր հնարավորությունները, զարգանում, կատարելագործվում է և, միևնույն ժամանակ, նախադրյալներ է ստեղծում ավելի բարձր փուլի անցնելու համար, աստիճանաբար վերաճում է կոմունիզմի: Սոցիալիզմի զարգացումը և կոմունիզմի կառուցումը միասնական անընդմեջ պրոցես է, որի մեջ ամեն մի նոր էտապ հաջորդաբար կապված է նախընթացի հետ և հանդիսանում է հասարակության վերընթաց, առաջընթաց շարժման ավելի բարձր աստիճան:

Զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում գործնականորեն լուծվում է կոմունիստական շինարարության գլխավոր տնտեսական խնդիրը՝ ստեղծվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա, որը որակապես նոր երևույթ է պատմական և սոցիալական պլանում: Այդ բազայի շինարարությունը բազմապլանային, բարդ խնդիրների մի կոմպլեքս է, որը պահանջում է ոչ-քիչ ջանքեր և երկարատև ժամանակ:

Կուսակցության XXIV համագումարում էապես կոնկրետացվեցին կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղիները: Գիտա-տեխնիկական հեղափոխության նորագույն նվաճումների հիման վրա պետք է ապահովվեն արտադրաուժերի նյութական տարրերի՝ արտադրամիջոցների զարգացման նոր, բարձր մակարդակ, սկզբունքային վերափոխություններ արտադրապրոցեսների տեխնոլոգիայում, արտադրության, աշխատանքի և կառավարման կազմակերպության տեխնիկական կողմի արմատական կատարելագործում: Խոսքը վերաբերում է նաև ժողովրդական տնտեսության միջճյուղային ներդաշնակ ստրուկտուրաների և օպտիմալ համամասնությունների ստեղծմանը, արտադրաուժերի ռացիոնալ բաշխմանը և բնական, նյութական ու աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործմանը: Այդ ամե-



նը պետք է զգալիորեն բարձրացնեն հասարակական աշխատանքի արտադրողականությունը և ժողովրդական ողջ տնտեսության արդյունավետությունը:

Այդ հիման վրա.տեղի կունենան զարգացած սոցիալիստական հասարակության արտադրական և մյուս հարաբերությունների հետագա կատարելագործում, մարդկանց անընդհատ աճող պահանջմունքների գնալով ավելի լիակատար բավարարում, նյութական և կուլտուրական բարիքների իսկական առատության ստեղծում, նոր մարդու ձևավորման համար առավել բարենպաստ պայմանների ապահովում, նյութական տարրերը և հասարակական հարաբերությունները տնօրինող մարդկանց բազմակողմանի զարգացում:

Աշխատավորների պահանջմունքների գնալով ավելի լիակատար բավարարումը, անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումն իր հերթին հսկայական ազդեցություն են գործում արտադրության կատարելագործման և աճման վրա, աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա:

Ղեկավարվելով լենինյան սկզբունքային դրույթով և հենվելով մեր երկրում ստեղծված նոր, վիթխարի ռեզերվների վրա, գնալով ավելի լիակատար ձևով օգտագործելով և իրացնելով զարգացած սոցիալիզմի առավելությունները, կուսակցությունը վարում է սովետական հասարակության արտադրաուժերի և արտադրահարաբերությունների, սոցիալական և գաղափարական-քաղաքական կյանքի բազմակողմանի զարգացման քաղաքականություն:

Զարգացած սոցիալիստական էկոնոմիկան մեզ ավելի շատ հնարավորություններ և միջոցներ է ընձեռում ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծման համար, քան այն, որ մենք ունեինք առաջ, սոցիալիստական շինարարության առաջին ժամանակահատվածում: Տնտեսական աճն արագացնող այդ հնարավորություններն ու միջոցները գնալով ավելի լրիվ են իրացվում ժողովրդական տնտեսության տնտեսական արդյունավետությունն ամեն կերպ բարձրացնելու համար կուսակցության վարած կուրսը հետևողականորեն կիրառելու ընթացքում: Գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա արտադրապրոցեսների ինտենսիվացում, հանրային արտադրության միջճյուղային և ներճյուղային կառուցվածքի կատարելագործում՝ դրա ամենապրոգրեսիվ ուղղությունների առաջընթաց զարգացման հիման վրա աշխատանքի գիտական կազմակերպում, ժողովրդական տնտեսության պլանավորման և կառավարման կատարելագործում, տնտեսավարության սոցիալիստական ձևերի ու մեթոդների զարգացում— սրանք են կուսակցության տնտեսական քաղաքականության կարևորագույն օղակները: Դրա հետևողական կենսագործումը թույլ է տալիս սոցիալիզմի առավելությունները լավագույն ձևով միացնել գիտա-տեխնիկական հեղափոխությունն ամեն կերպ զարգացնելու հետ, արագացնել առաջընթաց շարժումը դեպի բարձրագույն փուլը՝ կոմունիզմը և այդ հիման վրա հաջողությամբ լուծել մեր գլխավոր սոցիալական խնդիրը՝ անշեղորեն բարձրացնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրան:

Անշուշտ, կուսակցությունը շարունակ ձգտել է զարգացնել էկոնոմիկան՝ ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու համար: Սոցիալիստական արտադրության նպատակը, մատնացույց էր անում Վ. Ի. Լենինը, հենց այն է, որ ապահովվի «հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և բազմակողմանի ազատ զարգացումը» (ПСС, т. 6, стр. 232):

Սակայն այդ խնդիրը լուծվում էր բարդ ուղիներով, հսկայական դժվա-

բությունները հաղթահարելու և ջանքերը որոշ պայմաններում առավելապես
մեր զարգացման ամենակարևոր տեղամասերում կենտրոնացնելու միջոցով:
Միայն սոցիալիստական հասուն հասարակությունը նյութական նախադրյալ-
ներ է ստեղծում այդ խնդիրն ավելի լիակատար լուծելու համար:

ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական նշանակությունն այն է, որ
նշեց սոցիալական միջոցառումների լայն ծրագիր, որոնց նպատակն է բարձ-
րացնել բնակչության բոլոր խավերի բարեկեցությունը, ամենից առաջ, ար-
դյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողակա-
նության մակարդակը հավասարեցնելու հիման վրա աստիճանաբար մերձեց-
նել քաղաքի և գյուղի բնակիչների կյանքի մակարդակը, սովետական մարդ-
կանց համար ստեղծել աշխատանքի և հանգստի, ընդունակությունների բազ-
մակողմանի զարգացման և ստեղծագործական ակտիվության, աճող սերնդի
դաստիարակության համար ավելի բարենպաստ պայմաններ: Համագումարը
սահմանեց, որ իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է. սոցիալիստական
արտադրության հումկու տեմպերի արդյունավետությունը բարձրացնելու, գի-
տա-տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության աճն
արագացնելու հիման վրա ապահովել ժողովրդի կյանքի նյութական և կուլ-
տուրական մակարդակի նշանակալից վերելք:

Համագումարն ընդգծեց, որ ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրա-
կան մակարդակի նշանակալից վերելքը ո՛չ միայն իններորդ հնգամյակի գլ-
խավոր խնդիրն է, այլև երկրի տնտեսական զարգացման ընդհանուր օրիեն-
տացիան, երկարատև ժամանակով:

Ժողովրդի բարեկեցության աճն իր բովանդակությամբ և նշանակությամբ
շատ բազմակողմանի խնդիր է և խիստ սխալ կլիներ այդ խնդրին մոտենալ
զուտ սպառողական տեսակետից: Նյութական բարիքների լիությունը, մարդ-
կային ընդունակությունների զարգացման, անհատի ծաղկման, նյութական
արտադրության կատարելագործման, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի
աճի, սոցիալական պրոգրեսի համար կարևորագույն նախադրյալ է:

Ժողովրդի կյանքը բազմակողմանիորեն բարելավելու պրոբլեմների լու-
ծումը կուսակցությունը սերտորեն կապում է մեր հասարակության մեջ սո-
ցիալական միակերպություն հաստատելու խնդրի հետ:

«Կուսակցության քաղաքականության նպատակն է,— ասում էր Լ. Ի.
Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— նպաստել բանվոր դասակարգի,
կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության մերձեցմանը, քաղա-
քի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տար-
բերությունների աստիճանական հաղթահարմանը: Դա անդասակարգ կոմու-
նիստական հասարակարգի կառուցման գլխավոր տեղամասերից մեկն է: Բո-
լոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը, սովետական ժողո-
վրդի բարոյական ու քաղաքական համկությունների դաստիարակումը, նրա
սոցիալական միասնության ամրապնդումը մեծ մոտ տեղի են ունենում
մարքս-լենինյան գաղափարախոսության հիման վրա, որն արտահայտում է
բանվոր դասակարգի սոցիալիստական շահերը և կոմունիստական իդեալ-
ները»:

Կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մեծագույն նվա-
ճումն այն է, որ մեր բազմամիլիոն սովետական ժողովուրդը կազմող բոլոր
ազգերն ու ժողովուրդները զարգացման բարձր մակարդակի են հասել կյան-



քի բոլոր բնագավառներում: Ազգերի և ժողովուրդների տնտեսական, սոցիալ-
քաղաքական և հոգևոր զարգացման մակարդակների հավասարեցումն ապա-
հովել է մեր ժողովրդի արագ և բազմակողմանի սոցիալական պրոգրեսը:

Թեորիական վերլուծության կարևոր օբյեկտ են հանդիսանում սոցիալիս-
տական դեմոկրատիայի զարգացման պրոցեսները: Վ. Ի. Լենինը նշում էր, որ
սոցիալիստական պետության ուժի աղբյուրն անխզելի կապն է մասսաների
հետ, հասարակական գործերի իրական կառավարման մեջ նրանց ներգրա-
վումը: Լիովին համապատասխան այդ գաղափարներին, համագումարն ընդ-
գծեց, որ սոցիալիստական դեմոկրատիայի իմաստն ու բովանդակությունը
կուսակցությունը տեսնում է երկրի կառավարման, հասարակական գործերում
ժողովրդական մասսաների օրըստօրե ընդլայնվող մասնակցության մեջ: Այդ
պրոցեսը, անշուշտ, անխզելիորեն կապված է սովետական մարդկանց սո-
ցիալական ակտիվությունը, քաղաքական գիտակցականությունը, հոգևոր հա-
սունությունը բարձրացնելու, աշխատավորների դեպուտատների սովետների,
պրոֆմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակեր-
պությունների աշխատանքը բարելավելու հետ: Սոցիալիստական դեմոկրա-
տիայի բուն ամենայնի կատարելագործում, որի դասակարգային էությունն
արտահայտում է բանվոր դասակարգի և ամբողջ սովետական ժողովրդի ար-
մատական շահերը, մասսաների ստեղծագործական նախաձեռնության հե-
տագա զարգացում, պետական և հասարակական կառավարման մեջ նրանց
մասնակցության ընդլայնում— այսպես է սովետական հասարակության գե-
պի կոմունիզմ տանող քաղաքական մայրուղին:

Համագումարն ընդհանրացնելով սոցիալիզմի շինարարության և սոցիա-
լիստական երկրների փոխհարաբերությունների փորձը, մի շարք կարևոր տե-
սական դրույթներ հիմնավորեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի
զարգացման հեռանկարների և օրինաչափությունների վերաբերյալ:

Արտադրաուժերի զարգացման, սոցիալ-տնտեսական ստրուկտուրայի
նրանց մակարդակի միջև եղած զանազանությունները, պատմական
առանձնահատկությունները— այս ամենն ազդեցություն են գործում նոր հա-
սարակարգի լինելության ժամկետների և ձևերի վրա: Այստեղից էլ բխում է
հասարակության սոցիալիստական զարգացման հասունության աստիճանների
և քաղաքական ու տնտեսական կազմակերպության ձևերի տարբերությունը,
տնտեսական կառուցվածքը, մասսաների ստեղծարար գործունեությունը ղե-
կավարելու մեթոդների յուրահատկությունը: Սակայն սոցիալիզմի համաշ-
խարհային սիստեմի զարգացման ամբողջ փորձի գիտական ընդհանրացումը,
ինչպես նաև նրա հաջողությունների, դժվարությունների աղբյուրների վերլու-
ծությունը համագումարին հիմք տվին տեսականորեն և քաղաքականորեն
ավելի փաստարկված գնելու սոցիալիստական շինարարության ընդհանուր
օրինաչափությունների հարցի առաջնակարգ նշանակությունը: Համագումարի
նյութերում կրկին անգամ ընդգծված է, որ անտեսելով ընդհանուր օրինաչա-
փությունները հնարավոր չէ սոցիալիզմ կառուցել՝ ապահովել նրա հաջող
զարգացումը: Դրա հետ միասին պահանջվում է գիտականորեն հիմնավորել
դրանց իրացման ուղիները և իրագործման մեխանիզմը՝ այս կամ այն երկրի
զարգացման ամեն մի կոնկրետ էտապում, հաշվի առնելով նրա պատմական
զարգացման առանձնահատկությունները:

Տնտեսական և քաղաքական մեծ նշանակություն ունեն համագումարի

այն հետևությունները, որոնք բացահայտում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման հեռանկարները, սոցիալիստական երկրների հարաբերությունները։ Համագումարն ընդգծեց, որ սոցիալական կարգի ընդհանրությունը, սոցիալիստական երկրների ժողովուրդների արմատական շահերի համընկնումը որոշում են նրանց մերձեցման և համախմբման պատմական առաջատար տենդենցը։ Դրա հետ միասին Համագումարը լենինյան ուղղամտությամբ և անկեղծությամբ խոսեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի լինելության պրոցեսում ծագող սուբյեկտիվ և օբյեկտիվ բնույթի դժվարությունների և դրանց հաղթահարման ուղիների մասին։ Սոցիալիզմի գործի համար մեծ վտանգ է ներկայացնում չինական այժմյան ղեկավարների հակալենինյան և հակասովետական գիծը։ Մենք վճռականորեն մերժում ենք այդ գիծը և ՍՄԿԿ հասցեին Պեկինի տարածած զրպարտչական հերյուրանքները։ Դրա հետ միասին մենք շարունակ ձգտել ենք և այժմ էլ պատրաստ ենք ըստ ամենայնի աջակցելու բարի դրացիական հարաբերությունների վերականգնմանն ու զարգացմանը Սովետական Միության և Չինական Ժողովրդական Հանրապետության միջև։

Այժմ մենք մեծ պարզորոշությամբ տեսնում ենք համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման գոյացած և իրենց ակտիվորեն դրսևորող հիմնական օրինաչափությունները։ Բայց շատ հարցեր դեռևս պահանջում են տեսական վերլուծություն և գիտական ընդհանրացում։ Խոսքը վերաբերում է իրենց պատմական էությամբ նոր պրոցեսների՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման պրոցեսների ավելի խոր գիտական հիմնավորմանը։ Առաջին հերթին շատ կարևոր է, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից, ցույց տալ սոցիալիստական երկրների քաղաքական ու տնտեսական օբյեկտիվորեն օրինաչափ բնույթը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի համախմբվածությունն ամրապնդելու գործում յուրաքանչյուր ժողովրդի կենսական շահագրգռվածությունը, ինչն ամբողջովին համապատասխանում է յուրաքանչյուր սոցիալիստական երկրի ազգային շահերին։ Հրատապ խնդիր է սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի պրոբլեմի մշակումը, որն, ինչպես այդ ցույց է տրված ՏՓԽ կոմպլեքսային ծրագրում, նրա բոլոր մասնակիցների համար ապահովում է գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումների առավել արդյունավետ օգտագործում, արտադրության արագ աճ, կապիտալիզմի հետ տնտեսական մրցակցության մեջ սոցիալիզմի դիրքերի ամրապնդում։

XXIV համագումարը նշեց տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացման հիման վրա սովետական հասարակության բոլոր կողմերի արագ զարգացման ոգեշնչող հեռանկարը։

Կոմունիստական շինարարության բոլոր պրոբլեմների հաջող լուծման անհրաժեշտ պայմանը մարքսիստական-լենինյան կուսակցության ղեկավարությունն է։ Դրա համար էլ, բնական է, որ մեզ մոտ մեծ ուշադրություն է նվիրվում կուսակցության ղեկավար դերի ուսմունքի զարգացմանը, կուսակցական շինարարության հարցերի մշակմանը։ ՍՄԿԿ-ն վճռականորեն հանդես եկավ կուսակցության և լենինյան կազմակերպչական սկզբունքների դերը նսեմացնելու ռևիզիոնիստական փորձերի դեմ։ Բանվոր դասակարգի կուսակցության դերի մարքսիստական-լենինյան ըմբռնման համար ՍՄԿԿ հետևողա-



կան պայքարը, եղբայրական կուսակցությունների խոստովանությամբ, միջազգային մեծ նշանակություն ունի։

Կուսակցության ղեկավար դերը նվաճված է աշխատավորության արմատական շահերի համար մղած երկար ու համառ պայքարով, հենվում է մասսաների մեջ ունեցած բարոյա-քաղաքական բարձր հեղինակության վրա։ Ներկայումս մեր կուսակցության և սովետական ժողովրդի միասնությունն ամուր է, ինչպես երբեք։

Սոցիալական զարգացման ամբողջ ընթացքը ցույց է տալիս, որ կոմունիստական շինարարության խնդիրների և մասշտաբների ընդլայնմանը զուգընթաց բարձրանում է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, նրա քաղաքական, կազմակերպական, գաղափարական գործունեության դերը։

Ժամանակակից էտապում կուսակցության ղեկավար դերի բարձրացումը բխում է իրենց մասշտաբով՝ վիթխարի և բարդությամբ բացառիկ ներքին և միջազգային խնդիրներից, մասսաների քաղաքական հասունության ու ստեղծագործական ակտիվության աճից, սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնումից և սոցիալական կառավարման նկատմամբ պահանջների բարձրացումից, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը բարելավելու և մարքսիստական-լենինյան տեսությունը շարունակ հարստացնելու անհրաժեշտությունից. մարքսիստական-լենինյան տեսությունը, որը միայն կարող է ընդգրկել հասարակական կյանքի բոլոր կողմերն իրենց միասնության մեջ և մատնացույց անել առաջընթացի ճիշտ ուղին, հնարավոր է դարձնում խուսափել սխալներից և սուբյեկտիվիստական վճիռներից։ Կոմունիստական շինարարության փորձի՝ մասսաների փորձի մարքսիստական-լենինյան ընդհանրացման հիման վրա է կոմունիստական կուսակցությունը մշակում պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների քաղաքական գիծը, ղեկավարում, միավորում է նրանց, ըստ ամենայնի զարգացնում մասսաների ստեղծագործական ակտիվությունը և նրանց ջանքերը մղում է մեկ նպատակի՝ կոմունիզմի հաղթանակին։ ՍՄԿԿ-ն հոգ է տանում, որ առավելագույն չափով բացահայտի մեր համաժողովրդական պետության բոլոր օղակների, ամեն կոլեկտիվի և աշխատավորի ստեղծարար հնարավորությունները։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մարմնավորում է սովետական հասարակության միասնությունը։ Կուսակցության հարաճուն դերը կապված է հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խավերի պահանջմունքների, ամբողջ ժողովրդի շահերի, բոլոր ազգերի և ժողովուրդների, մեր հասարակության բոլոր սերունդների շահերի ավելի լիակատար հաշվառման և զուգորդման անհրաժեշտության հետ։ Դրան համապատասխան կուսակցությունը ձգտում է կատարելագործել իր գործունեության ձևերն ու մեթոդները, զարգացնել ներկուսակցական կյանքի լենինյան սկզբունքներն ու նորմերը, ամրապնդել իր շահերի միասնությունը, բարձրացնել բոլոր կազմակերպությունների մարտունակությունն ու պատասխանատվությունը, խորացնել և ամրապնդել կապերը մասսաների հետ։

Ներկայումս գլխավոր խնդիրն է՝ մեր բոլոր ուժերն ու ռեզերվները մոբիլիզացնել XXIV համագումարի նշած հոյակապ պլանները կատարելու, կոմունիզմի շինարարության համար լիովին օգտագործել սովետական մարդկանց ունակություններն ու գիտելիքները, եռանդն ու տաղանդը։

Ընթացիկ հնգամյակում մեր առաջ ծառացող նոր, վիթխարի խնդիրները

մեղնից՝ կոմունիստներից, հատկապես հասարակական գիտությունների աշխատողներից պահանջում են լրջորեն բարձրացնել թեորիական գործունեության մակարդակը, ստեղծագործորեն մշակել կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմները։

Առաջվա նման շատ կարևոր են մնում ժողովրդական տնտեսության պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու պրոբլեմները։ Այստեղ գլխավորն այն է, որ մեր պլանները բոլոր մակարդակներում դարձնենք գիտա-տեխնիկական և սոցիալ-տնտեսական պրոգրեսի իսկական լենք։ Դրանք պետք է պարունակեն ժողովրդական տնտեսության զարգացման արմատական պրոբլեմների գիտականորեն հիմնավորված օպտիմալ լուծումներ, սոցիալիստական էկոնոմիկան առաջ մղեն ամենապրոգրեսիվ ուղիներով, ձրգտեն հասնել հասարակական արտադրության բարձր արդյունավետության։

Առանձնապես կարևոր և դրա հետ միասին առավել բարդ են հնգամյակների շրջանակից դուրս եկող պլանային երկարատև հեռանկարի մշակման պրոբլեմները։ Մեզ հարկավոր են երկարատև հեռանկարի պլաններ։ Չի կարելի հաստատ ընթանալ դեպի կոմունիզմ, չնայելով հեռու-հեռուները, չտեսնելով դեպի կոմունիզմ տանող մայրուղիները։ Երկարատև պլանավորման պրոբլեմների լուծման գործում չափազանց մեծ է գիտության, դրա ամենատարբեր ճյուղերի դերը։ Երկարատև հեռանկարի գիտականորեն հիմնավորված իրական պլան կազմելու համար անհրաժեշտ է գիտական խոր պրոգնոզ էկոնոմիկայի և գիտա-տեխնիկական պրոգրեսի բնագավառում, ինչպես նաև այդ աշխատանքների կոորդինացումը համապետական մասշտաբով։

Պլանավորման և գիտական պրոգնոզի ընդհանուր մակարդակի բարձրացումը պահանջում է սոցիալիզմի տնտեսական օրենքների, պլանավորման և սոցիալիստական տնտեսավարության պրակտիկայում սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողության և օգտագործման մեխանիզմի կոմպլեքսային խոր հետազոտություններ։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն օրենքների ձևակերպման էությանը, այլև դրանց գործողության և փոխգործողության վերլուծությանը, որոնք որոշում են հասարակության տնտեսական զարգացման իրական տենդենցները, տվյալ կոնկրետ պայմաններում՝ օրենքների դրսևորումների ուսումնասիրությունը։

Մեզ անհրաժեշտ են խոր հետազոտություններ, որոնք տալիս են նոր երևույթների վերլուծությունն ու ընդհանրացումը դրանց դինամիկայում, բացահայտում են կատարվող պրոցեսների էությունն ու տենդենցները, դրանց տալիս են կուսակցական, դասակարգային գնահատական, տնտեսական քաղաքականության համար պարունակում են գիտականորեն հիմնավորված գործնական առաջարկություններ և հանձնարարություններ։ Մեզ անհրաժեշտ են հետազոտություններ, որոնք թույլ կտան ավելի արագ գտնելու մեր հասարակարգի ընդերքում եղած ռեզերվները, գործողության մեջ դնելու այդ ռեզերվները և է՛լ ավելի արագացնելու հասարակական զարգացման ամբողջ պրոցեսը։

Հավատարմությունը մարքսիստական-լենինյան ուսմունքին, մարքսիստական-լենինյան տեսության ստեղծագործական զարգացումը և նրա հետևողական կենսագործումը կոմունիզմի շինարարության ուղիով մեր նոր հաջողությունների կարևորագույն պայմաններից են։

«Коммунист», № 14, 1971 г.

Կուսակցական ուսուցման սիստեմի ունկնդիրների համար

Վ. ՊԱՎԼՅՈՒՉԵՆԿՈ, Ս .ՊԻՐՈԳՈՎ

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԻՄՔՆ Է

Լենինյան այն հանգուցային դրույթներից մեկը, որով ղեկավարվում է մեր կուսակցությունը տնտեսական քաղաքականությունը մշակելիս, ընթացիկ ժամանակաշրջանի յուրահատկությունների հաշվառումն է, այն առանձնահատուկ-պատմական պայմանների ըմբռնումը, որոնց մեջ կենսագործվում ու իրականացվում է այդ քաղաքականությունը։ Ներկայումս սովետական ժողովուրդը ոչ միայն հսկայական հաջողությունների է հասել տնտեսական շինարարության ասպարեզում, այլև վիթխարի տնտեսական հզորություն կուտակել։ Այդ հզորության իրացումը, արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունների օգտագործումը կանխորոշում են տնտեսավարման այն նոր ուղիների ու մեթոդների առավելությունը, որոնք սովետական էկոնոմիկային հնարավորություն կտային ամենակարճ ժամկետում հասնել արտադրության և նյութական ու հոգևոր բարիքների սպառման ամենաբարձր մակարդակի։

Կուսակցության տնտեսական քաղաքականությունը, որ սահմանեց ՍՄԿԿ XXIV համագումարը, ելնում է երկրի տնտեսական զարգացման արդի էտապի պայմաններից ու առանձնահատկություններից։ Այդ էտապի գլխավոր առանձնահատկությունները հետևյալն են։ Նախ և առաջ Սովետական Միությունն այժմ ունի այնպիսի տնտեսական հզորություն, որը հնարավորություն է տալիս միաժամանակ լուծելու երկրի առաջ ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների ամբողջ կոմպլեքսը։ Մեր էկոնոմիկայի հնարավորությունները թույլ են տալիս ապահովել սովետական ժողովրդի կենսամակարդակի զգալի վերելք, հասարակական արտադրության զարգացման բարձր տեմպեր, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինում, գիտու-

թյան և կրթության արագ աճ, երկրի պաշտպանունակության բարձր մակարդակ, սոցիալական միջոցառումների սխտեմների կենսագործում։

Սոցիալական և տնտեսական խնդիրների այսքան լայնարձակ կոմպլեքսի կենսագործման համար այժմ երկիրն ունի բոլոր անհրաժեշտ պայմանները։ Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ «սոցիալիստական շինարարության առաջին փուլում մենք հարկադրված էինք կենտրոնանալ ամենաառաջնահերթ խնդրի, այն բանի վրա, ինչից կախված էր երիտասարդ սովետական պետության բուն գոյությունը։ Այժմ վիճակը փոխվում է։ Մենք ոչ միայն ուզում ենք (մենք դա միշտ էլ ուզել ենք), այլև կարող ենք և պետք է միաժամանակ լուծենք ավելի լայն շրջանակի խնդիրներ» (Լ. Ի. Բրեժնև, Կենտկոմի հաշվետու զեկուցումը XXIV համագումարին, «Հայաստան» հրատ., 1971 թ., էջ 60)։

Ներկայումս շեշտակիորեն աճել են երկրի տնտեսական աճի մասշտաբները։ Այսպես, 1971—1975 թթ. հնգամյա պլանով նախատեսված արդյունաբերական արտադրանքի 42—46 տոկոս ավելացումը նշանակում է, որ այդ հինգ տարվա ընթացքում երկրում կստեղծվի ավելի հզոր արդյունաբերություն, քան գոյություն ունի Անգլիայում և Ֆրանսիայում՝ միասին վերցրած։

ՍՍՀՄ-ում արտադրության այդպիսի զարգացումը կնվաճվի ոչ այնքան էքստենսիվ գործոնների՝ նոր ձեռնարկությունների կառուցման և նոր աշխատողների ներգրավման հաշվին, որքան ինտենսիվ գործոնների՝ գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, կազմակերպումն ու կառավարումը կատարելագործելու, կրթությունը զարգացնելու, աշխատավորների արտադրական որակավորումը բարձրացնելու և այլ միջոցառումների օգտագործմամբ։

Համագումարի որոշումներում ընդգծվում է, որ «սովետական ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ նախատեսված միջոցառումների իրականացման անհրաժեշտ պայմանը նյութական արտադրության, հասարակական աշխատանքի արդյունավետության ու արտադրողականության հետագա անշեղ աճն է»։ Հնգամյակով նախատեսված միջոցառումների կատարումը անմիջականորեն կապված է երկրի ազգային եկամտի մեծացման հետ, որը կաճի 37—40 տոկոսով և 1975 թ. կկազմի 365—373 մլրդ ռուբլի։ Ազգային եկամտի աճի առնվազն 4/5-ը կտա աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Աշխատանքի արտադրողականության այդպիսի աճ նվաճելու համար անհրաժեշտ են նոր տեխնիկայի արագացված արմատավորում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և սոցիալիստական արտադրության ինտենսիֆիկացում գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա։

1971—1975 թթ. ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կկազմեն մոտավորապես 500 մլրդ ռուբլի, որը 40 տոկոսով ավելի է նախորդ հնգամյակի համեմատությամբ։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված ժողովրդական բարեկեցության և տնտեսական բարձրացման աճի ծրագիրը հաջողությամբ կատարելու համար այնուամենայնիվ անբավարար է այդ ներդրումների նախկին մակարդակը։ Դրանց արդյունավետությունը պետք է զգալիորեն բարձրացվի. ներդրված միջոցների յուրաքանչյուր ռուբլու դիմաց անհրաժեշտ է ստանալ արտադրանքի արտադրության առավելագույն աճ։ Իսկ կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը առավել չափով կախված է այն բանից, թե որքանով է բարձր նոր գործարկվող արտադրական օբյեկտների տեխնիկական մակարդակը, որքանով են առաջադիմական իրականացվող տեխնիկական լուծումները։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, հետևաբար, իններորդ հնգամյակի գլխավոր խնդրի՝ ժողովրդի կյանքի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի զգալի վերելքի լուծման կարևորագույն պայմանն է։ Կարելի է ասել, որ իններորդ հնգամյա պլանում կարմիր թելի պես անցնում է գիտատեխնիկական առաջընթացի, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման և ժողովրդական բարեկեցության վերելքի միջև սերտ, անխզելի կապի գաղափարը։



ՍՍՀՄ տնտեսական զարգացման արդի էտապի մյուս կարևոր առանձնահատկությունն այն է, որ երկրի չափազանց բարդ, խոշոր մասշտաբներ ունեցող տնտեսության արագ աճը տեղի է ունենում արտադրության զարգացման հիրավի անսահմանափակ հնարավորություններ հայտնագործող ծավալուն գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում։ Մեր օրերում հասարակական աշխատանքի արտադրողականությունը, ինչպես կանխատեսում էր Մարքսը, գնալով ավելի մեծ չափով է սկսում կախման մեջ գտնվել գիտության ընդհանուր վիճակից, տեխնոլոգիայի զարգացման աստիճանից և արտադրության մեջ գիտության կիրառումից։ Հասարակության կյանքի նյութական հիմքը՝ անցյալի համեմատությամբ շատ ավելի մեծ չափով, դառնում է արտադրողական ուժերի մակարդակը, ուժեր, որոնց մեջ ավելի ու ավելի մեծ չափով և վերջին հաշվով վճռական նշանակություն են ձեռք բերում գիտությունը, նրա օգտագործումը տեխնոլոգիայում, արտադրության կազմակերպման ու կառավարման մեջ, որակյալ կադրերի պատրաստման գործում և այլն։

Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը, որը խոր հեղաշրջում է առաջացրել տնտեսական զարգացման բոլոր երկրների արտադրողական ուժերի վերելքի մեջ, Սովետական Միությունում հանդիսանում է այն հսկայական ուժը, որը նպաստում է սոցիալիզմի է՛լ ավելի առաջընթացին, կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազայի կառուցմանը։ Սոցիալիստական արտադրահարաբերությունները բացառում են այն խոչընդոտները, որպիսիք գիտության ու տեխնիկայի առաջընթացի դեմ հարուցում է տնտեսավարման կապիտալիստական սիստեմը։ Զարգացած սոցիալիզմը բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծում է գիտատեխնիկական հեղափոխության ավելի արագ կենսագործման, ի շահ ամբողջ հասարակության և յուրաքանչյուր մարդու, նրա նվաճումների օգտագործման համար։ Այդ պատճառով էլ կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ առաջադրված է պատմական կարևորության խնդիր՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը տնտեսավարման սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ։ Այդ խնդրի լուծման համար նաև անհրաժեշտ է գիտատեխնիկական առաջընթացի արագացում, ինչը որ տվյալ դեպքում բխում է արդի գիտատեխնիկական հեղափոխության օբյեկտիվ օրինաչափություններից, հեղափոխություն, որը կրճատում է գիտական հայտնագործության և վերջինիս իրականացման միջև ընկած ժամկետը, ավելի է արտադրական դարձնում բոլոր կապերը «գիտություն—տեխնիկա—արտադրություն» սիստեմում։ Կարելի է ասել, որ այժմ հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում գիտատեխնիկական առաջընթացի ավանդը չափվում է ոչ միայն գիտությամբ ստացված արդյունքների արժեքով, այլև նշանակալից չափով դրանց գործնական իրացման տեմպերով։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը բարդ և բազմապլան պրոցես է։ Այն, կարծես թե, կազմված է հետևյալ երկու փուլից. առաջին՝ գիտատեխնիկական պոտենցիալի կուտակում, գիտական և տեխնիկական գիտելիքների զարգացում, երկրորդ՝ գիտատեխնիկական նվաճումների իրացում։ Յուրաքանչյուր փուլը, իր հերթին, ունի մի քանի օղակներ. առաջին փուլը ներառնում է հիմնական և կիրառական հետազոտությունները, նախագծային և կոնստրուկտորական-տեխնոլոգիական մշակումները. երկրորդը՝ նոր արտադրանքի արտադրության յուրացումը, նրա շահագործումը սպառողի կողմից, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի մասսայական տարածումը ժողովրդական տնտեսության մեջ։

Գիտատեխնիկական պրոգրեսը արագացնելու համար անհրաժեշտ է կոմպլեքսային մոտեցում ունենալ նրա օղակների ինտենսիֆիկացմանը։ Ինչու, օրինակ, միջոցներ ծախսել կիրառական հետազոտություններն արագացնելու համար, եթե դրա արդյունքների գործնական կիրառմանը ձեռնամուխ կլինեն շատ տարիներ անց, և պե՞տք է արդյոք շտապեցնել նոր տեխնիկա մշակող-

ներին, եթե արդյունաբերությունը դեռևս ի վիճակի չէ յուրացնել դրանք։ «Գիտություն—տեխնիկա—արտադրություն» ամբողջ սիստեմի կոմպլեքսային զարգացումը հարկավոր է դիտել որպես այն պահանջների իրականացման կարևորագույն պայմաններից մեկը, որ առաջադրեց ՍՄԿԿ XXIV համագումարը. «Այն դարաշրջանում, երբ ավելի ու ավելի մեծ չափով է դրսևորվում գիտության, որպես անմիջական արտադրողական ուժի, դերը, գլխավոր են դառնում արդեն ոչ թե նրա առանձին նվաճումները, որքան էլ փայլուն լինեն դրանք, այլ ամբողջ արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը համագումարին, «Հայաստան» հրատ., 1971 թ., էջ 86)։

* * *

Սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունն արագացնելու և բարձրացնելու կարևորագույն պայմանը պետական միասնական գիտատեխնիկական քաղաքականությունն է։ Վերջինս սահմանում է գիտության ու տեխնիկայի՝ հասարակական շահերին համապատասխանող նպատակները, որոշում է առաջադրված նպատակներին հասնելու առավել արդյունավետ ուղիները և ապահովում դրա համար անհրաժեշտ տնտեսական պայմաններ ու խթաններ։

Պետական միասնական գիտատեխնիկական քաղաքականություն կիրառելու անհրաժեշտությունը պահանջվում է հետևյալ հիմնական պատճառներով։ Առաջին գիտատեխնիկական առաջընթացը, ինչպես արդեն նշվեց, դառնում է կարևորագույն տնտեսական և սոցիալական պրոբլեմների գլխավոր նախադրյալ։ Այդ է պահանջում գիտության ու տեխնիկայի զարգացման կառավարումը։ Երկրորդ, գիտատեխնիկական զարգացումը և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումը գնալով ավելի է դժվարանում, պահանջելով համաձայնեցնել բազմաթիվ ձեռնարկությունների ու գերատեսչությունների գործունեությունը։ Երրորդ, գիտահետազոտական աշխատանքները և նոր տեխնիկայի արմատավորման գծով տարվող աշխատանքները գնալով ավելի են թանկանում, այդ բնագավառում միայն պետական միասնական քաղաքականությունը կարող է առանձին կազմակերպությունների ու մինիստրությունների անհրաժեշտ նյութական, ֆինանսական, աշխատանքային և մյուս միջոցները կենտրոնացնել գիտատեխնիկական առաջընթացի հիմնական ուղղությունների վրա։

Որպես միասնական գիտատեխնիկական առաջնահերթ խնդիրներից մեկը, ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներով սահմանված է սկզբունքորեն նոր աշխատանքի գործիքների, նյութերի և տեխնոլոգիական պրոցեսների ստեղծում ու արմատավորում, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով գերազանցեն հայրենական և համաշխարհային նվաճումները։ Այդ խնդրի լուծման կարևորությունը որոշվում է նրանով, որ հենց այնտեղ, որտեղ գիտությունը բացահայտում է նյութի նոր հիմնական հատկություններ, նոր տեխնիկական սկզբունքներ և տեխնոլոգիական մեթոդներ, գիտատեխնիկական առաջընթացը բարձրանում է որակական մի նոր աստիճանի։ Գիտության ու տեխնիկայի զարգացման որակական թռիչքները հեղափոխականացնող ներգործություն են ունենում տնտեսական պրակտիկայի շատ բնագավառների վրա, ինչը որ, վերջին հաշվով, արտահայտվում է սկզբունքորեն նոր տեխնիկայի տնտեսական արդյունավետության զգալի աճով՝ ավանդույթային կարգով կիրառվող միջոցների արդյունավետության համեմատությամբ։

Միասնական գիտատեխնիկական քաղաքականության խոշոր պրոբլեմն է հին և նոր տեխնիկայի, վաղուց կառուցված և նորագույն ձեռնարկությունների ռացիոնալ հարաբերակցության սահմանումը։ Մեր արդյունաբերության մեջ դեռևս մեծ ճեղքվածք գոյություն ունի զանազան ձեռնարկությունների



աշխատանքի արտադրողականության հարցում, և որոշ ձեռնարկությունների ոչ պատշաճ տեխնիկական մակարդակը էականորեն իջեցնում է աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ։ Այդ պատճառով էլ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսված է արագացնել բարոյապես հնացած մեքենաների փոխարինումն ու արդիականացումը, սահմանափակելով քիչ արդյունավետ կապիտալ վերանորոգումները։

Իններորդ հնգամյակում գործարկվող նոր արտադրական ֆոնդերի բաժինը 1975 թ. կկազմի 46 տոկոս արդյունաբերության մեջ և 60 տոկոս գյուղատնտեսության մեջ։ Այդ ֆոնդերը կստեղծվեն բարձր արտադրողական և բարձր արդյունավետ տեխնիկայի բազայի վրա, որ արդյունաբերությունը կյուրացնի 1971—1975 թթ.։ Դրա հետևանքով էականորեն կբարձրանա արտադրության տեխնիկական մակարդակը։ Ընթացիկ հնգամյակում մեծ ուշադրություն է դարձվում արտադրության այն տեղամասերին, որտեղ մինչև այժմ տեխնիկական առաջընթացի տեմպերը դանդաղ են եղել։ Առաջին հերթին դա վերաբերում է օժանդակ արտադրությանը, որտեղ թույլ տեխնիկական հագեցվածության պատճառով այժմ զբաղված է արդյունաբերության մեջ բոլոր աշխատողների համարյա կեսը։ Օժանդակ արտադրություններում գիտատեխնիկական առաջընթացի առաջացումը հսկայական ռեզերվ է աշխատանքի արտադրողականության աճի համար, որ պետք է լիակատար չափով իրականացվի իններորդ հնգամյակում։

Գիտատեխնիկական քաղաքականության կարևորագույն խնդիրներից մեկը թողարկվող արտադրանքի նյութատարողության իջեցումն է։ Որքան ավելի քիչ հումք ու նյութեր ծախսվեն արտադրանքի միավորի վրա, որքանով ավելի շատ դեֆիցիտային միջոցներ հաջողվի փոխարինել լայնորեն տարածված և ավելի էժան արտադրանքներով, այնքանով ավելի արդյունավետ կլինի արտադրությունը։ Արտադրանքի նյութատարողության իջեցման մեջ հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հսկայական ռեզերվ է պարփակված։ Հնգամյակի վերջում, գոյություն ունեցող փաստական նորմաների և համեմատած, ծախսի տնտեսումը կկազմի 10 մլն տոննա սև մետաղների գլանվածք, մոտավորապես 50 մլրդ կվտժ էլեկտրաէներգիա, առնվազն 40 մլն խոր. մետր անտառանյութ, մոտ 50 մլն տ. պայմանական վառելանյութ։ Այդպիսի խնայողություն ձեռք բերելու համար անհրաժեշտ է գիտահետազոտական հիմնարկների լարված աշխատանքը, որտեղ պետք է էական տեղաշարժերի հասնեն ժամանակակից արտադրության տեխնոլոգիայի ամբողջ շղթայում՝ հումքի նյութից մինչև պատրաստի արտադրանքի թողարկումը։

Իններորդ հնգամյակում մեծ ուշադրություն է դարձվում ամբողջ ժողովրդական տնտեսության վերազինման նյութական բազա հանդիսացող ծանր արդյունաբերության զարգացմանը։ Գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա արագացված տեմպերով պետք է զարգանան էլեկտրաէներգետիկան, մեքենաշինությունը, քիմիական, նավթաքիմիական, գազի արդյունաբերությունը և արտադրության որոշ այլ, առավել էֆեկտիվ տեսակներ։

1971—1975 թթ. ընթացքում գործարկվելիք էլեկտրաէներգետիկայի կարողությունների աճը կապահովվի հիմնականում 300, 500, 800 հազ. կվտ և 1 մլն 200 հազ. կվտ կարողության խոշոր էներգետիկ բլոկներ գործարկելու միջոցով։ Դա կապահովի վառելիքի խնայողությունը և աշխատանքի արտադրողականության աճը. 1975 թ. էլեկտրակայաններում պայմանական վառելանյութի տեսակարար ծախսը կկազմի 340—342 գ 1 կվտժ բացթողած էլեկտրաէներգիայի նկատմամբ, 1970 թ. 1 կվտժ նկատմամբ 367 գ պայմանական վառելանյութի համեմատությամբ։

Նոր հնգամյակում արագ տեմպերով է զարգանալու ատոմային էներգետիկան։ Ատոմային էլեկտրակայանների շարք մտնելու հաշվին կստացվի էլեկտրակայանների կարողությունների ամբողջ աճի 12 տոկոսը։ Ատոմային էներգետիկայի լայն զարգացման ծրագիրը, որի կենսագործումը կսկսվի իններորդ հնգամյակում, նկատի է առնված 10—12 տարվա համար և նա-

խատեսում է 30 մլն կվտ ընդհանուր կարողությամբ ատոմային էլեկտրակայանների գործարկում։ Դա մոտավորապես 3 մլրդ ռուբլով կկրճատի կապիտալ ներդրումները ածխարդյունաբերության զարգացման ասպարեզում։

Նոր հնգամյակում մեծ խնդիրներ են ծառացած մեքենաշինության առաջ, որը պետք է արդյունաբերության բոլոր ճյուղերի համար զգալիորեն ավելացնի առավել արդյունավետ տեխնիկայի թողարկումը, մեքենաների սիստեմներ ստեղծի ձեռքի աշխատանքի կոմպլեքսային մեքենայացման համար, բարձրացնի թողարկվող սարքավորման որակը։ Լուրջ ուշադրություն է հատկացվում սարքավորման նոր տիպերի ստեղծմանը սպառման առարկաներ արտադրող ճյուղերի համար։ Թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունների համար սարքավորումների արտադրությունը կաճի 2 անգամ, այսինքն՝ կավելանա արագացված տեմպերով և կգերազանցի ամբողջությամբ վերցրած մեքենաշինության աճը, որի արտադրանքի թողարկումը ավելանալու է 1,7 անգամ։ Լուրջ տեղաշարժեր կկատարվեն բուն մեքենաշինության արտադրական ապարատում՝ կարագացվեն հաստոցային պարկի նորացման տեմպերը, կխորանա արտադրության մասնագիտացումը, կյուրացվեն նոր տեխնոլոգիական պրոցեսներ։

Իններորդ հնգամյակում կուրս է վերցված ստեղծել և արագ կերպով արմատավորել նոր նյութեր՝ նախապես առաջադրված յուրահատկություններով։ Պլաստիկ մասսաների և սինթետիկ խեժերի արտադրությունը կաճի 2 անգամ, կաուչուկինը՝ 1,7 անգամ։ Նկատելիորեն կավելանա քիմիական նրբաթելերի թողարկումը՝ 1975 թվականին դրա արտադրությունը կհասնի 1050—1100 հազ. տոննա։ Գիտությունը պետք է դեֆիցիտային նյութերի փոխարեն ստեղծի նոր տեսակի նյութեր, ընդ որում՝ չվատացնելով արտադրանքների հուսալիությունն ու որակը, բայց իջեցնելով դրանց ինքնարժեքը։

Տեխնիկական առաջընթացի արագացումը կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված է որպես գյուղատնտեսական արտադրության ինտենսիֆիկացման հիմք։ Հնգամյակի տարիներին գյուղատնտեսությանը կմատակարարվի 1700 հազ. տրակտոր, 1100 հազ. ապրանքատար ավտոմոբիլներ, 541 հազ. հացահատիկահավաք կոմբայններ, 230 հազ. սիլոսային կոմբայններ, 6 մլրդ ռուբլու մեքենաներ անասնապահության և կերի արտադրության աշխատանքների մեքենայացման համար և ուրիշ շատ այլ տեխնիկա։ Գյուղատնտեսության մեջ էներգետիկ կարողությունները հինգ տարվա ընթացքում կաճեն 161 մլն ձիու ուժի չափով, կամ 1,5 անգամ, էլեկտրաէներգիայի սպառումը 1970 թ. համեմատությամբ կկրկնապատկվի և կհասնի տարեկան 75 մլրդ կվտժ-ի։

Կուսակցության XXIV համագումարի առաջադրած խնդիրների մեջ կարևոր տեղ է հատկացվում արտադրության կառավարման սիստեմների զարգացմանն ու կատարելագործմանը։ Այդ պրոցեսների զարգացման նյութական բազան կստեղծվի սարքերի և ավտոմատացման միջոցների, էլեկտրոնահաշվիչ տեխնիկայի արտադրությունն ավելացնելու միջոցով։ Հնգամյակի ընթացքում ԷՀՄ-ների թողարկումը կավելանա 2,6 անգամ, իսկ սարքերի ու ավտոմատացման միջոցներինը՝ 2 անգամ։

Ավտոմատացման զարգացումը անխզելիորեն կապված է գիտատեխնիկական առաջընթացի հիմնական նվաճումների և, առաջին հերթին, գերբարձր ռեժիմներում և բարձր ինտենսիֆիկացիայի պայմաններում աշխատող խոշոր ագրեգատների ու սիստեմների ստեղծման հետ։ Ներկայումս նվաճված գերբարձր արագությունները, լարվածության ջերմաստիճանները, որպես կանոն, չեն կարող կանոնավորվել մարդու կողմից։ Ուստի մի ամբողջ շարք ամենաբարդ պրոցեսների կառավարումը հանձնվում է էլեկտրոնա-հաշվիչ տեխնիկային։ Կոմպլեքսային ավտոմատացման սիստեմի մեջ մտնող կառավարող մեքենաները արտադրությունը վերահսկում և կանոնավորում են արտադրամասի, գործարանի, կոմբինատի մասշտաբով, դրա հետ միասին ապահովելով աշխատանքի լավագույն ռեժիմները։ Այդպես, Մագնիտոգորսկի մետալուրգիական կոմբինատում «Ստալ—1» մեքենան ապահովում է գլանվածքի լա-



վագույն ձևումը անընդհատ պատրաստուքի «450» հաստոնի վրա։ Այդ մեքենայի կիրառումից ստացվող ռեալ տնտեսական էֆեկտը կազմում է տարեկան 800 հազ. ռուբլուց ավելի։

Հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ կենսագործվող բոլոր միջոցառումների մեջ նշանակալի տեղ է հատկացվում սոցիալիստական տնտեսության և նրա ստորաբաժանումների կազմակերպման ու կառավարման կատարելագործմանը։ Այդ բանում կարևոր դեր պետք է խաղա տնտեսագիտությունը։ Ներկայումս ՍՍՀՄ-ում էկոնոմիկայի բնագավառում աշխատող շուրջ 55 հազ. գիտնականներ կան։ Երկրում տնտեսագիտական գիտահետազոտական ինստիտուտների, բուհերի տնտեսագիտական ամբիոնների, ձեռնարկություններում առկա է տնտեսագիտական ստորաբաժանումների մի հզոր ցանց։ Տնտեսագիտությունը գիտելիքների մյուս ճյուղերի հետ սերտ համագործակցության մեջ պետք է նշանակալի ավանդ ներդնի մեր հասարակության առաջ ծառացած խնդիրների լուծման գործում։

1971—1975 թթ. գիտատեխնիկական քաղաքականությունը անց է կացնելու ՏՓԽ-ի անդամ-երկրներում գիտության ու տեխնիկայի զարգացման պլանների սերտ կոորդինացում։ Սոցիալիստական բարեկամության երկրների փոխադարձ համագործակցության խորացումն ու ընդլայնումը, տնտեսական ինտեգրացիան կարևոր նախադրյալ են յուրաքանչյուր սոցիալիստական երկրում և համաշխարհային ամբողջ սոցիալիստական սիստեմներում՝ արդի գիտատեխնիկական հեղափոխության, գիտության ու տեխնիկայի արագացված և արդյունավետ աճի արմատական պրոբլեմների հաջող լուծման համար։ ՏՓԽ-ի անդամ-երկրների սոցիալիստական համագործակցության է՛լ ավելի խորացման ու կատարելագործման և սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման կոմպլեքսային ծրագիրը, որ ընդունվել է տնտեսական փոխօգնության խորհրդի XXV նստաշրջանի կողմից 1971 թ. հուլիսին, նկատի ունի ստեղծել եղբայրական երկրների համագործակցության կատարելագործման կազմակերպական և տնտեսական պայմաններ սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության բոլոր ասպարեզներում։ Այդ ծրագրում գլխավոր տեղերից մեկը հատկացվում է գիտատեխնիկական համագործակցության հեռանկարներին, արտադրության միջազգային մասնագիտացման ու կոոպերացման խորացմանը։ Ընդլայնվում են սոցիալիստական երկրների համատեղ ջանքերը գիտահետազոտական և նախագծա-կոնստրուկտորական աշխատողների բնագավառում, ինչպես և տեխնիկական կոնցեպցիաների համաձայնեցումը, հատկապես մեքենաների կոմպլեքսային սիստեմներ ստեղծելիս։ Խնդիրն այն է, որ, առավելագույն չափով օգտագործելով երկրներից յուրաքանչյուրի գիտական ու տեխնիկական փորձը, իրականացվի աշխատանքի հասարակական կազմակերպման առավելությունները և պատմականորեն կարճ ժամկետներում արդի գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հիման վրա կառուցել աշխարհում ամենաառաջավոր արտադրական ապարատը սոցիալիստական երկրների ինտեգրացված ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

* * *

«Սոցիալիզմը, պլանային տնտեսությունը,— նշվում է կուսակցության XXIV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— առավել լայն ասպարեզ են բացում գիտության ու տեխնիկայի համակողմանի առաջադիմության համար։ Միևնույն ժամանակ գիտատեխնիկական հեղաշրջումը պահանջում է կատարելագործել մեր տնտեսական գործունեության շատ կողմեր։ Այլ կերպ ասած, դա սոցիալիզմին բարենպաստող վիթխարի ուժ է, բայց դրան պետք է ինչպես հարկն է տիրապետել» («Հայաստան» հրատ., 1971, էջ 61)։ ՍՄԿԿ XXIV համագումարը՝ բնորոշելով գիտության ու տեխնիկայի զարգացման հիմնական նպատակները, խնդիրներն ու ուղղությունները,

նշեց նաև գիտատեխնիկական առաջընթացի արագացումն ապահովող տնտե-
սական պայմանների կատարելագործման ուղիները։

Այն միջոցառումների լայն կոմպլեքսում, որոնք կոչված են արագացնե-
լու գիտության ու տեխնիկայի զարգացումը և բարձրացնելու ժողովրդական
տնտեսության մեջ դրանց արդյունքների օգտագործման արդյունավետությու-
նը, կենտրոնական տեղը հատկացվում է պլանավորման կենսագործմանը։
Նախատեսված է զգալիորեն ուժեղացնել 10—15 տարի ժամանակաշրջան
ընդգրկող հեռանկարային պլանավորումը։ Երկարատև հեռանկար նկատի ու-
նեցող պլանների մշակումը կապված է այն բանի հետ, որ տնտեսական, սո-
ցիալական և գիտատեխնիկական շատ ծրագրեր իրականացվում են երկարա-
տև ժամկետի ընթացքում, որը դուրս է գալիս հնգամյա պլանի սահմաններից։
Այսպես, միջին հաշվով 15 տարի է անցնում գիտական հայտնագործության
պահից մինչև նրա արդյունքների մասսայական օգտագործումը ժողովրդական
տնտեսության մեջ, 10—15 և ավելի տարիներ են պահանջվում բարդ տերի-
տորիալ-արտադրական կոմպլեքսներ ստեղծելու համար, այնպիսիք, ինչպես
Արևմտա-Սիբիրյան նավթի-գազի կոմպլեքսն է, Սայանի ինդուստրիալ շրջա-
նը, Ուստ-Իլիմի անտառաարդյունաբերական կոմպլեքսը և այլն։

Երկարատև հեռանկարների նկատառումով պլաններ կազմելը հնարավո-
րություն է տալիս, մի կողմից, ավելի լիովին հաշվի առնել ժողովրդական
տնտեսության պահանջմունքները, ավելի ստույգ հավասարակշռել պլաննե-
րը, մյուս կողմից՝ կանխատեսել այն նոր հնարավորությունները, որ հետագա-
յում կտա գիտատեխնիկական առաջընթացը։ Ժողովրդական տնտեսության,
ճյուղերի և ձեռնարկությունների մասշտաբներով հեռանկարային, հնգամյա և
տարեկան պլանների սերտ համաձայնեցվածությունը անհրաժեշտ պայման է
ծառայում տնտեսական և գիտատեխնիկական նախատեսումների վրա հենվող,
տնտեսական լուծումների զանազան տարբերակների բազմակողմանի վերլու-
ծությունից բխող պլանավորման գիտական մակարդակի բարձրացման հա-
մար։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը պետք է նպաստի կոմպ-
լեքսային պլանավորման բարձրացումը, «Ըստ հորիզոնական» պլանավորման,
այսինքն՝ միջճյուղային պլանավորման բարելավումը, տարբեր ճյուղերի և
ձեռնարկությունների միջև կապերի գործունեության ու ճկունության բարձրա-
ցումը։ Այժմ դժվար է անվանել որևէ նշանակալի գիտատեխնիկական պրոբ-
լեմ, որի լուծումը հնարավոր է ինչ-որ մի ճյուղի շրջանակներում։ Գիտության
ու տեխնիկայի զարգացման շատ պրոբլեմներ, առավել ևս խոշոր պրոբլեմ-
ները, որոնցից վճռականորեն կախված է հասարակական արտադրության ար-
դյունավետության բարձրացումը և երկարատև հեռանկար ընդգրկող տնտե-
սական խնդիրների լուծումը, իրենց էությամբ միջճյուղային պրոբլեմներ են։

Արդիական տեխնիկա ստեղծելիս անհրաժեշտ է օգտագործել գիտության
ամենատարբեր բնագավառներում և արտադրության զանազան ճյուղերում
կուտակված գիտելիքներն ու փորձը, ընդ որում, նույնիսկ որևէ մեկ գիտական
դիսցիպլինի անբավարար զարգացումը կամ արդյունաբերության զուգակցը-
ված ճյուղերից որևէ մեկի արտադրանքի ցածր մակարդակը կարող է խոչըն-
դոտ հանդիսանալ և անգամ տևական ժամանակով ուշացնել նոր գիտահետա-
զոտական գաղափարի իրականացումը։ Միջճյուղային կապերի ուժեղացումը,
հետևաբար, գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետությունը բարձ-
րացնելու օբյեկտիվ նախադրյալ է։ Այդ խնդրի լուծումը առավել ևս կարևոր է
թվում, քանի որ այժմ միջճյուղային կապերը չափից ավելի են բարդացել և
միջգերատեսչական պատնեշները հաճախ են արգելակում գիտության նվա-
ճումների իրականացմանը ժողովրդական տնտեսության մեջ։

Միջճյուղային կապերի կատարելագործմանը կնպաստի XXIV համագու-
մարի մշակած կուրսը փոխադարձաբար կապված այնպիսի ճյուղերի կոմպ-
լեքսային պլանավորման նկատմամբ, ինչպես՝ վառելիքա-էներգետիկ կոմպ-
լեքսն է, մետալուրգիական և մեքենաշինական ճյուղերի խումբը, քիմիական
և նավթաքիմիական, ավտոմատացման համար տեխնիկական բազան ստեղ-



ծող ճյուղերի կոմպլեքսը՝ էլեկտրոնիկան, ռադիոարդյունաբերությունը և սար-
քաշինությունը, անտառային, փայտամշակման և ցելյուլոզի արդյունաբերու-
թյան կոմպլեքսը, արտադրության պրոցեսներն սպասարկող ճյուղերի կոմպ-
լեքսը՝ տրանսպորտ, կապ, նյութատեխնիկական մատակարարում և այլն։

Գիտատեխնիկական առաջընթացի պլանավորումը պետք է տարվի նրա
այն վերջնական նպատակի տեսակետից, որը նրա բոլոր օղակների (հետա-
զոտում, մշակում, արտադրության մեջ արմատավորում և այլն) համար հան-
դիսանում է տնտեսական և սոցիալական որոշակի էֆեկտի ստացում և այլն։
Բայց գիտությունից ու տեխնիկայից էֆեկտ ստանալ կարելի է դրանց գործ-
նական օգտագործման դեպքում միայն։ Հետևաբար, գիտատեխնիկական
առաջընթացի պլանավորումը պետք է մեկ ամբողջության մեջ շաղկապի թե՛
հետազոտությունների անցկացումը, թե՛ փորձանշումների մշակումը, թե՛
արտադրության մեջ նոր արտադրանքների արմատավորումը։ Դա նշանակում
է, որ այստեղ պլանավորումը պետք է լինի անընդհատ և միջանցիկ, այսինքն
պետք է ընդգրկի գիտատեխնիկական հետազոտական աշխատանքների պլանը
և, դրանց հետ կապված, գիտության ու տեխնիկայի նվաճումները ժողովրդա-
կան տնտեսության մեջ ներդնելու պլանը։

Այսպիսով, գիտատեխնիկական առաջընթացը պլանավորելիս հարկավոր
է նախատեսել ոչ միայն հետազոտության և նոր տեխնիկայի մշակման ծախ-
սերը, այլև ժողովրդական տնտեսության մեջ այն արմատավորելու համար
անհրաժեշտ կապիտալ ներդրումները։ Այլ խոսքով, գիտահետազոտական աշ-
խատանքների պլանը պետք է սերտորեն կապվի գիտության արդյունքների
ժողովրդատնտեսական յուրացումն ապահովող կապիտալ ներդրումների հետ։
Ընդ որում, ընթացիկ կիրառական հետազոտությունների ու մշակումների
պլանը պետք է կապիտալ ներդրումների հեռանկարային պլանների հիմքը
լինի։

Մինչև վերջին ժամանակները էական թերությունը գիտատեխնիկական
առաջընթացի պլանավորման և ժողովրդական տնտեսության պլանավորման
խզվածությունն էր միմյանցից։ Դրա հետևանքով ժողովրդատնտեսական
պլանները չէին կարողանում լիակատար չափով հենվել գիտության ու տեխ-
նիկայի նվաճումների վրա։ Այժմ պլանավորման նկատմամբ մոտեցումը
փոխվում է. պլանի մշակման ելակետը դառնում է տեխնիկայի և տեխնոլո-
գիայի կոմպլեքսային ծրագիրը։ Նայած այն բանին, թե այդ զարգացումը ինչ
ազդեցություն կթողնի արտադրության արտադրանքի որակի, աշխատանքի
արտադրողականության վրա, կպատրաստվեն ժողովրդատնտեսական պլանի
բոլոր հատվածները, կորոշվեն նրա հիմնական ցուցանիշները։ Դրանով իսկ
նոր տեխնիկայի վերաբերյալ պլանները կմիացվեն ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման ընդհանուր պլանների հետ, կդառնան վերջիններիս ան-
բաժանելի մասը։ Հասարակական արտադրության տեմպերն ու համամասնու-
թյունները, նոր արդյունաբերության բարձրացումը կպլանավորվի նախ և
առաջ ելնելով գիտության ու տեխնիկայի առաջընթացի բացահայտած հնա-
րավորություններից, աղբյուրներից, ռեզերվներից։

Մեր երկրում արդի գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների
յուրացումը տեղի է ունենում տնտեսական ռեֆորմի է՛լ ավելի զարգացման
պայմաններում։ Կառավարման տնտեսավարական մեթոդների կատարելա-
գործումը, ինչպես մատնանշվեց համագումարում, պետք է առավելագույն
չափով ուղղված լինի գիտատեխնիկական առաջընթացի խթանմանը։ Անհրա-
ժեշտ է ձեռնարկությունների ու միավորումների համար ստեղծել այնպիսի
պայմաններ, որոնք ստիպեին նրանց թողարկելու արտադրանքի նորագույն
նմուշներ։

Ներկայումս, նոր տեխնիկա արմատավորելու և նոր արտադրանքի թո-
ղարկումը յուրացնելու ձեռնարկությունների անբավարար շահագրգռվածու-
թյունը զգալիորեն պայմանավորվում է նրանով, որ խթանման գործող սիս-
տեմը առաջին հերթին ուղղված է ընթացիկ արտադրության բարձր ցուցա-
նիշների նվաճմանը, մինչդեռ տնտեսության հեռանկարային, երկար ժամա-

նակ պահանջող շահերը հետին պլան են մղվում: Հաճախ, նոր տեխնիկան յուրացնող ձեռնարկությունները ավելի վատ դրության մեջ են ընկնում, քան նրանք, որոնք շարունակում են հին արտադրանքի թողարկումը: Այդպիսի ձեռնարկությունների աշխատանքի ցուցանիշները իջնում են յուրացման օբյեկտիվ դժվարությունների հետևանքով: Դա տեղի է ունենում նախ և առաջ այն պատճառով, որ նոր տեխնիկայի վրա կատարված ծախքերը և դրա ժողովրդատնտեսական էֆեկտը ժամանակի մեջ չեն համընկնում. սկզբում անհրաժեշտ է մեծ ծախսեր կատարել նոր արտադրությունը նախապատրաստելու վրա, իսկ որպեսզի ստացված էֆեկտը կարողանա հատուցել այդ ծախսերը, պետք է, որպես կանոն, մի քանի տարի անցնի:

Այսպիսով, որոշ հակասություններ գոյություն ունեն ձեռնարկությունների ընթացիկ և երկարաժամկետ շահերի միջև: Այդ հակասությունը ի շահ հասարակության լուծելու համար անհրաժեշտ է ուժեղացնել տնտեսական գործունեության երկարաժամկետ արդյունքների խթանումը, գործունեություն, որի էֆեկտը արտահայտվում է ոչ թե այժմ, այլ շատ թե քիչ հեռավոր ժամանակում: Այդ հանգամանքի կարևորագույն և վճռական պայմաններից մեկը տարեկան պլանների շրջանակներում տնտհաշվարկի գործողության ժամանակի՝ ներկայումս գոյություն ունեցող, սահմանափակվածության հաղթահարումն է: Որպեսզի ձեռնարկություններում ու միավորումներում հասարակական երկարաժամկետ շահագրգռվածություն ծագի արտադրության տեխնիկական մակարդակն անընդհատ բարձրացնելու և նոր տեխնիկա թողարկելու հարցում, անհրաժեշտ է նախ և առաջ տնտհաշվարկը դարձնել լիակատար և տևական, նրա հիմքում դնել արտադրության հնգամյա պլաններ և, այդ ժամանակամիջոցի հաշվառումով՝ խրախուսանքի ֆոնդերին հատկացումներ կատարելու կայուն նորմաներ:

Ինչպես մատնանշված էր ՍՄԿԿ XXIV համագումարում, «դրա հետ միասին կարևոր է ձեռնարկությունների, միավորումների, մինիստրությունների աշխատողների շահագրգռվածության բարձրացումը ոչ միայն ընթացիկ, այլև երկար ժամանակ պահանջող արդյունքների՝ գիտության ու տեխնիկայի նվաճումները լայնորեն արմատավորելու և ձեռնարկությունների որակական ցուցանիշները բարելավելու, հարցերում: Հարկավոր է այդ նպատակին ենթարկել տնտեսական բոլոր լծակների է՛լ ավելի կատարելագործումը, նյութական խթանման սիստեմը ուղղակի կախման մեջ դնելով հնգամյա պլանի առաջադրանքների կատարումից»:

Նոր տեխնիկայի յուրացման հարցում ձեռնարկությունների տնտեսական շահագրգռվածության բարձրացմանը պետք է նպաստեն կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության վերջին որոշումներով նախատեսված միջոցառումները: Դրանց թվում հատկապես կարևոր նշանակություն ունի նոր տեխնիկայի յուրացման ֆոնդերի գոյացման նորմատիվների փոփոխումը: Հիմա այդ նորմաների մեջ կմտցվեն նոր տեխնիկայի յուրացման առաջին տարվա, իսկ առանձին դեպքերում՝ նաև երկրորդ տարվա բարձրացված ծախսերը: Նոր արտադրանքի յուրացման ժամանակաշրջանում ձեռնարկության աշխատանքի ցուցանիշների վատացման դեպքում կորուստները փոխհատուցվելու են խրախուսման կենտրոնացված ֆոնդերից: Նոր տեխնիկայի թողարկման հարցում ձեռնարկությունների շահագրգռվածության և պատասխանատվության բարձրացմանը կնպաստի ձեռնարկությունների և միավորումների պլանների մեջ տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով հայրենական և արտասահմանյան տեխնիկայի բարձրագույն նվաճումներին համապատասխանող նոր արտադրանքի իրացման ծավալի ցուցանիշ մտցնելը:

ՍՄԿԿ XXIV համագումարը, որպես գիտատեխնիկական առաջընթացի արդյունավետության բարձրացման հիմնական նախադրյալներից մեկը, մատնանշեց արտադրության հետ գիտության կապերի կազմակերպման բարելավումը, գիտության նվաճումների գործնական իրականացման, մասսայական արտադրության մեջ դրանց արմատավորման հետ կապված օղակների բարելավումը: Աշխատանքի գլխավոր ուղղությունը արտահայտվում է այնպիսի հզոր գիտաարտադրական համալիրներ ու արտադրական միավորումներ ստեղծելու մեջ, որոնք իրենց մեջ ընդգրկում են գիտական և կոնստրուկտորատեխնոլոգիական ստորաբաժանումներ: Մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև արտադրության հետ գիտության մերձեցման այնպիսի նոր ձևը, ինչպիսին գիտաարտադրական միավորումներն են:



Գիտաարտադրական միավորումների ստեղծումը հնարավորություն է տալիս վերացնել նոր տեխնիկայի ստեղծման ու արտադրության յուրացման պրոցեսի տարբեր փուլերի կազմակերպական կտրվածությունը միմյանցից, հասնել այն բանին, որ գիտահետազոտական պրոցեսները կենսագործվեն անընդմեջ: Գիտաարտադրական միավորումներում ռեալ հնարավորություններ են բացվում կոնստրուկտորներին, նախագծողներին, տեխնոլոգներին և արտադրության մեջ աշխատողներին ակտիվ մասնակցության ներգրավելու գիտական ու տեխնիկական գաղափարների համատեղ մշակմանը՝ սկսած հետազոտման փուլից: Գիտահետազոտական միավորումները պետք է պատասխանատու լինեն արդյունաբերության համապատասխան ճյուղի կամ ենթաճյուղի ընդհանուր գիտահետազոտական մակարդակի համար և կենսագործեն ձեռնարկությունների կողմից անցկացվող կոնստրուկտորական և տեխնոլոգիական ծառայությունների աշխատանքների կոորդինացում, տեխնիկական օգնություն ցույց տան ձեռնարկություններին՝ յուրացնելու նոր արտադրանքը, նոր տեխնոլոգիական պրոցեսներն ու սարքավորումը:

Դեռևս մի քանի տարի առաջ կազմակերպված այնպիսի միավորումների փորձը, ինչպես «Վնիիկրիոգենմաշն» է, «Պիշչեպրոմավտոմատիկան», «էլեկտրաապարատը», «էլեկտրակերամիկան», «Պոլիտրոնը» և ուրիշներ, ցույց է տալիս, որ դրանք արտադրության հետ գիտության կապի առաջադիմական ձև են, նպաստում են գիտական աշխատանքների կազմակերպմանը բարձր մակարդակով և կարճ ժամկետում դրանց իրականացմանը:

Գիտատեխնիկական առաջընթացի՝ հասարակական արտադրության ինտենսիֆիկացման և արդյունավետության հիմքի, արագացման խնդիրը կոմպլեքսային, իր ամբողջության և առանձին մասերի մեջ կատարելագործում պահանջող տնտեսական մեխանիզմն է: Այդ խնդրի լուծման համար անհրաժեշտ է բարելավել պլանավորումն ու կառավարումը, տնտհաշվարկը, նյութական խթանումը, գնագոյացումը, նյութատեխնիկական մատակարարումը: Տնտեսական մեխանիզմի մեջ տեղի ունեցող փոփոխությունները պետք է ուղղված լինեն գիտատեխնիկական առաջընթացի, արտադրանքի որակի բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի նկատմամբ ռեֆորմի ներգործության ուժեղացմանը: Այդ պատճառով էլ կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում ընդգծվում է իններորդ հնգամյակում առաջադրված՝ գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու խնդրի և տնտեսական մեխանիզմի պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու միջև սերտ կապը:

Զևակերպելով ՍՍՀՄ տնտեսական քաղաքականության հիմնական նպատակները, կուսակցության XXIV համագումարը նշեց, որ դրանք նվաճելու կարևորագույն միջոցը գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա արտադրության արդյունավետության անշեղ բարձրացումն է: Գիտության ու տեխնիկայի զարգացումը նյութական նախադրյալներ է ստեղծում սոցիալիստական հասարակության և կոմունիստական շինարարության հիմնական սոցիալական ու տնտեսական խնդիրների լուծման համար: Հենց այդ պատճառով էլ գիտատեխնիկական առաջընթացը դիտվում է որպես մեր երկրի առաջ ծառացած ընթացիկ և հեռանկարային խնդիրների լուծման գլխավոր պայմանը:

«Вопросы экономики», № 10, 1971 г.

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

*ՍՄԿԿ XXIV համագումարը կոմունիստներին, սովետական մարդկանց մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարների ոգով դաստիարակելը համարեց կուսակցության առաջնահերթ խնդիրներից մեկը։ Սովետական հասարակության զարգացման ներկա փուլում, երբ ավելի բարդ ու պատասխանատու խնդիրներ են դրվում կուսակցության ու ժողովրդի առջև, գաղափարական դաստիարակությունը նոր իմաստ ու բովանդակություն է ստանում։ Այստեղ հարկ է նկատել և այն կարևոր հանգամանքը, որ ժամանակակից պայմաններում գաղափարական աշխատանքի արդյունավետության գործակիցը կոմունիստի, հասարակության յուրաքանչյուր անդամի կողմից կուսակցության խոսքի ընկալման ու յուրացման, այն սեփական համոզմունք դարձնելու մեջ է։ Զանտեսելով կոլեկտիվների վրա գաղափարական ներգործման միջոցները, մեր օրերում խիստ անհրաժեշտ է գտնել ու կատարելագործել և այն ձևերն ու եղանակները, որոնք խոր հետք են թողնում մարդկանց բանականության ու զգացմունքների վրա։*

*Կյանքը պահանջում է համալրել գաղափարական աշխատանքի կազմակերպման ողջ համակարգը, մշակել գիտականորեն հիմնավորված երկարաժամկետ ծրագրեր, ուր հաշվի առնվեն մարդկանց հոգևոր պահանջմունքների բոլոր կողմերը, նրանց նվիրական ձգտումները։*

*Հանրահայտ է, որ ոչ մի հասարակարգ այնպես շահագրգռված չի եղել իր անդամների գաղափարական դաստիարակման հարցերով, ինչպես սոցիալիզմը։ Դա հասկանալի է, քանի որ սոցիալիզմը մասսաների գիտակցական ստեղծագործությունն է, նրանց հոգևոր ու նյութական ջանքերի արգասիքը։ Սոցիալական անտագոնիզմի վրա հիմնված հասարակարգերում քաղաքական ինֆորմացիան ապակողմնորոշում է հասարակական կարծիքը, բացահայտորեն պաշտպանում իշխող դասակարգերի շահերը, բոլոր միջոցները գործադրում աշխատավորությանը հեռու պահելու կյանքի արմատական հարցերի մեջ խորանալու հնարավորությունից։ Այստեղ արվում է ամեն ինչ ներարկելու մարդկանց գիտակցությանը էկզիստենցիալիզմի փիլիսոփայության գա-*



*գափարները՝ կյանքի ունայնության, խաբուսիկության, մահվան անխուսափելիության վերաբերյալ։ Ինչ խոսք, օտարման զգացումը բուրժուական աշխարհում ծնում է նման հոռետեսական հույզեր, սակայն, դա չի նշանակում, որ այժմ այնտեղ տիրում է միջնադարյան խավարը, և չկան վերջինս ցրող ուժեր։*

*Բանվորական շարժման ակտիվացումը, կոմունիստների ազդեցության խորացումը հասարակության լայն զանգվածների շրջանում վկայում են կապիտալի աշխարհում ծավալվող դասակարգային պայքարի մասին։ Վախենալով դասակարգային գոտեմարտերի սրումից, մասնավոր սեփականատերական կարգերի ջատագովներն ի թիվս մի շարք հորինված առասպելների՝ կապիտալի ու աշխատանքի ներդաշնակության, սոցիալիզմի ու կապիտալիզմի միակցման և համընդհանուր հասարակության ստեղծման տեսությունների, առաջ են քաշել ապագաղափարայնացման վարկածը։ Վերջինիս համաձայն, թե իբր դասակարգային, գաղափարական մոտեցումը ապակողմնորոշում են մարդկանց, ստեղծում են կանխակալ արժեքներ, որոնք հնարավորություն չեն ընձեռում սթափ ընկալելու սոցիալական իրականության ռեալ վիճակը։ Եվ այս բոլոր գիտական շղարշով ներկայացված տեսությունների նպատակն է՝ արդարացնել կապիտալիստական կարգերը, գաղափարապես զինաթափել սոցիալիզմը։*

*Սոցիալիստական հասարակության պայմաններում քաղաքական աշխարհայացքի ձևավորումը տեղի է ունենում գիտական կայուն հիմքերի վրա։ Դա բնական է և օրինաչափ, որովհետև միայն սոցիալիզմի օրոք գիտությունը և քաղաքականությունը հանդես են գալիս միասնության մեջ։ Սոցիալիզմը գիտությունը չի դարձնում քաղաքականության կցորդը, ընդհակառակը, կոմունիստական կուսակցության քաղաքականությունը խարսխված է գիտական հիմքերի վրա, հիմնավորված է գիտությամբ։ Այս հանգամանքը ավելի կենսական ու անհրաժեշտ է դարձնում, որպեսզի մեր կադրերը խորապես յուրացնեն կուսակցության քաղաքականության սկզբունքները։*

*Այս տարի քաղաքական ուսուցման բոլոր օղակներում նախատեսված է ուսումնասիրել ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը։ Միանգամայն ճիշտ որոշում. չէ՞ որ ուսումնասիրել կուսակցության համաժողովի ընդունած որոշումները, նշանակում է զինվել կոնկրետ գիտելիքներով, ընթացիկ հնգամյակում ՍՄԿԿ կողմից սովետական ժողովրդի առջև դրված խնդիրների լուծման իմացությամբ։ Ուսումնասիրել համագումարյան փաստաթղթերը, նշանակում է՝ ոչ թե միայն հիշողության մեջ սևեռել մեր անելիքները, այլև, առաջին հերթին, մոբիլիզացնել աշխատավորական զանգվածներին կուսակցության համաժողովի դիրեկտիվներն իրականացնելու գործում։*

*Քաղաքական աշխարհայացքի ձևավորումը տևական պրոցես է, որն առնչվում է մարդկանց գաղափարական համոզմունքների մշակման հետ։ Քաղաքական համոզվածությունը միայն գիտելիքներով չի ձևավորվում, այստեղ էական նշանակություն ունի մարդու անձնական և սոցիալական փորձը։ Արդեն հանրահայտ է, որ միայն գրքային գիտելիքներով կոմունիզմի համար մարտնչող չես դառնա։ Մարդու քաղաքական կողմնորոշման վրա մեծապես ազդում են սոցիալական ապրելակերպի ողջ համակարգը, հոգեբանական ոլորտը, իդեալը։*

*Քաղաքական ուսուցման ներկայիս համակարգը կոմունիստներին հնա-*

րավորություն է ընձեռում խորանալու մարքս-լենինյան տեսությունը բազմակողմանի ուսումնասիրելու գործում, առավել ընդարձակելու ուսուցման ոլորտն ընդգրկված ընկերների մտահորիզոնը։

Դժվար է գերագնահատել քաղաքական ինքնակրթության դերը կոմունիստի, յուրաքանչյուր սովետական քաղաքացու հոգևոր կյանքում։ Վերջիններս այն հարցերը, որոնք գրականության մեջ քիչ են լուսաբանված, և չկա դրանց գեղագիտական, սոցիալ-հոգեբանական վերլուծությունը։ Կուսակցության պատմությունից հայտնի է, որ ցարիզմի ժամանակ, ընդհատակում, լենինյան գվարդիայի գործիչներն անբարենպաստ պայմաններում ջանք ու եռանդ չէին խնայում զինվելու հեղափոխական ուսմունքով, գիտակցաբար մարտնչելու հին, շահագործողական կարգերի դեմ։ Ինչպես գրում են իրենց հուշերում կուսակցության վետերանները, նրանց համար հեղափոխական տեսության ուսումնասիրությունը հոգեկան պահանջ էր, կենսական անհրաժեշտություն։ Բոլշևիկյան այդ ավանդույթները նոր ձևով զարգացան հետհոկտեմբերյան շրջանում, երբ կոմունիստներից, անկուսակցական բոլշևիկներից պահանջվում էր թեորիապես իմաստավորել սոցիալիզմի կառուցման պրակտիկան, աններբ մարտնչել հակալենինյան հոսանքների դեմ, բարձր պահել լենինիզմի դրոշը։ Մարքս-լենինյան թեորիայի ուսումնասիրության ՍՄԿԿ հեղափոխական ավանդույթներն ըստ արժանվույն շարունակում ու զարգացնում են մեր կուսակցության ներկա սերունդները, որի մասին հանգամանալից խոսվեց ՍՄԿԿ XXIV համագումարում։

Զարգացման արդի փուլում, երբ առանց գիտության անհնար է կառավարել հասարակական կյանքի ցանկացած ոլորտը, հրամայական պահանջ է սոցիալական պրոցեսների գիտական կառավարման պրոբլեմները իմաստավորել ու լուծել մարքս-լենինյան մեթոդոլոգիայի դիրքերից։ Դրա անհրաժեշտությունը հույժ կարևոր է դառնում նաև այն առումով, որ մաթեմատիկական-հաշվողական մեքենաների կիրառումը սոցիալական պրոցեսների երևույթների ուսումնասիրության բնագավառում առանձին դեպքերում առիթ է տալիս պոզիտիվիստական տրամադրությունների աշխուժացման։ Որպեսզի հիմնավորված բացառվեն նման հայացքները, անհրաժեշտ է կուսակցականության, դասակարգայնության դիրքերից բացահայտել նման տեսակետների հակագիտական էությունը։ Բուրժուական հասարակության սոցիալական մոդելների տարածումը սոցիալիստական հասարակարգի վրա անհեթեթ է և չի դիմանում քննադատության, քանի որ տվյալ դեպքում հաշվի չեն առնվում այն սոցիալ-դասակարգային տարբերությունները, որոնք կան սոցիալիստական ու բուրժուական հասարակությունների միջև։

Մեր կադրերի համար խիստ կարևոր է զինվել արդի գիտա-տեխնիկական հեղափոխության սոցիալական նշանակության ու հետևանքների մարքսիստական ըմբռնմամբ։ Այս դեպքում չպետք է մոռանալ, որ մեր օրերում բուրժուական գաղափարախոսությունը ուռճացնելով գիտատեխնիկական հեղափոխության դերն արդի աշխարհում, անջատում է այն սոցիալ-տնտեսական հարաբերություններից, ներկայացնելով որպես ինքնուրույն ավտոմատիկ պրոցես։ Խնդիրն այն է, որ ժամանակակից աշխարհի նորագույն երևույթների ուսումնասիրությունը պահանջում է ոչ միայն ստեղծագործաբար յուրացնել մարքս-լենինյան տեսությունը, այլև կարողանալ վերջինիս դիրքերից լուսաբանել արդի սոցիալական ու գիտա-տեխնիկական տեղաշարժերը։



Մարքս-լենինյան տեսության ուսումնասիրությունը անփոխարինելի միջոց է անձնավորության ինքնակատարելության, ինքնադաստիարակման համար։ Հայտնի է, որ ինչքան մեծ են անհատի ինտելեկտուալ կարողությունները, այնքան ավելանում են նրա ինքնակատարելության հնարավորությունները։ Մարդը, որը սոցիալիստական հասարակության գլխավոր արժեքն է և նպատակը, բարոյա-հոգեբանական իր շատ գծերով տարբերվում է մասնավոր սեփականատիրական աշխարհի անձնավորությունից։

ՍՄԿԿ XXIV համագումարը ողջունող եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների պատվիրակությունները նշում էին այն մեծ որակական փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել սովետական մարդկանց հոգևոր խառնվածքում։ Բավական է թեկուզ վկայակոչել այն փաստը, (որն ապացուցված է վերջին տարիներին կատարված սոցիոլոգիական ուսումնասիրություններով), երբ սովետական մարդը, չթերագնահատելով նյութականը, ավելի բարձր է դասում աշխատանքի բարոյական իմպուլսը, իր մասնակցության աստիճանը հասարակական կյանքում։ Նման կենսափիլիսոփայությունը խորթ է կապիտալի աշխարհի մարդուն, որի մտածելակերպի առանցքը ընչաքաղցությունն է։

Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարին տրված կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, սովետական մարդու նոր կերպարը, նրա կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով։ Քաղաքական գիտելիքներն անձնավորության մեջ ուժեղացնում են ինքնաքննադատության ոգին, նրան զերծ պահում անսխալականության մտայնությունից։ Հաճախ մարդուն թվում է, թե իր մոտ մորթապաշտությունը բույն չի դրել, սակայն բավական է կոնֆլիկտային սիտուացիա, որպեսզի դրսևորվեն չբացահայտված գծեր։ Մի առիթով Վ. Ի. Լենինը նկատել է, որ մարդու որպիսությունը պարզելու համար, պետք է շոշափել նրա շահերը և վերջինիս ինքնապաշտպանության ձևից կարելի է պարզել նրա ով լինելը։ Իմաստո՜ւն դիտողություն։

Մեր օրերում, երբ սոցիալիստական մեր հայրենիքը դարձել է աշխարհի ամենահզոր երկրներից մեկը, երբ հարաճուն բարձրանում է ժողովրդի կենսամակարդակը, ինչ խոսք, սոցիալիստական կարգերի նկատմամբ սովետական մարդկանց հավատարմության դրսևորման չափանիշները չենթարկվելով սկզբունքային փոփոխման, այնուամենայնիվ, նոր երանգներ են ձեռք բերել։ Եթե սովետական իշխանության արշալույսին քաղաքական վստահության առումով մարդկանց սոցիալական ծագումն ու պատկանելությունը կարող էին վճռական նշանակություն ունենալ, մեր օրերում էական են կադրերի քաղաքական կողմնորոշումը, նրանց գործնական մասնակցությունը կուսակցության քաղաքական գծի իրականացման ասպարեզում։ Նվիրվածությունը կուսակցության գործին որոշվում է ոչ թե դեկլարատիվ հայտարարություններով, մեծադղորդ խոստումներով, այլ կոմունիզմի կառուցմանը գործնականորեն, ուժերի ու եռանդի նվիրաբերումով։ Այս տեսակետից քննադատության չի դիմանում ռևիզիոնիստական այն դրույթը, թե բանվոր դասակարգի իշխանության օրոք դժվար է որոշել անհատի՝ աշխատավորական կարգերի նկատմամբ տածած նվիրվածության աստիճանը։

Քաղաքական աշխարհայացքի ձևավորումը հիմնվում է ո՛չ միայն ժա-

մանակակից կյանքի սոցիալ-քաղաքական երևույթների մարքս-լենինյան վերլուծության վրա, այլև սերում է անցյալի արժեքների, պատմական անցքերի գիտական լուսաբանումից, նախորդ սերունդների առաջադիմական ավանդույթների ստեղծագործական յուրացումից։ Այստեղ չի կարելի չնշել հայ ազգային հոգեբանության մի առանձնահատկություն, որի քննական վերլուծությունը մեր օրերում խիստ անհրաժեշտ է։ Երկար դարեր կորցնելով պետականությունը հայ ժողովուրդը, մասնավորապես իշխող դասակարգերը, պատրալի պատկերացում էին ստեղծել Հայաստանի պետականության շրջանի պատմության վերաբերյալ։ Պատմական անարդարությունները, որոնք ճակատագրային էին մեր ժողովրդի համար, նրա հոգևոր խառնվածքում մշակեցին բուռն հետաքրքրասիրության զգացում դեպի պատմական անցյալը։ Հոգեկան այս գիծը սոցիալիստական հասարակարգի պայմաններում, երբ հիմնադրվեց սովետական պետականություն, էվոլյուցիա ապրեց։ ՍՍՀՄ կազմում ծաղկում ու բարգավաճում է Սովետական Հայաստանը, որի ընթացքի կորագիծը ուղղված է դեպի գալիքը, ապագան։ Մեր ժողովրդի հոգեբանության մեջ ձևավորվեց նոր գիծ՝ խոր հավատ գալիքի հանդեպ։ Անցյալի վերհուշը այժմ մեր ժողովրդի մեջ նոր, լավատեսական հույզեր է արթնացնում, լացակումած մեղեդիներին փոխարինել են վառ գույները, վաղուց ի վեր արտագաղթը վերածվել է ներգաղթի, միայնակության, խեղճության զգացումը հօդս է ցնդել մեր ժողովրդի հոգեկան խառնվածքի ներկապնակից, մենք մեծապետական ազգ ենք դարձել։ Կուսակցությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— զգալի աշխատանք է տանում սովետական մարդկանց մեջ իրենց հայրենիքի, ժողովրդի, նրա վիթխարի մեծագործությունների համար հպարտության զգացմունք, իրենց երկրի անցյալի արժանավոր էջերի նկատմամբ հարգանքի զգացմունք դաստիարակելու ուղղությամբ։

Երևույթների գնահատման քաղաքական դիրքորոշումը պայմանավորված է դասակարգային շահերով, այն անհարիր է օբյեկտիվիստական, ապադասակարգային մոտեցմանը։ Ո՞ւմ է օգուտ՝ լենինյան հայտնի դրույթը այժմեական է նաև մեր օրերում, քանի դեռ կան սոցիալական հակադիր սիստեմներ։ Դասակարգային մոտեցումը պահանջում է որոշակիորեն կանգնել դասակարգի տեսակետի վրա, պաշտպանել նրա շահերը։ Հասարակական երևույթների գնահատման հարցում միջին գիծը վնասակար է։ Ռևիզիոնիզմի ապարդյուն ճիգերը, ընդհանուր եզրեր գտնել կոմունիստական ու բուրժուական աշխարհըմբռնման մեջ, սոսկ պատրանք է, օբյեկտիվորեն ջուր է լցնում կապիտալիստական սիստեմի ջրաղացին։ Իմպերիալիզմի ջատագովները սիրում են չեզոքի դիմակ հագնել, խոսել հանուր մարդկության շահերից, սակայն այդ փքուն ֆրազների տակ թաքնված են կոմունիզմը բացասելու նրանց միտումները։

Կուսակցական ուսուցման, ինչպես և ողջ գաղափարա-քաղաքական աշխատանքում պետք է հետևողականորեն դասակարգային գիծ անցկացնել, հասնել գաղափարական դիրքորոշման հստակության, զինել կադրերին, կոմունիստներին մարքս-լենինյան մեթոդոլոգիայով ընդդեմ բուրժուական ու ռևիզիոնիստական հայացքների, հեղափոխական ուսմունքից ամեն կարգի նահանջի։

Գաղափարական համոզվածությունը, երկրի հասարակական-քաղաքական կյանքի իրադարձություններին իրազեկությունն անհրաժեշտ պայման են



ճիշտ կողմնորոշվելու ներքին և արտաքին քաղաքականության հարցերում։ Միայն այս դեպքում է բացառվում ինֆորմացիայի ոչ հավաստի աղբյուրներից լուրեր քաղելը, որոնք հաճախ մոլորեցնում են սենսացիայի սիրահարներին։

Քաղաքական դիրքորոշման առանցքն արդիական պրոբլեմների մարքսիստական-լենինյան ըմբռնումն է, ժամանակի զարկերակի զգացումը։ Քաղաքական թատերաբեմում տեղ չունեն նրանք, ովքեր հանդես են գալիս հնացած դերերում կամ կառչում են իրենց դարն ապրած դրույթներից։ Հասարակական երևույթների էմոցիոնալ ընկալումը ոչ միշտ է ճիշտ և ընդունելի։ Քաղաքական գործիչը պետք է օժտված լինի ճկուն խելքով, դիալեկտիկական մտածելակերպով։ Հեղափոխական շարժման պատմությունից հայտնի է, որ շատ հասարակական գործիչներ անփառունակ վախճան են ունեցել կյանքի նկատմամբ ունեցած կանխակալ վերաբերմունքի հետևանքով։ Այս առումով շատ ուսանելի է Գ. Վ. Պլեխանովի և Վ. Ի. Լենինի օրինակը։ Պլեխանովը, որը մեծ երախտիք ունի Ռուսաստանում մարքսիզմի տարածման գործում, ի վիճակի չեղավ հասկանալու գալիք հեղափոխության ծավալման պատճառներն ու նախադրյալները։ Հրաբուխի ժայթքման պահին նա վերջնականապես մոլորվեց և մնաց օպորտունիզմի ճահճում։

Քաղաքական մտածելակերպը հիմնվում է իրական փաստերի, կենդանի իրականության դիալեկտիկայի վրա։ Կյանքի դիալեկտիկան դրսևորվում է բազմազան իրավիճակներում, ուր չեն բացառվում երևույթների աննախադեպ կապակցություններ։ Այս ի նկատի ուներ Լենինը, երբ ասում էր, որ քաղաքական գործիչը մտնելով պայքարի հորձանուտը, վաղօրոք չի կարող լիովին հաշվի առնել իրադարձությունների զարգացման թափը, սոցիալական նոր ուժերի ներգրավման հնարավորությունը։ Քաղաքական առաջնորդից պահանջվում է պայքարի բովում գտնել նպատակին հասնելու նոր միջոցներ, համախոհների շարքերը համալրելու նոր ռեզերվներ։

Կուսակցության համագումարի բարձր ամբիոնից միանգամայն տեղին ասվեց, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն ժամանակակից աշխարհի քաղաքական բարդ ու կնճռոտ պրոբլեմները լուծում են պատշաճ հստակությամբ, հետևողականորեն իրականացնում կուսակցության գլխավոր քաղաքական գիծը։ Մեր կուսակցությունը գիտական կոմունիզմի կուսակցություն է։ Նա անշեղորեն առաջնորդվում է մարքս-լենինյան գիտությամբ, արդիականության ամենաառաջավոր, հեղափոխական ուսմունքով, ամեն ինչ անում է նրա հետագա զարգացման համար։ «Հասարակական կյանքի երևույթների,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— նրա գլխավոր տենդենցների, տեսական իմաստավորումը կուսակցությանը թույլ է տալիս կանխատեսելու հասարակական պրոցեսների ընթացքը, մշակելու քաղաքական ճիշտ կուրս, խուսափելու սխալներից և սուբյեկտիվիստական լուծումներից»։

Գաղափարական աշխատանքը համակուսակցական գործ է։ Աշխատանքի գիտական կառավարումը, սոցիալական նոր պրոբլեմները հրամայաբար պահանջում են, որպեսզի մեր կադրերը, որտեղ էլ նրանք աշխատեն, ուսումնասիրեն մարքս-լենինյան տեսությունը։ Կառավարումը սկզբունքորեն հակադրվում է վարչարարությանը։ Վերջինս հաշվի չի նստում արտադրական պրոցեսի հոգեբանական մթնոլորտի, աշխատողների անձնական նախասիրու-

թյունների ու հակումների, նրանց սոցիալական առաջադիմության հետ։ Գիտական կառավարման սկզբունքը սերտորեն առնչվում է մարդկային հարաբերություններին, որի շնորհիվ արտադրության պրոցեսում մեծանում է սոցիալ-հոգեբանական գործոնի դերը։ Այստեղ էական է սոցիալիստական հասարակության հիմնական բջիջների, աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացումը։ Վերջինս սովետական մարդկանց աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվությունը բարձրացնելու կարևոր ասպարեզ է։ Կոլեկտիվում են ձևավորվում աշխատավորների նոր, սոցիալիստական հատկությունները, ստեղծվում բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները։

Քաղաքական աշխարհայացքի ձևավորման պրոցեսը փաստորեն սկսվում է անձնավորության վաղ տարիքային շրջանում, սակայն այն պատանեկան, երիտասարդական հասակում ստանում է որոշակի կողմնորոշում։ Սոցիալիստական իրականության պայմաններում աճող սերնդի քաղաքական ձևավորումը հիմնականում կատարվում է ուսումնական հաստատություններում, պիոներական ու կոմերիտական կազմակերպություններում։ Երեխայի քաղաքական դավանանքի խմորման վրա պակաս ազդեցություն չունի ընտանիքը։ Մեր օրերում, երբ աճող սերնդի ֆիզիոլոգիական հասունացումը նախորդում է սոցիալական հասունացմանը, որոշակի բարդություններ են ծագում դաստիարակչական աշխատանքում։ Մեր հասարակարգի սոցիալական առավելությունները հասարակության առանձին անդամների, նրանց ընտանիքների մոտ սպառողական վերաբերմունք են հարուցում կյանքի հանդեպ, որն անհետևանք չի մնում։ Վարչական մարմինների հաշվետվություններից կարելի է բերել բազմաթիվ փաստեր, ինչպես որոշ աշխատավորական ընտանիքներում մեծանում են պորտաբույծներ և հանցագործ տարրեր։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կյանքի անազնիվ ուղին ընտրել են նրանք, ովքեր երբևիցե դժվարություններ չեն հաղթահարել, բարիքներ չեն ստեղծել, խուսափել են հանրօգուտ աշխատանքից։ Ծնողներից ոմանք չափից ավելի են «սիրում» երեխաներին, պատրաստ են բավարարելու նրանց քմահաճույքները։ Այստեղից ծագում են մեր հասարակարգին խորթ երևույթներ։ Այս առումով արժե հիշատակել սովետականականավոր գրող, պայծառ կոմունիստ Ալեքսանդր Ֆադեևի նամակը որդուն, որը պիոներական ճամբարից հորը նամակով խնդրել էր փող ուղարկել։ Հայրը մերժում է որդու խնդրանքը, բացատրելով, թե ճամբարում դրա կարիքը չկա և գլխավորը՝ ճամբարում մարդիկ պետք է սովորեն կոմունիստական կենցաղավարություն։ Մեծ գրողը հոգեբանական ուսանելի դիտողություն է անում որդուն, նկատելով, որ մանկական ու պատանեկան տարիքում հավասարության զգացումը շատ սուր է դրսևորվում և ինչու իր տղան ավելորդ ռուբլիներով պետք է արժանանա շրջապատի արգահատանքին։

Երիտասարդ մարդու քաղաքական աշխարհայացքի ձևավորումը բարդ պրոցես է։ Այստեղ մեծ անելիքներ ունեն մանկավարժները։ Դպրոցում էականը ո՛չ միայն այն է, թե, ինչ են ավանդում, այլև այն, թե ինչպե՞ս են ավանդում, որ հարցերի վրա են պատանիների ու աղջիկների ուշադրությունը կենտրոնացնում։ Դպրոցում անհրաժեշտ է երեխաների ներաշխարհում հակակրանք սերմանել շահագործման, հին աշխարհի ապրելակերպի դեմ։ Դըպ-



րոցականներին պետք է հիմնավորված բացատրել, նոր օրինակներով ապացուցել սոցիալիստական հասարակարգի հումանիստական էությունը։

Կոմերիտմիության կենտրոնական խնդիրը,— ասում է ընկեր Բրեժնևը,— եղել ու մնում է երիտասարդությանը կոմունիստական գաղափարայնության ոգով, սովետական հայրենիքին նվիրվածության, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակումը, մեր հասարակության նորմերի ու հոգևոր արժեքների ակտիվ պրոպագանդումը։

Երիտասարդ սերնդի շուրջ 10 միլիոն ներկայացուցիչներ սովորում են բուհերում ու տեխնիկումներում։ Չնայած ուսանողական շրջանը մարդու կյանքում տևական չէ, այն վճռական նշանակություն ունի անձնավորության մասնագիտական ու քաղաքական կողմնորոշման գործում։ Այսօրվա ուսանողից պահանջվում է խորապես ուսումնասիրել ոչ միայն ծրագրային նյութը, այլև միաժամանակ կատարելագործել ձեռք բերած գիտելիքները, մշակել հետազոտողի հմտություններ, տեսական լայն մտահորիզոն։ Ուսման պրոցեսում ավելի հատկանշական է դառնում ուսանողի ինքնուրույն, հետազոտական աշխատանքը։ Ուսանողների համամիութենական հավաքում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևը (1971 թ. հոկտեմբերին) ընդգծեց՝ «Մասնագիտությունը ստեղծագործաբար յուրացնել, մեր կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցը, մասսաների մեջ կուսակցության քաղաքականության կիրառողը կարող է դառնալ մարքս-լենինյան տեսությունը տիրապետելով միայն։ Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքն ամեն մի պրոֆիլի մասնագետի գիտելիքների հիմքն է, անկապտելի բաղկացուցիչ մասը։ Մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարմությունը մեր կուսակցության, մեր կոմերիտմիության ազնիվ ավանդույթն է և դրա համակողմանի ամրապնդումն ու հարստացումը բարձրագույն դպրոցի կոչումն է»։

Դաստիարակչական աշխատանքում մանրուքներ չկան և չեն կարող լինել։ Ապագա կառուցողների հոգիների ու բնավորությունների ձևավորումը, նրանց հույզերի ու զգացումների կոփումը, կուսակցության, սովետական ժողովրդի առաջնահերթ խնդիրներից են։ Անհրաժեշտ է քաղաքական ուսուցումն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրներին, հասնել այն բանին, որ այն ավելի ուժեղ ներգործի կուսակցության, հասարակության բոլոր անդամների գիտակցականության և ակտիվության աճի վրա։

Քաղաքական աշխարհայացքը մարդու հավատամքն է, նրա քաղաքացիության գործակիցը։ Հավատամք չունենալը վնասակար է, քանի որ հասարակական կյանքում չեզոք գոտիներ չկան։ Հիշենք լենինյան հայտնի թեզը՝ ապրել հասարակության մեջ և զերծ լինել հասարակությունից, անհնար է։ Քաղաքական որոշակիության հակոտնյան՝ անտարբերությունն է, որն ի վերջո ծառայում է սոցիալական հետադեմ ուժերին։ Պատահական չէ, որ հակակոմունիզմը ճիգ է գործադրում իր ծուղակում ընկած մոլորվածներին հեռու պահել հասարակական կյանքից, անտարբեր դարձնել շրջապատի հանդեպ։ Նրանք նույնիսկ փորձում են փիլիսոփայական փաստարկներ բերել։ Ըստ նրանց, քաղաքականությունը չի ընդգրկում մարդու ներաշխարհը և ավելի շատ առնչվում է արտաքին գործոնների հետ, այն մասսայական ստերեոտիպ է և ոչ թե անհատական հոգեբանություն։ Զարգացնելով այս խավարամիտ թեզը, նրանք շարունակում են, թե, իբր, որքան մեծանում է անձնավորության ինք-

նագիտակցումը, այնքան թուլանում է նրա կախվածությունը քաղաքականության, գաղափարախոսության ազդեցությունից։ Այստեղ հասկանալի է դառնում մեր դասակարգային ընդդիմախոսների էլիտար, աղայական վերաբերմունքը աշխատավոր մարդու նկատմամբ։ Զանգվածներին քաղաքականության ոլորտից հեռու պահելու միտումը բխում է աշխատավորներին պետությունից օտարելու կապիտալիստական աշխարհի հակադեմոկրատական բնույթից։ Հին ապրելակերպի համեմատ, սոցիալիզմի մեծագույն առավելություններից է աշխատավոր մարդու ներգրավումը քաղաքականության, կառավարման ոլորտը։ Սոցիալիստական պետության հիմքը, նրա դեմոկրատական բնույթի առավել լիակատար մարմնացումը ժողովրդական իշխանության մարմիններն են՝ աշխատավորների դեպուտատների սովետները։ Սովետները սոցիալ-քաղաքական վիթխարի ուժ են, ուր այսօր կան ավելի քան երկու միլիոն դեպուտատներ, որոնք կառավարում են մեր համաժողովրդական պետության գործերը՝ վարից վեր։

Մասսաների քաղաքական աշխարհայացքի ձևավորումը ՍՄԿԿ թեորետիկական գործունեության, ինտերնացիոնալ, հեղափոխական պարտքի արտահայտություն է։ Զարգացման արդի էտապում կապիտալիզմի և սոցիալիզմի ուժերի հակամարտությունը, ինչպես նաև հեղափոխական ուսմունքը ամլացնելու, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկան խեղաթյուրելու՝ տարբեր երանգի ռևիզիոնիստների փորձերը, հատկապես կուսակցության գաղափարական ճակատի աշխատողներից պահանջում են առավել մեծ ուշադրություն նվիրել տեսության հարցերին, նրա ստեղծագործական զարգացմանը։ «Հին ֆորմուլների կրկնությունը այնտեղ,— նշված է կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— որտեղ դրանք արդեն իրենց սպառել են, նոր պրոբլեմներին նորովի մոտենալ չկարողանալը կամ չցանկանալը՝ այս ամենը վնաս է բերում գործին, լրացուցիչ հնարավորություններ ստեղծում մարքսիզմ-լենինիզմի զանազան ռևիզիոնիստական խեղաթյուրումներ տարածելու համար։ Մեր տեսության ու պրակտիկայի վրա կատարվող բուրժուական և ռևիզիոնիստական հարձակումների քննադատության համոզչությունը հսկայական չափով ուժեղանում է այն ժամանակ, երբ դա հենվում է հասարակական գիտությունների, մարքս-լենինյան տեսության ակտիվ և ստեղծագործական զարգացման վրա»։

Քաղաքական աշխարհայացքի ձևավորումը առնչվում է գիտական ճանաչողության փիլիսոփայական իմաստավորման հետ։ Հասարակական-քաղաքական երևույթների դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնումը բացառում է սոցիալական իրադարձությունների սուբյեկտիվիստական արժեքավորումը, հնարավորություն ընձեռում ճիշտ կողմնորոշվելու իրականության հակասալի հորձանուտներում։ Անվանի գրող և հրապարակախոս Իլյա Էրենբուրգը նկատել է, որ պատանեկան հասակում քաղաքականությունը կիրք է, հասուն տարիքում՝ աշխարհայացք։ Դիպո՛ւկ բնորոշում։ Իրոք, քաղաքական կողմնորոշումը բեկվում է անձնավորության հուզական ու բանական աշխարհի միջով և որպեսզի այն կայուն ու աներեր լինի, պետք է հենվի մարքս-լենինյան գիտության, հասարակության հեղափոխական վերափոխման ուսմունքի վրա։

Բ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱՊԵՐԸ

Սկզբունքորեն նոր միջազգային հարաբերությունների ձևավորումը ժամանակակից աշխարհի բնորոշ երևույթներից է։ Վերջինս հաստատվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ, երբ պետական նորմեր դարձան խաղաղության ու անվտանգության, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության սկզբունքները։

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...Հետևողականորեն վարելով խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականություն, Սովետական Միությունն այսուհետև ևս վճռական պայքար կմղի իմպերիալիզմի դեմ, ուժգին հակահարված կհասցնի ագրեսորների, մեքենայություններին ու դիվերսիաներին։ Մենք, ինչպես որ առաջ, անշեղորեն կպաշտպանենք ժողովուրդների պայքարը հանուն դեմոկրատիայի, ազգային ազատագրության և սոցիալիզմի»[1]։

Նոր միջազգային հարաբերությունները սոցիալիստական հեղափոխության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի արդյունքն են։ Հեղափոխական պրոցեսի լենինյան ուսմունքում իմպերիալիզմի կողմից ստրկացված և իրենց ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդները դիտվում են որպես հեղափոխական բոլոր ուժերի կարևոր գործոններից մեկը իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

«Մե՛նք կգործադրենք բոլոր ջանքերը,— գրել է Վ. Ի. Լենինը,— որպեսզի մերձենանք և միաձուլվենք մոնղոլների, պարսիկների, հնդիկների, եգիպտացիների հետ, մենք մեր պարտքը և մեր շահն ենք համարում անել այդ, որովհետև այլապես սոցիալիզմը Եվրոպայում անկայուն կլինի։ Մենք կաշխատենք... նրանց օգնել՝ անցնելու մեքենաներ գործադրելուն, աշխատանքը հեշտացնելուն, անցնելու դեմոկրատիային, սոցիալիզմին» (Երկեր, հ. 23, էջ 77)։ Լենինը հետամնաց երկրների հետագա զարգացումը կապում էր առաջավոր

[1] Լ. Ի. Բրեժնև. «ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին», Մ., 1971, էջ 48։

երկրների պրոլետարիատի կողմից նրանց պաշտպանության հետ, պրոլետա-
րիատ, որը «կարող է և պետք է օգնի հետամնաց աշխատավոր մասսաներին»
(Երկեր, հ. 31, էջ 294)։ Լենինը գտնում էր, որ «...առաջավոր երկրների պրո-
լետարիատի օգնությամբ հետամնաց երկրները կարող են անցնել սովետական
կարգերին և զարգացման որոշ աստիճանների միջոցով՝ կոմունիզմին, խու-
սափելով զարգացման կապիտալիստական ստադիայից» (Երկեր, հ. 31, էջ 295)։

Կյանքը հաստատեց լենինյան դրույթն այն մասին, թե «բոլշևիկներն
ստեղծում են բոլորովին այլ միջազգային հարաբերություններ, որոնք հնա-
րավորություն են տալիս բոլոր ճնշված ազգություններին ազատվելու իմպե-
րիալիստական ճնշումից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 600)։

Ղեկավարվելով Լենինի պատգամներով, Սովետական Միությունը հետե-
վողականորեն հանդես է գալիս ի պաշտպանություն բոլոր ժողովուրդների դե-
մոկրատական իրավունքների, ազատության ու անկախության։

Սովետական պետության զարգացման բոլոր փուլերում արտաքին տըն-
տեսական կապերը նպաստել են ժողովրդատնտեսական մեծ խնդիրների լուծ-
մանը, առաջին հերթին՝ արտադրողական ուժերի զարգացմանը։ Արտաքին
առևտուրը էական դեր է խաղացել մասնավորապես, երկրի ինդուստրացման
գործում, ապահովել նորագույն տեխնիկական մակարդակի անհրաժեշտ մե-
քենաների և սարքավորումների ներմուծումը։ Երկրի ինդուստրացումն իր հեր-
թին դարձավ արտաքին առևտրի աճի և որակական փոփոխությունների վըճ-
ռական նախապայմանը։ Տնտեսական շինարարության մեջ ձեռք բերած հա-
ջողությունները Սովետական Միությանը հնարավորություն ընձեռեցին վար-
կեր հատկացնել, մասնակցել արդյունաբերական և այլ ձեռնարկությունների
ստեղծմանը արտասահմանում։

Նախապատերազմյան տարիներին, երբ Սովետական Միությունը դեռ
միակ սոցիալիստական պետությունն էր, իսկ Ասիայի և Աֆրիկայի երկրների
մեծամասնությունը գտնվում էր իմպերիալիստական տերությունների գաղու-
թատիրական լծի տակ, դեռևս չկային օբյեկտիվ պայմաններ արտաքին տնտե-
սական հարաբերությունների նոր սկզբունքների երկկողմանի ու բազմակող-
մանի լրիվ կիրառման համար։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի
կազմավորման, գաղութատիրության փլուզման շնորհիվ բարենպաստ պայ-
մաններ ստեղծվեցին զարգացող երկրների առաջընթացի համար։

Միջազգային սոցիալիստական հարաբերությունների ձևավորումը բարդ
պրոցես է, որը տեղի է ունենում սոցիալիզմի ուղին բռնած տնտեսական ու
սոցիալական զարգացման մակարդակի՝ անցյալից ժառանգած անհավասա-
րության հաղթահարման հետ։ Սոցիալիստական համակարգում կոլեկտիվ փոր-
ձի հիման վրա մշակվում են համագործակցության նոր, ավելի արդյունավետ
ձևեր, որոնց նպատակն է էֆեկտիվորեն նպաստել սոցիալիզմի ու կոմունիզմի
կառուցմանը, յուրաքանչյուր երկրի և ողջ սիստեմի էկոնոմիկայի հզոր վերել-
քին, ժողովուրդների կենսամակարդակի բարձրացմանը, տնտեսական մերձեց-
մանը և քաղաքական համախմբմանը։ Այդ նպատակները սոցիալիստական
երկրներում գործնականորեն իրականացվում են միջպետական կապերի տար-
բեր ձևերով ու եղանակներով։ Այս տենդենցը պարզորոշ երևում է տնտեսա-
կան փոխօգնության խորհրդի գործունեության մեջ։ Այստեղ մշակվում են
ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման ՏՓԽ-ի անդամ երկրների
էկոնոմիկայի բազմաթիվ ճյուղերի արտադրության մասնագիտացման ու կոո-



պերացման հանձնարարականներ։ Արտադրության միջպետական մասնագի-
տացումն ու կոոպերացումը, աշխատանքի միջազգային բաժանումը լրացու-
ցիչ մեծ հնարավորություններ են ստեղծում ավելացնելու այդ երկրների ար-
տադրության աճի ծավալը։

Արտադրության մասնագիտացման գծով ՏՓԽ-ի հանձնարարականներն
արդեն ընդգրկում են մեքենաների ու սարքավորման, քիմիական և այլ նյու-
թերի բազմաթիվ տեսակներ։

Սոցիալիստական երկրների փոխադարձ կապերը տնտեսական ու գիտա-
տեխնիկական առաջընթացի զորեղ արագացուցիչն են։ Արագ, ինդուստրիալ
զարգացումը սոցիալիստական համագործակցության արգասիքն է, բնորոշ
հատկանիշը։ Դժվար է գերագնահատել Սովետական Միության դերը այդ եր-
կըրներին բազմակողմանի օգնություն ցույց տալու գործում։ Այստեղ ՍՍՀՄ
օգնությամբ կառուցված են մոտ 1.600 արդյունաբերական և այլ օբյեկտներ,
որոնցից մոտավորապես 1.000-ը շահագործման են հանձնված 1970 թվակա-
նի սկզբներին։

Արտաքին կապերը սոցիալիստական երկրների աշխատավորների կենսա-
մակարդակի բարձրացման կարևոր գործոն են։ Սոցիալիստական երկրների
տնտեսական պոտենցիալի արագ զարգացումը և աշխատանքի միջազգային
սոցիալիստական բաժանման խորացումը զարգացած համաշխարհային սո-
ցիալիստական տնտեսության կազմավորման և ամրապնդման անհրաժեշտ
նախադրյալներն են։

Զարգացման տենդենցը սոցիալիստական ինտեգրացիան է, սոցիալիս-
տական պետությունների պլանաչափ տնտեսական ու քաղաքական մերձեցումը՝
պլանների կոորդինացման և փոխադարձորեն առնչված տնտեսական այնպիսի
կառուցվածքի ստեղծման օգնությամբ, որն ընդգրկում է արտադրությունը և
վաճառահանումը, համատեղ ու կոոպերացված ձեռնարկությունների ապահո-
վումը բնական ռեսուրսներով, արտադրական կարողությունների ու գիտու-
թյան նորագույն նվաճումների առավել նպատակահարմար և էֆեկտիվ օգ-
տագործումը, աշխատանքի արտադրողականության արագ աճը, յուրաքան-
չյուր երկրի, ամբողջությամբ վերցրած սոցիալիստական դաշինքի ժողովուրդ-
ների կենսամակարդակի բարձրացումը։

Անհրաժեշտ է տնտեսական կապերի նյութական հիմքի ընդլայնումը աշ-
խատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը խորացնելու միջոցով։
Վերջինիս զարգացումն այժմ ընթանում է արտադրությունը մասնագիտաց-
նելու և կոոպերացնելու, ստանդարտների ու նորմատիվների ունիֆիկացման
հարցերը համատեղ լուծելու, ինչպես նաև շահագրգռված երկրների մասնակ-
ցությամբ երկկողմանի կամ բազմակողմանի հիմունքով միջպետական ձեռ-
նարկություններ ու կազմակերպություններ ստեղծելու ուղիով։ Կյանքն առա-
ջադրում է տնտեսական գործուն այնպիսի մեխանիզմի օգտագործման խնդի-
րը, որն ապահովում է սեղմ ժամկետներում մասնագիտացման վերաբերյալ
«ՍԷՎ»-ի օրգանների հանձնարարականների լրիվ կատարումը։

Սոցիալիստական երկրների և զարգացող երկրների տնտեսական կապերի
հիմքը համաշխարհային սոցիալիզմի և ազգային ազատագրական շարժման
արմատական շահերի ընդհանրությունն է։ Վերջինիս բնորոշ գծերն են՝ խա-
ղաղության ապահովումը, իմպերիալիզմի տիրապետության տապալումն ու
վերացումը, ազատագրված երկրների տնտեսական ու սոցիալական առաջա-

դիմության ապահովումը, սոցիալիստական և երիտասարդ ազգային պետությունների եղբայրական դաշինքի ամրապնդումը: Այստեղ փոխադարձաբար շահավետ փոխանակումը, աշխատանքի միջազգային բաժանումը էական գործոններ են տնտեսության զարգացման և ժողովուրդների կենսամակարդակի բարձրացման համար:

Փաստերը վկայում են, որ սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունը էֆեկտիվորեն նպաստում է երիտասարդ պետությունների դիրքերի ամրապնդմանը իմպերիալիզմի և գաղութատիրության դեմ մղվող պայքարում, ազգային տնտեսության հիմքերի ստեղծման ու զարգացման տեմպերի արագացմանը: Այն օգնում է նրանց ավելի լրիվ ու նպատակահարմար օգտագործել սեփական ռեսուրսներն ու ջանքերը, հնարավորություններ է ստեղծում ստանալու արդի կապիտալ սարքավորում, տեխնիկական փորձ ու միջոցներ՝ ձեռնտու այնպիսի պայմաններով, որոնք չեն սահմանափակում նրանց սուվերեն իրավունքները և չեն ոտնահարում ազգային արժանապատվությունը:

Կյանքը ցույց է տալիս սոցիալիստական և իմպերիալիստական պետությունների օգնության միջև եղած սկզբունքային տարբերությունը: Իմպերիալիզմն իր բուն էությամբ արգելք է զարգացող երկրների առաջադիմությանը: Այն դիմում է ամեն միջոցի հաստատելու այդ երկրներում իր քաղաքական, ստրատեգիական և տնտեսական ազդեցությունը: Իմպերիալիստական պետությունները հաճախակի ձախողում են վերցրած պարտավորությունները զարգացող երկրներում արդյունաբերական ձեռնարկություններ կառուցելու ուղղությամբ: Ամերիկայի Միացյալ Նահանգները հրաժարվեցին միջոցներ հատկացնել Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում Ասուանի բարձրաբերձ ջրամբարի և Հնդկաստանում մետալուրգիական գործարանների շինարարության համար:

Ինդուստրացումը հատուկ տեղ է գրավում առավել կարևոր և անհետաձգելի այն պրոբլեմների թվում, որոնց լուծումից մեծագույն չափով կախված է այդ երկրների առաջընթացը: Դա բացատրվում է ամենից առաջ այն բանով, որ ինդուստրացման իրականացումը վճռական նշանակություն ունի բարձր զարգացած բազմաճյուղ և դինամիկ էկոնոմիկա ստեղծելու, տնտեսական ինքնուրույնություն ձեռք բերելու և բնակչության լայն խավերին բարձր կենսամակարդակով ապահովելու համար: Երիտասարդ ազգային պետությունների ինդուստրացումը կարևոր է նաև այն պատճառով, որ այն գաղութատիրության դեմ մղած ծանր պայքարում նվաճած քաղաքական անկախության պահպանման և ամրապնդման անհրաժեշտ պայման է:

Արտաքին տնտեսական կապերը զարգացող երկրների համար կապիտալ սարքավորումների ու տեխնիկական փորձի ստացման կարևոր աղբյուր են, ինդուստրացման էական ազդակներից մեկը: Այդ կապերն ավելի են ուժեղանում արդի գիտա-տեխնիկական հեղաշրջումների ժամանակաշրջանում:

Զարգացող երկրների ինդուստրացման գործում սոցիալիստական երկրները ցույց են տալիս տնտեսական ու տեխնիկական օգնություն: Վերջինս իրականացվում է տարբեր եղանակներով, նախագծա-հետախուզական աշխատանքների կատարում, բազմազան կապիտալ սարքավորումների մատակարարում, որոնց զգալի մասը ուղարկվում է կոմպլեկտավորված ձևով, այստեղ կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական ղեկավա-



րության ապահովում, ինչպես նաև ազգային մասնագետների ու որակյալ բանվորների պատրաստում:

Զարգացող երկրներում, ըստ կնքված համաձայնագրերի, նախատեսված է սոցիալիստական երկրների աջակցությամբ ստեղծել ավելի քան 2.500 օբյեկտներ, որոնցից մոտ 700-ը ՍՍՀ Միության օգնությամբ: Օբյեկտների ընդհանուր թվի երկու երրորդը արդյունաբերական և էներգետիկ ձեռնարկություններ են: Նախատեսված ձեռնարկություններից մեծ մասն արդեն կառուցվել է, դրանք երիտասարդ պետությունների ինդուստրիալ զարգացման միջուկն են: Մետալուրգիական գործարաններ են կառուցված Հնդկաստանում, Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում և մի շարք այլ երկրներում; հիդրոտեխնիկական խոշորագույն կոմպլեքսներ (Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում, Սիրիայում ու Հնդկաստանում):

Արդյունաբերության բնագավառում սոցիալիստական երկրների և զարգացող երկրների համագործակցության շնորհիվ այդտեղ էապես ընդլայնվել է արտադրության նյութա-տեխնիկական բազան, ստեղծվել է մասնագետների ու բանվորների ազգային անձնակազմ, գործում է պետական սեկտորը, որը նպաստում է այդ երկրների անկախության ամրապնդմանը:

Հայտնի է, որ զարգացող երկրների մեծամասնությունն ունի էներգետիկայի հարուստ բնական ռեսուրսներ: Սակայն ջերմային էներգիայի գոյություն ունեցող աղբյուրները (ածուխը, նավթը, գազն ու տորֆը) և ջրային էներգիայի աղբյուրները դեռ աննշան չափով են օգտագործվում և շարունակում է ցածր մնալ աշխատանքի էներգազինվածությունը: Էներգիա քիչ է գործածվում նաև բնակչության կենցաղային կարիքների բավարարման համար: Շատ երկրներում վառելիքա-էներգետիկ բազայի թույլ զարգացումը էապես արգելակում է նրանց ինդուստրացումը: Ուստի միանգամայն հասկանալի է, որ վառելիքա-էներգետիկ բազայի ստեղծումը դարձել է համագործակցության կարևոր ոլորտներից մեկը:

Նավթի ու գազի երկրաբանա-հետախուզական աշխատանքներ կատարելու համար այդ համագործակցության շրջանակներում Սովետական Միությունը մասնագետներ է ուղարկել Աֆղանստան, Հնդկաստան, ԵԱՀ, Իրան, Պակիստան: Սովետական մասնագետների և տեղի կազմակերպությունների համատեղ ջանքերն արդեն լավ արդյունք են տվել: Հնդկաստանի մի շարք շրջաններում հայտնաբերված են նավթի ու գազի արդյունաբերական նշանակության հանքավայրեր: Այստեղ սկսվել է նավթի ու գազի արդյունահանումը: Գազի նոր պաշարներ են գտնվել Աֆղանստանում, Պակիստանում և Իրանում, նավթի պաշարներ՝ Սիրիայում: Սովետական Միությունը Հնդկաստանին, Եգիպտոսի Արաբական Հանրապետությանը և Եթովպիային օգնություն է ցույց տվել տարեկան 11,5 միլիոն տոննա նավթի կարողությամբ նավթավերամշակման պետական նոր գործարանների շինարարության գործում: Արդեն գործում է Իրանից Սովետական Միությունը տարեկան մինչև 10 միլիարդ խոր. մետր գազ մատակարարող մագիստրալային գազամուղը: Նավթի ու գազի արդյունաբերության ստեղծման գործում զարգացող երկրներին աջակցություն են ցույց տալիս նաև Ռումինիան և Չեխոսլովակիան:

Հնդկաստանում կառուցվում են մեքենայացված նոր ածխահորեր և լեռնահանքային սարքավորումների գործարան: Այդ ճյուղի ձեռնարկությունների

կարողությունները Սովետական Միության օգնությամբ աճում են տարեկան ավելի քան 10,5 միլիոն տոննա ածխի արդյունահանմամբ։

Սոցիալիստական երկրներն օգնում են ջրամբարտակներ կառուցել Աֆղանստանում, Բիրմայում, Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում, Սիրիայում և այլ երկրներում։ Ջերմաէլեկտրակայաններ և հիդրոէլեկտրակայաններ են կառուցվում Աֆղանստանում, Հնդկաստանում, Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում, Սիրիայում և այլուր։

Էներգետիկայի զարգացման ասպարեզում կարևոր քայլ է էներգետիկ մեքենաշինության սեփական ձեռնարկությունների ստեղծումը։ Եթե մինչև այսօր նոր էլեկտրակայանների շինարարությունը և գոյություն ունեցողների ընդլայնումը Հնդկաստանում ու Պակիստանում կատարվել է ներմուծվող սարքավորմամբ, ապա արդեն հեռու չէ այն ժամանակը, երբ հիշյալ երկրների էլեկտրակայաններում կտեղակայվի Սովետական Միության ու Չեխոսլովակիայի օգնությամբ կառուցված ձեռնարկությունների արտադրած սարքավորումը (Հնդկաստանում)։

Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրների տնտեսության բոլոր ճյուղերի վերելքի և տնտեսական ինքնուրույնության առավել կարևոր պայմաններից է նաև սեփական մետալուրգիայի ու մեքենաշինության առկայությունը, զարգացման որոշակի մակարդակը։

ՍՍՀՄ և զարգացող երկրների համագործակցության շրջանակներում սև մետալուրգիայի կառուցվող և գործող գործարաններից ամենախոշորը Բհիլայի գործարանն է (Հնդկաստանում), որի կարողությունն արդեն հասցված է տարեկան 2,5 միլիոն տոննա պողպատի արտադրության։

Հնդկաստանում սկսվել են մետալուրգիայի նաև մի ուրիշ հսկայի՝ Բոկարոյի գործարանի շինարարության աշխատանքները։ Այն սկզբում տարեկան ձուլելու է 1,7 միլիոն տոննա պողպատ, գործարանի ընդլայնումից հետո տարեկան մինչև 4,0 միլիոն տոննա պողպատ ձուլելու հեռանկարով։ Հնդկաստանի մետալուրգիական արդյունաբերության զարգացման գործում մեծ ավանդ է Ռանչիում ՍՍՀՄ աջակցությամբ ծանր մեքենաշինության գործարանի շինարարությունը։ Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում ընդլայնվում և արմատապես վերափոխվում է Խելուանի մետալուրգիական գործարանը։ Իրանում (Իսպահանի շրջանում) կառուցվում է առաջին ժամանակակից մետալուրգիական գործարանը, որի նախնական կարողությունը՝ տարեկան 500—600 հազար տոննա արտադրության չափով։ Զարգացող երկրներում էականորեն ընդլայնվում է նաև մեքենաշինության բազան։ Այստեղ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների օգնությամբ կառուցվում են մեքենաշինության ու մետաղամշակման բազմաթիվ ձեռնարկություններ։

Ինդուստրիալ զարգացումը ենթադրում է նաև շինանյութերի արդյունաբերության ծավալում։ Այդ նպատակով սոցիալիստական համագործակցության երկրները այստեղ կառուցում են ցեմենտի, աղյուսի, կղմինդրի, ապակու գործարաններ, տնաշինական կոմբինատներ ու այլ ձեռնարկություններ։ Կառուցվող օբյեկտների ցուցակում զգալի տեղ են գրավում լայն սպառման առարկաների արտադրության ձեռնարկությունները։ Դրանցից սոցիալիստական երկրների օգնությամբ կառուցվում են շուրջ հինգ հարյուր ձեռնարկություն։



Ազգային կադրերի պակասությունը, իսկ շատ երկրներում նաև նրանց բացակայությունը, բացասաբար է ազդել այդ երկրների տնտեսական զարգացման վրա։ Սոցիալիստական երկրների օժանդակությամբ կառուցվող օբյեկտներում, որոնք դարձել են մասսայական ուսուցման դպրոցներ, ինչպես նաև ձեռնարկություններին կից ուսումնական կենտրոններում պատրաստվել են ավելի քան 200 հազար որակյալ բանվորներ ու տեխնիկներ։ Նրանք ստացել են շինարարների, մոնտաժողների, մեխանիզատորների և արտադրական այլ մասնագիտություններ։

Աճում է ազգային կադրերի համալրումը բարձրագույն ու միջնակարգ այն ուսումնական հաստատությունների և ուսումնական կենտրոնների շրջանավարտների հաշվին, որոնք զարգացող երկրներում կազմակերպվել և զարգանում են սոցիալիստական երկրների օգնությամբ։ ՍՍՀՄ մասնակցում է ավելի քան 115 ուսումնական հաստատությունների ու կենտրոնների ստեղծմանը, որոնցից մոտ 70-ն արդեն գործում են։ Դրանց թվումն են Բոմբեյի տեխնոլոգիական ինստիտուտը Հնդկաստանում, Ռանգունի տեխնոլոգիական ինստիտուտը Բիրմայում, Կոնակրիի պոլիտեխնիկական ինստիտուտը Գվինեայի Հանրապետությունում, նավթի ու գազի ինստիտուտը և նրանց կից հատուկ տեխնիկումը Ալժիրում, Բահր-Դարայի պոլիտեխնիկական ինստիտուտը Եթովպիայում և ուրիշներ։

Միաժամանակ տարեցտարի ավելանում է զարգացող երկրներից եկած և «ՍԷՎ»-ի անդամ պետությունների համալսարաններում և ինստիտուտներում սովորող ուսանողների ու ասպիրանտների թիվը։ Վերջին տարիներս նրանց թիվն անցել է 19 հազարից (ներառյալ նախապատրաստական դասընթացները)։ Սոցիալիստական երկրների բազմաթիվ ձեռնարկություններում արտադրական-տեխնիկական ուսուցում են անցնում և իրենց որակավորումը բարձրացնում զարգացող երկրների երիտասարդ մասնագետները և որոշ կարգերի բանվորները։ 1970 թվականի տվյալներով մեզանում նման ուսուցում են անցել այդ երկրների ավելի քան 35 հազար քաղաքացիներ։

Ձեռնարկությունների շինարարության, երկրաբանական և այլ աշխատանքներում տեխնիկական օգնություն ցույց տալու համար 1955 թվականից մինչև 1970 թվականն ընկած ժամանակամիջոցում զարգացող երկրներն են մեկնել ավելի քան 70 հազար սովետական մասնագետներ։ Ազգային կադրերի հետ աշխատելիս նրանք տեղացիներին հաղորդել են իրենց փորձն ու գիտելիքները։

Սոցիալիստական երկրների կողմից զարգացող երկրներին հատկացվող երկարաժամկետ վարկերը (դրանց ընդհանուր գումարը կազմում է մոտ 7 միլիարդ ռուբլի, այդ թվում սովետական վարկերինը՝ մոտ 5 միլիարդ ռուբլի) օգտագործվում են գլխավորապես մատակարարվող մեքենաների, սարքավորման ու նյութերի արժեքի և ձեռնարկությունների շինարարության կապակցությամբ ցույց տրվող տեխնիկական օգնության կամ համաձայնագրերով նախատեսված աշխատանքների կատարման վճարումների համար։ Այդ վարկերը տրվում են սովորաբար միջկառավարական հիմունքով, տարեկան 2,5—3,9 տոկոսի հաշվով, մարման 8—12 տարի ժամանակով։ Սակայն իրականում, հաշվի առնելով այն, որ վարկերի մարումն սկսվում է միայն սարքավորման ու նյութերի մատակարարումների ավարտվելուց 1—2 տարի, կամ համապատասխան ձեռնարկությունը շահագործման հանձնվելուց հետո, այդ վարկերի

մարման ժամանակը ավելացվում է ևս 3—4 տարով։ Տոկոսները հաշվվում են վարկի միայն փաստորեն օգտագործման մասի համար։ Վարկերի մարման վճարումների դիմաց, որպես կանոն, ընդունվում են զարգացող երկրների տրադիցիոն արտահանության ապրանքներ, ինչպես նաև արդյունաբերական արտադրության, այդ թվում նաև վարկերի հաշվին կառուցված ձեռնարկությունններում թողարկվող ապրանքներ։

Համագործակցությունն արտադրության ոլորտում ընդլայնում է փոխանակման հնարավորությունները։ Առևտրի աճը սոցիալիստական երկրներին հնարավորություն է ընձեռում ավելի լրիվ բավարարել իրենց պահանջմունքները զարգացող երկրներում արտադրվող ապրանքների հաշվին, այդ թվում բնական կաուչուկ, ջուտ, կակաո, սուրճ և այլ այնպիսի ապրանքներ, որոնց արտադրության համար պայմաններ չկան սոցիալիստական երկրներում։ Սոցիալիստական երկրների և զարգացող երկրների միջև առևտրի ծավալը 1969 թվականին կազմեց 5 միլիարդ ռուբլի, 1955 թվականի համեմատությամբ այն աճել է ավելի քան չորս անգամ։

Սոցիալիստական պետությունների և զարգացող երկրների համագործակցությունը, փոխադարձ կապերի ընդլայնումը հարաճուն ազդեցություն են գործում միջազգային հարաբերությունների ողջ սիստեմի վրա։ Այստեղ գլխավորը օրինակի ուժն է, բազմակողմանի համագործակցության և փոխօգնության շնորհիվ տնտեսական շինարարության մեջ ձեռք բերված արդյունքները։ Սոցիալիստական դաշինքի երկրների եղբայրական բարեկամությունը, միասնությունն ու համախմբվածությունը զորեղ գործոն են և համապատասխանում են անկախության ուղին բռնած ժողովուրդների շահերին։

Առանձնահատուկ նշանակություն ունի միջազգային ասպարեզում համաշխարհային սոցիալիզմի օգնությունը ազատագրված երկրներին։ Սոցիալիստական համագործակցության երկրները ակտիվորեն հանդես են գալիս երիտասարդ պետությունների գործերին իմպերիալիստական տերությունների միջամտության, այդտեղ ընդհարումներ առաջացնելու փորձերի դեմ։

Իմպերիալիստական տերությունների ոտնձգությունների դեմ հզոր պատվար է սոցիալիստական և զարգացող երկրների փոխադարձ պաշտպանությունը։ Վերջիններիս ակտիվ ելույթները ագրեսիայի և նեոգաղութատիրության իմպերիալիստական քաղաքականության դեմ կարևոր դեր են խաղում խաղաղության ամրապնդման գործում։ Համաշխարհային քաղաքականության կարևորագույն հարցերում զարգացող երկրների դիրքորոշումը հիմնականում համընկնում է սոցիալիստական երկրների տեսակետին, որը նպաստում է միջազգային կազմակերպություններում այնպիսի որոշումների ընդունմանը, որոնք արձագանքում են աշխատավոր մարդկության շահերին։ Ազատագրված երկրները ընթանալով առաջադիմական սոցիալական զարգացման ուղիով, լայն հնարավորություններ են ստեղծում համագործակցելու սոցիալիզմի աշխարհի հետ հասարակական կյանքի տարբեր բնագավառներում։

Ձևավորվող նոր տիպի միջազգային հարաբերությունները սոցիալիստական հեղափոխությունների դարաշրջանի արդյունք են։ Դրանք Վ. Ի. Լենինի արտահայտությամբ բոլորովին այլ միջազգային հարաբերություններ են և ծառայում են աշխատավոր մարդկության տնտեսական ու սոցիալական առաջընթացին։

# ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Մ. Հ. ԱԴՈՆՑ

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## ՍՄԿԿ ԱՐԴԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Արդի ժամանակաշրջանում ՍՄԿԿ վարած տնտեսական քաղաքականությունը նորից ապացուցում է, որ հասարակական զարգացման հարցերում կուսակցությունը միշտ ղեկավարվել է տնտեսության ու քաղաքականության միասնության լենինյան սկզբունքով։ ՍՄԿԿ-ն իր տնտեսական քաղաքականությունը մշակելիս հաշվի է առնում սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջները, երկրի ներքին և արտաքին վիճակը, ելնում իր ծրագրային դրույթներից։ Դա նրա տնտեսական քաղաքականությանը գիտական բնույթ է հաղորդում։

Սոցիալիստական հասարակարգի զարգացման օրինաչափություններն են՝ բնակչության բարեկեցության անշեղ բարելավումը, արտադրաուժերի արագ զարգացումը, դասակարգերի, սոցիալական շերտերի ու խմբերի տարբերությունների աստիճանական վերացումը։ Այդ օրինաչափությունների հաշվի առնումը տնտեսական քաղաքականության գիտական հիմնավորվածության անհրաժեշտ պայմանն է։

Սակայն կուսակցության քաղաքականությունն իր նպատակին չի հասնի, եթե ելնի միայն ընդհանուր օրինաչափություններից, հաշվի չառնելով տվյալ ժամանակաշրջանի յուրահատկությունները։

ՍՄԿԿ XXIV համագումարը տվեց արդի ժամանակաշրջանի յուրահատկությունների հանգամանալի վերլուծությունն ու բազմակողմանի բնութագիրը։ Մեր ժամանակաշրջանի գլխավոր յուրահատկությունն ամենից առաջ այն է, որ ՍՍՀՄ-ում առաջինը կառուցվեց և շարունակում է զարգանալ հասուն սոցիալիստական հասարակարգը։ Հասուն սոցիալիստական հասարակարգում ավելի համաչափորեն են զարգանում երկրի տնտեսությունը, կուլտուրան և հասարակական-քաղաքական կյանքը։ ՍՍՀՄ արտադրաուժերը հասել են զարգացման այնպիսի բարձր մակարդակի, որ մեր հայրենիքը ձեռնամուխ է եղել

կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցմանը։ Հայտնի է աշխարհին, որ մեր երկրում արտադրահարաբերությունները ևս հասել են զարգացման բարձր մակարդակի, անբաժանելիորեն տիրապետում է արտադրամիջոցների հանրային սեփականությունը, անկաշկանդ գործում են սոցիալիզմի տնտեսական օրենքները, նվազում են դասակարգերի, սոցիալական շերտերի ու խմբերի, ինչպես նաև գյուղի ու քաղաքի միջև եղած տարբերությունները։ Զարգացած սոցիալիստական հասարակարգում բարձր կատարելագործման է հասնում նաև պետական-քաղաքական վերնաշենքը, բարձրանում է աշխատավորության ստեղծագործական ակտիվությունը, ավելի է ընդլայնվում սոցիալիստական դեմոկրատիան, կատարելագործվում են կառավարման ձևերը։

Արդի ժամանակաշրջանի կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ, նախկինի համեմատությամբ, չափազանց մեծացել են արտադրության ու սպառման մասշտաբները, կապիտալ ներդրումների ու արտադրաֆոնդերի չափերը, ընդլայնվել են մեր երկրի միջազգային տնտեսական կապերը, բարձրացել է աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Այժմ ՍՍՀՄ-ում յուրաքանչյուր օր արտադրվում է ավելի քան 2 միլիարդ ռուբլու հասարակական արդյունք, որը տասն անգամ գերազանցում է 30-ական թվականներին մեկ օրում արտադրված հասարակական արդյունքի ծավալին։ Աշխարհի արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալում Սովետական Միության տեսակարար կշիռը 1970 թվականին հասավ ավելի քան 20 տոկոսի։

Չպետք է մոռանալ, որ ամբողջ աշխարհում ծավալված գիտա-տեխնիկական հեղափոխությունն ազդում է հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Այդ հեղափոխությունը և սոցիալիզմի առավելությունները լայն հնարավորություններ են ստեղծում գիտության ու տեխնիկայի բազմակողմանի ու արագ զարգացման համար։

Ժողովրդական տնտեսության մեջ կատարված քանակական փոփոխությունների հետ մեկտեղ, կատարվել են արմատական որակական տեղաշարժեր. բարձրացել է նյութական արտադրության տեխնիկական մակարդակը, բարելավվել են նրա կառուցվածքն ու տեղաբաշխումը։

Մեր երկրի արտաքին պայմաններում կատարված փոփոխություններից ամենակարևորը՝ տնտեսական ինտեգրացիայի ծավալումն է սոցիալիստական երկրների միջև։ Ինչպես ասված է ՏՓԽ երկրների կոմպլեքսային ծրագրում, սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան բոլոր մասնակից երկրներին ապահովում է գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ավելի արդյունավետ օգտագործում, արտադրության արագ աճ, սոցիալիզմի դիրքերի ամրապնդում կապիտալիզմի դեմ տարվող տնտեսական մրցակցությունում։

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացումը, նրա մասշտաբների մեծացումը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի դիրքերի ամրապնդումը նախապայմաններ են ստեղծել տնտեսական զարգացման հարցերը լուծելու կոմպլեքսային ձևով։ Եթե 30-ական թվականներին գոյություն ունեցող սահմանափակ նյութական միջոցները բավականացնում էին գլխավորապես լուծելու առաջնահերթ խնդիրները, ապա արդի ժամանակաշրջանում օբյեկտիվ պայմաններ են ստեղծվել գրեթե միաժամանակ լուծելու բոլոր կարևորագույն սոցիալական ու տնտեսական խնդիրները։

Հաշվի առնելով արդի ժամանակաշրջանի էական առանձնահատկություն-



ները, ՍՄԿԿ XXIV համագումարը մշակեց ՍՍՀՄ տնտեսական քաղաքականությունը և 9-րդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրները։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում գրված է. «Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք, սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա»։

Այժմ, երբ արտադրաուժերը զարգացման բարձր մակարդակի են հասել, մեծացել են մեր տնտեսական հնարավորությունները, կուսակցությունն իր տնտեսական քաղաքականության կենտրոնական խնդիրն է համարում՝ բնակչության բարօրության առավել բարձրացումը։ Հիրավի, կուսակցության տնտեսական քաղաքականության այդ կուրսը նպաստում է սոցիալիստական արտադրության հետագա հզոր վերելքին։ «Կուսակցությունը ելնում է նաև այն բանից,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— որ աշխատավորների բարեկեցության բարձրացումը դառնում է մեր բուն տնտեսական զարգացման ավելի ու ավելի հրամայական պահանջը, արտադրության արագ աճի տնտեսական կարևոր նախադրյալներից մեկը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը... էջ 63—64)։

Ժամանակակից արտադրությունը պահանջում է բանիմաց և բազմակողմանիորեն զարգացած աշխատողներ։ Մարդու մասնագիտական գիտելիքները, ընդհանուր կուլտուրան և պրոֆեսիոնալ պատրաստությունը դառնում են աշխատավորական լայն խավերի հաջող աշխատանքի անհրաժեշտ պայմանը։ Սակայն այդ ամենը խոշոր չափով կախված է և նրանց կենսամակարդակից, նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման աստիճանից։

Տնտեսական քաղաքականության այդ կուրսը փաստորեն սկսվել է դեռ նախորդ հնգամյակում և շարունակվելու է ապագայում։

ՍՄԿԿ XXIII համագումարը որոշեց 8-րդ հնգամյակի տարիներին արդյունաբերության առաջին և երկրորդ խմբերի զարգացման տեմպերը մոտեցնել իրար։ Արտադրության ընդլայնումը և հատկապես ժողովրդական սպառման առարկաների արտադրության առավել արագ աճը հնարավոր դարձրին նշանակալի չափերով ավելացնելու բնակչության եկամուտները։ 8-րդ հնգամյակի ընթացքում բանվորների և ծառայողների միջին աշխատավարձն աճեց 22 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտները հանրային տնտեսությունից՝ 42 տոկոսով։ Միաժամանակ բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտները հասարակական ֆոնդերից ավելացան 80 ռուբլով։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ անցյալ հնգամյակում բնակչության դրամական եկամուտներն ապրանքային ֆոնդերից արագ աճեցին, որի հետևանքով մանրածախ առևտրի ցանցում որոշ ապրանքների պակաս կար։ Օրինակ, չնայած անցյալ հնգամյակում մսի արտադրությունն ավելացավ 24 տոկոսով, բայց դնողունակ պահանջարկը մսի նկատմամբ ավելի արագ աճեց, այդ պատճառով էլ որոշ քաղաքներում չի ապահովվում պահանջվող քանակի մսի ամենօրյա վաճառքը։ Դարենային մնացած գրեթե բոլոր ապրանքների պահանջարկը լրիվ ապահովվել է։ Ավելի մեծ չափերով է աճել արդյունաբերական ապրանքների վաճառքը բնակչությանը։

Անցյալ հնգամյակի փորձը ցույց տվեց, որ աշխատողների նյութական շահագրգռության ուժեղացումն արագացրել են աշխատանքի արտադրողականության աճն ու հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը։ Դա ավելի ակնառու է գյուղատնտեսության մեջ։

Ընթացիկ հնգամյակում նորից էական տեղաշարժեր են կատարվելու արդյունաբերության ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի կառուցվածքում։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները նախատեսում են արդյունաբերության «Ա» խմբի արտադրանքն ավելացնել 41—45 տոկոսով, իսկ «Բ» խմբի արտադրանքը՝ 44—48 տոկոսով։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը կաճի 20—22 տոկոսով, իսկ բնակչության կենցաղային սպասարկումների ծավալը պետք է կրկնապատկվի։

Նյութական արտադրության կառուցվածքի այդ փոփոխությունները և ժողովրդա-տնտեսական համամասնությունների հետագա բարելավումը միտում են բնակչության բարեկեցության նշանակալի բարձրացման խնդրի լուծումը։ Ժողովրդական սպառման առարկաների արտադրության զարգացման տեմպերի արագացումը սակայն չի նշանակում, որ կուսակցությունը թուլացրել է իր ուշադրությունը ծանր արդյունաբերության զարգացման նկատմամբ։ Ծանր արդյունաբերությունը հանդիսանում է մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության և բնակչության բարեկեցության հետագա բարձրացման հիմքը։ Արտադրամիջոցների արտադրության առավել զարգացման տնտեսական օրենքը չի կորցրել իր ուժը, այն շարունակում է գործել։ Հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների հարաբերակցության հարցը լուծելիս կուսակցությունը խնդրին մոտեցել է ստեղծագործաբար։

Իններորդ հնգամյա պլանը նախատեսում է ապահովել ժողովրդի կենսամակարդակի նոր, էական վերելք։ Ծրագրվել է հնգամյակի ընթացքում բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձը բարձրացնել 20—22 տոկոսով, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը հանրային տնտեսությունից ավելացնել 30—35 տոկոսով։ 1975 թվականին բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը կհասնի 146—149 ռուբլու, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 98 ռուբլու։ Նախատեսվում է բնակչության եկամուտները հասարակական ֆոնդերից ավելացնել 40 տոկոսով։

Հանրային ֆոնդերը հիմնականում կօգտագործվեն բժշկական սպասարկման հետագա բարելավման և ժողովրդական կրթության զարգացման համար։ Այդ ֆոնդերի հաշվին կիրագործվեն նաև մի շարք այլ սոցիալական միջոցառումներ, այդ թվում՝ կբարելավվեն բազմազավակ և նվազ ապահովված ընտանիքների, արտադրության մեջ աշխատող կանանց, կենսաթոշակառուների, սովորողների կյանքի ու կենցաղի պայմանները։

Բնակչության եկամուտների աճի և ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնման համապատասխան, մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը կավելանա 40 տոկոսով։ Ավելի խոշոր չափերով կավելանա բարձրորակ ապրանքների վաճառքը, կընդլայնվի արդյունաբերական ապրանքների ասորտիմենտը։ Նախատեսված է այսուհետև ևս պահպանել մանրածախ գների կայունությունը, միաժամանակ շուկայի հագեցման համապատասխան իջեցնել առանձին ապրանքների գները։



Այդ բոլոր միջոցառումների հետևանքով բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները հնգամյակի ընթացքում կաճեն մոտ 30 տոկոսով։

Բնակչության բարեկեցության բարձրացման հարցին լոկ սպառողական մոտեցում չպետք է լինի։ Նյութական բարիքների առատությամբ ապահովելը մարդկանց բազմակողմանի զարգացման, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի զարգացման, նյութական արտադրության կատարելագործման, հասարակական առաջադիմության կարևորագույն նախապայմանն է։ Գիտության ու տեխնիկայի ներդրումն արտադրության մեջ, նոր ձեռնարկությունների կառուցումը, արտադրաֆոնդերի աճը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը նպատակ չունեն լոկ մեծացնելու հասարակական հարստությունը։ Մեր երկրի տնտեսական հզորության բազմապատկումը զուգակցվում է բնակչության բարեկեցության նշանակալի բարձրացման հետ։ Նոր տեխնիկայի ներդրումը ոչ միայն բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, այլև մարդկանց ազատում է ծանր աշխատանքից, բարելավում է աշխատանքային պայմանները։

Ընթացիկ հնգամյակում ներդրումներին տրվում է այնպիսի ուղղություն, որպեսզի ապահովվի սպառման միջոցների արտադրության ճյուղերի համար արտադրամիջոցների առավել արտադրության աճը։ Այսպես, օրինակ, եթե ժողովրդական տնտեսության մեջ կատարվող ամբողջ կապիտալ ներդրումներն ընթացիկ հնգամյակում աճելու են 36—40 տոկոսով, ապա գյուղատնտեսության մեջ այդ աճը կազմելու է 70 տոկոս, թեթև արդյունաբերության մեջ՝ 90 տոկոս, սննդի արդյունաբերության մեջ՝ 60 տոկոս։ Կապիտալ ներդրումների այդպիսի նշանակալի աճը գյուղատնտեսության, թեթև և սննդի արդյունաբերության մեջ, այդ ճյուղերի տեխնիկական հագեցվածության մակարդակը կմոտեցնի ծանր արդյունաբերության տեխնիկական հագեցվածության մակարդակին։

Ժողովրդական տնտեսության հզոր վերելքը և նրա տարբեր ճյուղերի տեխնիկական մակարդակների աստիճանական համահարթումը նպաստում է քաղաքի ու գյուղի բնակչության և սոցիալական տարբեր շերտերի ու խմբերի եկամուտների ու կյանքի պայմանների միջև եղած տարբերությունների աստիճանաբար վերացմանը։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ աշխատողների եկամուտների աստիճանական հավասարեցումը տնտեսական տեսակետից պետք է հիմնավորված լինի, այդ հավասարեցման հիմքում պետք է ընկած լինի մարդկանց բազմակողմանի զարգացումը, նրանց մասնագիտական որակավորման և հանրակրթական մակարդակների մերձեցումը։

«Կուսակցության քաղաքականության նպատակն է,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— նպաստել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության մերձեցմանը, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը։ Դա անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման գլխավոր տեղամասերից մեկն է» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, Երևան, 1971 թ., էջ 112)։

ՍՄԿԿ և սովետական պետության տնտեսական քաղաքականության մյուս արմատական հարցը, դա աճի աղբյուրների և այն ռեսուրսների խնդիրն է, որոնք հարկավոր է մոբիլիզացնել հանրային արտադրության հետագա վերելքի համար։

Իններորդ հնգամյակի հոյակապ առաջադրանքները կատարելու համար
պահանջվում են նյութական, աշխատանքային և ֆինանսական խոշոր միջոց-
ներ, որոնց գլխավոր աղբյուրը հասարակական արտադրության արդյունավե-
տության բարձրացումն է։

Հայտնի է, որ ժողովրդական տնտեսության աճի ուղիները երկուսն են՝
էքստենսիվ և ինտենսիվ։ Տնտեսական զարգացման էքստենսիվ ուղին պահան-
ջում է լրացուցիչ միջոցներ, այսինքն արտադրանքի աճը գերազանցապես
ապահովվում է լրացուցիչ կապիտալ ներդրումների և աշխատանքային լրա-
ցուցիչ միջոցների հաշվին։ Ինտենսիվ ուղու դեպքում արտադրության աճը հիմ-
նականում ապահովվում է գոյություն ունեցող միջոցների ավելի արդյունա-
վետ օգտագործման հաշվին։

Այժմ ժողովրդական տնտեսության էքստենսիվ աճի գործոնները նախկի-
նի համեմատությամբ սահմանափակ են։ Եթե նախորդ հնգամյակին աշխա-
տանքի որոշ ազատ ռեզերվներ ունեինք, ապա այժմ ժողովրդական տնտեսու-
թյան մի շարք ճյուղերում արդեն բանվորական ուժի պակաս է զգացվում։
Վերջին տարիներին բնակչության բնական աճը նվազել է, իսկ աշխատանքային
հասակ ունեցող սովորողների, ինչպես նաև կենսաթոշակառուների թիվը զգա-
լով ավելանում է։ Այդ պատճառով արդյունաբերության ու շինարարության մեջ
նոր աշխատուժի ներգրավման գործը դժվարացել է։ Եթե 7-րդ հնգամյակում
աշխատողների թվաքանակի ավելացման հաշվին ապահովվել է արտադրանքի
աճի 23 տոկոսը, 8-րդ հնգամյակում՝ 21 տոկոսը, ապա 9-րդ հնգամյակում
այդ գործոնի հաշվին ապահովվելու է արտադրանքի աճի միայն 10—13 տո-
կոսը, իսկ մնացած 87—90 տոկոսը՝ աշխատանքի արտադրողականության
բարձրացման հաշվին է լինելու։

Կապիտալ ներդրումների աճի հնարավորությունները ևս իրենց սահման-
ներն ունեն։ Այդ բոլորն ասում են այն մասին, որ ընթացիկ հնգամյակում ար-
տադրության վերելքը հիմնականում պետք է ապահովվի հասարակական աշ-
խատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության
բարձրացման հաշվին։

Արտադրության ինտենսիվացման կարևորագույն նախապայմանը տեխնի-
կական առաջընթացն է։ Այժմ ծավալվող գիտա-տեխնիկական հեղափոխու-
թյունը լայն հնարավորություններ է ստեղծում տեխնիկայի զարգացման ու
տեխնոլոգիայի վերակառուցման, նորանոր տեսակների սինթետիկ նյութերի
օգտագործման համար։

Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն արտադրության մեջ
արմատավորելու համար պետք է ուժեղացնել գիտության ու արտադրության
աշխատողների համագործակցությունը։ Անհրաժեշտ է կատարելագործել գի-
տության ու արտադրության միացման կազմակերպչական ձևերը։ Գիտական
կազմակերպություններում հետազոտությունները հիմնարար գիտությունների
ասպարեզում ուժեղացնելու հետ միասին, պետք է գիտական մշակումներն
ընդլայնել արտադրության մեջ, ձեռնարկություններում ստեղծել կոնստրուկ-
տորական բյուրոներ, փորձնական բազա, նախագծային կազմակերպություն-
ներ։ Այդպիսի կազմակերպություններ կարելի է ստեղծել խոշոր ձեռնարկու-
թյուններում, կոմբինատներում և արտադրական միավորումներում։

Գիտահետազոտական աշխատանքների ընդհանուր շղթայում մինչև այժմ
էլ թույլ օղակը գիտական հայտնագործությունների արմատավորումն է ար-



տադրության մեջ։ Առանց այդ պրոբլեմի լուծման, հնարավոր չէ վճռականորեն
բարձրացնել գիտական աշխատանքների արդյունավետությունը։ Հաշվարկված
է, որ ընթացիկ հնգամյակում գիտատեխնիկական նվաճումներն արտադրու-
թյան մեջ ներդնելու դեպքում, տնտեսական արդյունավետությունը կկազմի
40—42 միլիարդ ռուբլի։

Բացի գիտատեխնիկական առաջադիմությունից, հասարակական արտա-
դրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոններն են. ժողո-
վրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործումը. արտադրա-
ֆոնդերի լրիվ օգտագործումը, աշխատանքի առարկաների և աշխատաժամա-
նակի խնայողությունը, կապիտալ շինարարության բարելավումը, բնության
պահպանման հետ միասին, նրա օգտակար հանածոների ինտենսիվ օգտա-
գործումը։

Արդյունավետության բարձրացման մեծ ռեզերվներ կան ծանր արդյու-
նաբերության կառուցվածքի կատարելագործման ոլորտում։ Պետք է պլանա-
վորել ծանր արդյունաբերության այն ճյուղերի առավել արագ զարգացում,
որոնք ապահովում են արտադրածախքերի կրճատում, աշխատանքի արտա-
դրողականության բարձրացում, ինչպես բուն ծանր արդյունաբերության մեջ,
այնպես և այն ճյուղերում, որոնց ծանր արդյունաբերությունն արտադրու-
թյան միջոցներ է մատակարարում։

Տնտեսական խոշոր արդյունք կստացվի վառելիքա-էներգետիկ արդյու-
նաբերության կառուցվածքի բարելավումից։ Նպատակահարմար է ավելի արագ
զարգացնել այն ճյուղերը, որոնք առավել հեռանկարային են և խնայողա-
կան։ Պետք է վառելիքի ընդհանուր հաշվեկշռում բարձրացնել գազի և նավթի
տեսակարար կշիռը, միաժամանակ ընդլայնել բարձր խնայողաբեր հիդրավ-
լիկ և ջերմային, ինչպես նաև ատոմային էլեկտրակայանների շինարարու-
թյունը։

Մեքենաշինության մեջ հատուկ ուշադրություն պետք է դարձնել մեծ կա-
րողությամբ, բարձր խնայողությամբ, ճշգրտությամբ ու հուսալիությամբ
օժտված մեքենաների թողարկումն ավելացնելու վրա։

Կուտակումների կարևոր աղբյուր է նյութատարության իջեցումը, հումքի,
վառելիքի և օժանդակ նյութերի խնայողությունը։

Ժողովրդական տնտեսությանը հիմնականում հումք են մատակարարում
արդյունահանող արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը։ Իսկ արտա-
դրության այդ ճյուղերը վերամշակող արդյունաբերության համեմատու-
թյամբ արտադրանքի մեկ միավորի վրա մի քանի անգամ ավելի աշխատանք
ու կապիտալ ներդրումներ են ծախսվում։ Ժողովրդական տնտեսությանն
ավելի ձեռնտու է վերամշակվող արդյունաբերության տեխնոլոգիայի կատա-
րելագործման և հումքի որակի բարձրացման միջոցով հասնել հումքի խնա-
յողության, քան արդյունահանող ճյուղերում նույն քանակի լրացուցիչ հումք
արտադրել։

Այժմ մեր արդյունաբերության մեջ այնպիսի ահռելի քանակությամբ
հումք է ծախսվում, որ եթե արտադրանքի նյութատարությունը միայն մեկ
տոկոս իջեցվի, մեկ տարում կխնայվի 3—4 միլիարդ ռուբլի։

Փայտամշակման, թղթի ու ցելյուլոզի արդյունաբերության մեջ յուրա-
քանչյուր տարի հսկայական քանակի արժեքավոր անտառանյութ է շռայլվում։
Տեխնոլոգիայի կատարելագործման դեպքում նույն քանակի անտառեղենից

մոտ 2—3 անգամ շատ արտադրանք կարելի է ստանալ: Հաշվի առնելով այդ-
ընթացիկ հնգամյակում պլանավորված է անտառեղենի մթերումներն ավե-
լացնել 5 տոկոսով, իսկ ցելյուլոզի արտադրությունը՝ 1,7 անգամ, թղթինը՝
1,3 անգամ, ստվարաթղթինը՝ 1,8 անգամ:

Հնգամյակի վերջին տարում նյութատարության իջեցման հետևանքով
կտնտեսվի (1970 թվականի տեսակարար ծախսումների համեմատությամբ),
10 միլիոն տոննա սև մետաղների գլանվածք, 50 միլիարդ կիլովատ ժամ էլեկ-
տրաէներգիա, 40 միլիոն խորանարդ մետր անտառանյութ, 50 միլիոն տոննա
վառելիք:

Արտադրության արդյունավետության բարձրացման գործոններից մեկն
էլ արտադրանքի որակի բարձրացումն է, որն ըստ էության հավասարազոր է
լրացուցիչ քանակի արտադրանքի թողարկմանը: Ավտոդողերի արտադրու-
թյունը 1,5 անգամ ավելացնելու փոխարեն, կարելի է որակի բարձրացման
միջոցով թողարկվող յուրաքանչյուր ավտոդողի վազքն ավելացնել 1,5 ան-
գամ:

Արտադրության արդյունավետության բարձրացման չափազանց կարևոր
գործոններ են հանդիսանում արտադրական ֆոնդերի և կապիտալ ներդրում-
ների միջոցների օգտագործման բարելավումը: Միայն հերթափոխության
գործակցի բարձրացման հետևանքով կարող ենք առանց լրացուցիչ կապի-
տալ ներդրումների, արտադրանքի թողարկումը նշանակալի չափերով ավե-
լացնել: Այսպես օրինակ, այժմ մեր երկրի մեքենաշինության հերթափոխու-
թյան գործակիցը հավասար է 1,3: Եթե մեքենաշինական ձեռնարկություն-
ների հերթափոխության գործակիցը հասցնենք 1,7-ի, այս դեպքում միայն
գործող ձեռնարկությունների թողարկող արտադրանքի ծավալը կավելանա 26
տոկոսով:

Անբավարար վիճակ գոյություն ունի նաև շինարարության մեջ: Մենք
ավելի շատ ենք կառուցում, քան աշխարհի որևէ այլ երկիր: Սակայն կապի-
տալ ներդրումների արդյունավետությունն այնքան էլ բարձր չէ: Դրա գլխա-
վոր պատճառներն են՝ կապիտալ ներդրումների փոշիացումը և գործող ձեռ-
նարկությունների վերակառուցման ու արդիականացման թերագնահատումը:
Շատ դեպքերում տնտեսապես ավելի ձեռնտու է նոր ձեռնարկության կա-
ռուցման փոխարեն, վերակառուցել ու ընդլայնել գործող ձեռնարկությունը:
Հսկայական կորուստներ ենք ունենում նաև շինարարության որակի ցածր լի-
նելու հետևանքով:

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հա-
մար նվազ նշանակություն չունի նաև աշխատաժամանակի կորուստների վե-
րացումը յուրաքանչյուր ձեռնարկությունում, կադրերի հոսունության կրճա-
տումը, ռիթմիկ աշխատանքի ապահովումը և այլն:

Կուսակցության տնտեսական քաղաքականության հանգուցային հարցե-
րից մեկը՝ կառավարման սիստեմի կատարելագործումն է: Սոցիալիստական
հասարակարգում արտադրությունը զարգանում է ոչ թե ինքնաբերաբար, այլ
պլանաչափորեն, միլիոնավոր մարդկանց գիտակցական գործունեության հե-
տևանքով: Առանց կուսակցության գիտականորեն մշակված տնտեսական քա-
ղաքականության, կազմակերպչական աշխատանքի և կառավարման սիստե-
մի կատարելագործման, հնարավոր չի իրականացնել իններորդ հնգամյակի
հոյակապ ծրագիրը:



Տնտեսական ռեֆորմի անցկացումը և ճյուղային գերատեսչությունների
ստեղծումն արագացրին մեր արդյունաբերության զարգացման տեմպերը:
Գյուղատնտեսության մեջ ևս նյութական խթանների դերի բարձրացումը և
կազմակերպչական աշխատանքների ուժեղացումը, իրենց դրական արդյունք-
ները տվին:

ՍՄԿԿ XXIV համագումարը սահմանեց, թե ինչ ուղղություններով պետք
է ընթանա ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կատարե-
լագործումը: Կառավարման կենտրոնական օղակը, ինչպես ասել է ընկեր
Բրեժնևը, պլանավորումն է: Այդ պատճառով էլ կառավարման սիստեմի կա-
տարելագործման կենտրոնական հարցերից մեկը՝ պլանավորման հետագա
բարելավումն է: Ժողովրդական տնտեսության աճը, նրա տեխնիկական մա-
կարդակի բարձրացումը, տնտեսական կապերի ընդլայնումն ու բարձրացումը
պահանջում են ավելի բարձրացնել պլանավորման գիտական մակարդակը,
կատարելագործել նրա մեթոդները:

Գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում մեծա-
ցել է հեռանկարային պլանների դերը: Հնգամյա պլաններից բացի, պետք է
կազմել ավելի երկարաժամկետ հեռանկարային պլաններ և մշակել տնտեսա-
կան ու գիտատեխնիկական կանխատեսումները:

Անհրաժեշտ է ուժեղացնել արտադրության համակենտրոնացումն ու
կենտրոնացումը: Այդ կապակցությամբ խնդիր է դրվում համարձակորեն շա-
րունակել արտադրական միավորումների կազմակերպման աշխատանքները,
որոնք հետագայում դառնալու են արդյունաբերության սկզբնական հիմնա-
կան օղակները: Արտադրական միավորումներ պետք է ստեղծել նաև ժողո-
վրդական տնտեսության մյուս ճյուղերում: Մեծ կարևորություն է ստանում
ինդուստրիալ-ագրարային և գիտաարտադրական միավորումների ստեղծման
գործը:

Արտադրության զարգացման գործում մեծանալու է տնտեսական ու բա-
րոյական խթանների դերը: Պլանավորման կենտրոնացման հետ միասին,
պետք է լայնորեն օգտագործել տնտեսական հաշվարկը, գները, շահույթը,
վարկը և տնտեսական մյուս լծակներն ու նյութական խթանման ձևերը: Հենց
այդ ուղղությամբ պետք է շարունակվի տնտեսական ռեֆորմը:

Կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացումը պա-
հանջում է տնտեսության կառավարման գործին մասնակից դարձնել հասա-
րակական կազմակերպություններին, աշխատավորների լայն զանգվածներին,
ուժեղացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը ձեռ-
նարկություններում, տնտեսական կազմակերպություններում: Յուրաքանչյուր
տնտեսական գործին պետք է քաղաքական մոտեցում ունենալ, այն ենթար-
կել կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական ու քաղաքական խըն-
դիրների կենսագործման նպատակին:

Կոմունիստական կուսակցությունը հենվելով մարքս-լենինյան տեսու-
թյան վրա, օգտագործելով աշխատավոր զանգվածների քաղաքական ու աշ-
խատանքային ակտիվությունը, հաջողությամբ կենսագործում է բնակչության
բարեկեցության հետագա բարձրացման, երկրի տնտեսական ու պաշտպանա-
կան հզորության բազմապատկման ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած հո-
յակապ ծրագիրը:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

Կոմունիստի ակտիվության բարձրացման հարցը մշտապես գտնվել է մեր տեսադաշտում, գործարար քննարկվել սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում և կուսշրջկոմի բյուրոյի նիստերում ու պլենումներում։ Սակայն, չենք բավարարվել այդքանով։ Շրջկոմին կից գործող սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների միամյա դպրոցի ուսումնական ծրագրում այդ հարցն իր տեղն ունի։ Կոմունիստների ավանգարդային դերի վերաբերյալ այստեղ կարդացվել են դասախոսություններ։ Առանձին կուսկազմակերպությունների քարտուղարներ հանդես են եկել իրենց փորձի հաղորդումներով։

Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու նպատակով, օգտագործում են նաև նրանց հաշվետվությունների քննարկման փորձված մեթոդը։ Ջրաշենի, Մեծ Պարնիի, Սարահարթի կուսկազմակերպություններում լսվել են մի շարք կոմունիստների հաշվետվություններ։ Հաշվետվությունների քննարկումը պատշաճ տեղ է գրավում նաև Նալբանդի, Գեղարոտի սովխոզների կուսկազմակերպություններում։

Այս տեսակետից ուսանելի է Մ. Պարնի գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության փորձը։ Կուսբյուրոն հաշվետվությունների ունկնդրումը ծառայեցնում է արտադրության մեջ կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխմանն ու նրանց ավանգարդային դերի բարձրացմանը։ Այստեղ յուրաքանչյուր կոմունիստ գիտակցում է իր առաջավոր դերը, որպիսին մեխանիզատոր Ս. Քոսյանն է։

Եվ ահա ժողովներից մեկում (1970 թ. օգոստոս), որին ներկա էին բոլոր կոմունիստները, Քոսյանը, հաշիվ տվեց ընկերներին։ Ժողովն արձանագրեց, որ նա մեծ պատասխանատվություն է ցուցաբերում մեքենաների տեխնիկական խնամքի նկատմամբ, սիստեմատիկաբար կատարում իր առաջադրանքները։ Երեք տասնյակ տարուց ավելի նա ամենայն հոգատարությամբ աճեցրել է մեխանիզատորների մի մեծ կոլեկտիվ։ Նրա նախաձեռնությամբ կոլտնտեսության արհեստանոցում ստեղծվել է մեքենաների համար անհրաժեշտ պահեստամասերի արտադրություն։ Այդ առումով նրա հաշվետվությունը մեծ



հետաքրքրություն առաջացրեց կուսժողովում։ Ավելի պարզորոշ երևաց Քոսյանի՝ որպես անհատի ու կոլեկտիվի անդամի դեմքը, հստակորեն բացահայտվեցին նրա հաջողություններն ու թերությունները։ Ժողովում հանդես եկան շատերը։ Կոլտնտեսության նախագահ Ս. Ալավերդյանը Քոսյանին բնութագրեց ո՛չ միայն որպես լավ աշխատողի ու ձեռներեց կոմունիստի, այլև որպես ազնիվ մարդու, հոգատար ծնողի։ Գյուղսովետի գործկոմի նախագահ Հ. Պալյանն իր ելույթում ասաց, որ Քոսյանը, որպես իշխանության տեղական սովետի դեպուտատ, արդարացնում է իրեն, հաճախակի հանդիպումներ է ունենում ընտրողների հետ, լսում, խորհուրդներ տալիս, կատարում նրանց պատվերները։ Բայց որպես ժողովրդական դրուժինայի նախագահի տեղակալ՝ իրեն լավ չի դրսևորում, թույլ է պայքարում հակահասարակական երևույթների դեմ, նրա մոտ նկատվում է պարփակվածություն. ակումբում քիչ է լինում, կտրված է գրադարանից։

Ս. Քոսյանի հաշվետվության առթիվ կազմակերպության ժողովն ընդունեց համապատասխան որոշում։ Կուսշրջկոմի բյուրոն հավանություն տվեց Մ. Պարնիի կուսկազմակերպության նախաձեռնությանը և համապատասխան հանձնարարականներ տվեց սկզբնական կուսկազմակերպություններին։

Հարցի պատշաճ ուսումնասիրությունն ու գործարար քննարկումը գործի հաջողության լավագույն պայմանն են։ Ամեն մի քննարկում, եթե այն անցնում է քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում, մեծապես նպաստում է թերությունների համակողմանի բացահայտմանը, զգաստացնում մարդկանց, բարձրացնում նրանց պատասխանատվությունը։

Վերջին երկու տարվա ընթացքում կուսշրջկոմի բյուրոյում գործարար կերպով քննարկվել է Ջրաշենի, Լեռնավանի, Նալբանդի, Ծիլքարի, Թափանլիի, Հարթագյուղի, Շենավանի, Ծաղկաբերի տնտեսությունների, շաքարի և վերելակաշինական գործարանների ու շինարարական երկու կազմակերպությունների հաշվետվություններն արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման մասին։ Անցած տարվա նոյեմբերին ՀԿԿ Կենտկոմի բյուրոն լսեց մեր կուսշրջկոմի հաշվետվությունը և արեց մի շարք էական դիտողություններ ու տվեց կարևոր ցուցումներ։ Բյուրոյի որոշումը լայնորեն քննարկեցինք ինչպես կուսշրջկոմի բյուրոյի ընդլայնված նիստում, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար խորհրդակցություններում։

Կոմունիստների ակտիվության բարձրացման հիմնական պայմանը նրանց ուժերի ճիշտ տեղաբաշխումն է, ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում, ինչպես նաև հսկողության ապահովումը նրանց գործունեության նկատմամբ։ Մեզ հաջողվել է հասնել այն բանին, որ հաշվառման վերցված կոմունիստների մոտ 70 տոկոսն ընդգրկվի անմիջականորեն արտադրության մեջ։ Այսպես, եթե 1965 թ. արդյունաբերության, տրանսպորտի և շինարարական կազմակերպությունների 236 աշխատունակ կոմունիստներից շարքային գործ են կատարել 149-ը, ապա այժմ 321-ից 261-ը։ Կամ վերցնենք, գյուղատնտեսության բնագավառը։ 1965 թ. 720 աշխատունակ կոմունիստներից 560-ն էին անմիջականորեն ընդգրկված արտադրության ոլորտում, իսկ այժմ ընդգրկված են 640-ը, որը կազմում է կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատունակ կոմունիստների մոտ 80 տոկոսը։ Մեծ Պարնիի, Սարահարթի, Լեռնավանի, Խնկոյանի, Ջրաշենի կոլտնտեսային, Նալբանդի, Հայ-

փամբի սովխոզային և ուրիշ սկզբնական կուսկազմակերպություններում հաշվառման վերցված կոմունիստների ավելի քան 85 տոկոսը արտադրության առաջավորներ են։

Մեր կոմունիստների ակտիվության բարձրացման և աշխատավորների ջանքերի արդյունքն այն է, որ միայն հնգամյակի վերջին տարում շրջանի արդյունաբերության, գյուղատնտեսության և մյուս բնագավառներում ձեռք բերված հաջողությունների համար ինչպես շրջանը, այնպես էլ առանձին կոլեկտիվներ նվաճել են վեց փոխանցիկ կարմիր դրոշ, արժանացել դրամական մրցանակների։

Հատկանշական է, որ երբեմնի գյուղատնտեսական Սպիտակի շրջանն անցյալ տարվա կեսին, արդյունաբերական արտադրանքի իրացման ու համախառն արտադրանքի առաջադրանքները լավագույն ձևով կատարելու և սոցիալիստական մրցության մեջ հաղթելու համար, շահեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշն ու առաջին կարգի դրամական մրցանակը։ «Էլեկտրոշին»-ի կոլեկտիվը համամիութենական փոխանցիկ դրոշի է արժանացել երեք անգամ անընդմեջ և նույնքան անգամ իր ձեռքում է պահում կուսակցության շրջկոմի ու շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ Այստեղ բոլորը մեծ գովեստով են խոսում կոմունիստ շինարարներ Մ. Պողոսյանի, Գ. Առաքելյանի և մյուսների մասին, որոնք օրվա առաջադրանքները կատարում են 120—145 տոկոսով։ Գործարար սոցիալիստական մրցություն ծավալելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներն անշեղորեն կենսագործելու համար՝ շինարարության կուսկազմակերպությունը և ադմինիստրացիան որոշել են արագացնել այդ հսկա կառույցի շինարարությունը և նրա առաջին հերթը շահագործման հանձնել... գործարկել առաջիկայում, իսկ երկրորդը՝ 1972 թ. նոյեմբերին։

Կոմունիստները մեծ ակտիվություն են հանդես բերում արտադրական ծրագրերի կատարման գործում, առաջ մղում իրենց կոլեկտիվներին։ Նոր հնգամյակի առաջին տարվա առաջին եռամսյակում էլապաց կոմբինատի շինարարության և շրջկոոպի կոլեկտիվները նվաճեցին ՍՍՀՄ գյուղական շինարարության մինիստրության, Ցենտրոսոյուզի և ճյուղային արհմիությունների կենտկոմների փոխանցիկ կարմիր դրոշներն ու առաջին կարգի մրցանակները։

Աշխատանքի լավագույն օրինակ է տալիս Սպիտակի վերելակաշինական գործարանի երիտասարդ կոլեկտիվը։ Նրա համար արտադրական պլանների սիստեմատիկ կատարումը դարձել է սովորույթ։ Այս ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպության 71 կոմունիստներից 57-ն աշխատում են արտադրության վճռական տեղամասերում, նրանցից շատը հաճախակի հանդես են գալիս նորարարական առաջարկություններով։ Կոմունիստներ Ե. Քաջանյանը, Գ. Հարությունյանը, Ի. Բարաբաշը, կոնստրուկտոր Ս. Կարապետյանը, հավաքման արտադրամասի ավագ վարպետ Ս. Դանիելյանը և մյուսները 1970 թ. արել են 44 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց տարեկան պայմանական օգուտը կազմում է 40.704 ռուբլի։ Այս տարվա սկզբներին գործարանի ուղապանների տեղադրման տեղամասում վատ էր գործերի վիճակը։ Կուսկազմակերպության բյուրոն քննարկեց այդ հարցը։ Առաջավոր կոմունիստներ Լ. Ղազարյանը և Վ. Զաքարյանը գործուղվեցին այդ տեղամասը, և դրությունը փոխվեց։



ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ «Գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքների կատարումը կպահանջի լարված աշխատանք։ Գյուղատնտեսության վերելքի գործում մեծ դեր է պատկանում գյուղական շրջանների կուսակցական կազմակերպություններին...»։ Մեր շրջանի գյուղատնտեսության բնագավառի կոմունիստները խորապես զգում են իրենց նկատմամբ կուսակցության տածած այդ վստահությունն ու իրենց առջև դրված առաջադրանքների վեհությունը։ Նրանք քաջ գիտակցում են, որ միայն իրենց աշխատանքային ակտիվությամբ է հնարավոր իրականացնել կուսակցության մեծ կանխագծումները, գործի վերածել ստանձնած պարտավորությունները։

Կոլտնտեսային և սովխոզային սկզբնական կուսկազմակերպությունները, մարտականորեն գլխավորելով դաշտավարների ու անասնապահների եռանդուն գործունեությունը, լավ նախադրյալներ են ստեղծել շրջանի գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Այդ են վկայում նաև նախորդ տարիների բարձր ցուցանիշները, մասնավորապես հողագործների նվաճումները։

Կոմունիստների ակտիվությունն ակնհայտ է արտադրության բոլոր ճյուղերում։ Միտքս պարզաբանելու համար հարկ եմ համարում բերել Մ. Պարնիի Շահումյանի անվան կոլտնտեսության կոմունիստների օրինակը։ Նրանք հանրային արտադրության առաջամարտիկներ են, իրենց հերոսական աշխատանքով խանդավառում են անկուսակցական մասսաներին, նրանց տանում իրենց հետևից։ Կուսկազմակերպության 63 անդամներից 48-ը անմիջականորեն զբաղված են նյութական բարիքների արտադրությամբ։ Այստեղ դրվատանքով են արտահայտվում անասնապահներ՝ Վ. Շահբազյանի, Վ. Բարսեղյանի, մեխանիզատորներ Գ. Ղոչիկյանի, Շ. Գասոյանի, Ս. Քոսյանի, Ս. Պալյանի, Ս. Շահբազյանի և մյուսների մասին։ Նրանք բարեխիղճ, բարձր գիտակցականությամբ օժտված կոմունիստներ են և գյուղի հայրենի տնտեսության վերելքը համարում են իրենց հարազատ գործը։ Այդ ամենի շնորհիվ կոլտնտեսությունը հզորանում է, հաջողությամբ կատարում արտադրական պլանները։ Կուսակցությունն ու կառավարությունը բարձր են գնահատել Մ. Պարնիի կոլտնտեսության մարդկանց հայրենանվեր գործունեությունը՝ հնգամյակի տարիներին երկու անգամ նրանց շնորհելով ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշն ու առաջին կարգի դրամական մրցանակը։ Հայաստանում սովետական կարգերի հաստատման ու կոմկուսակցության կազմավորման 50-ամյակի առթիվ ծավալված մրցության մեջ հաղթելու համար՝ կոլտնտեսությունն արժանացավ ՀԿԿ Կենկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի հուշամեդալին։ Վերելքի ուղին բռնած կոլտնտեսության նախագահ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, կոմունիստ Ս. Ալավերդյանը, իր երկամյա ու ամբասիր աշխատանքի համար, պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Կոլտնտեսության հաջողություններն արդյունք են արտադրության բոլոր տեղամասերում կոմունիստների ցուցաբերած բարձր ակտիվության։

Կուսակցությունը սովորեցնում է, որ հասարակական արտադրության հոգսերը կոմունիստի հոգսերն են։ Կոմունիստը կուսակցության զինվորն է, նա պետք է միշտ գտնվի դժվարին տեղամասերում, այնտեղ, ուր պահանջում է գործի ընդհանուր շահը, ուր վճռվում են կենսական խնդիրներ։ Կուսակցության այդ պահանջին լիովին համապատասխան գործունեություն է ծավալում Հարթագյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը։ Կուս-

բյուրոն, կոմունիստները խորամուխ են լինում հանրային արտադրության
մեջ, օգնում նրա ռեզերվների ու արտադրության հնարավորությունների
հայտնաբերմանն ու օգտագործմանը, արտադրական ճյուղերի թերություննե-
րի վերացմանը: Այսպես, կաթնապրանքային ֆերման ետ էր մնում, տարին
փակում վնասով: Վերջին տարիներին զգալի չափով պակասել էր կովերի
կաթնատվությունը: Պատճառն այն էր, որ ֆերմայում գրեթե բացակայում էր
կաթի հաշվառումը, չէր սահմանված անասունների խնամքի և կովերի կթի
կայուն ռեժիմ: Ֆերմայի նախկին վարիչի թողտվությամբ չէր կազմվում անա-
սունների կերակրման ռացիոնը: Անհրաժեշտ էր լրջախոհ, գործը կազմակեր-
պելու կարողություն ունեցող մարդ: Եվ կուսկազմակերպությունը ֆերմայի վա-
րիչ երաշխավորեց կոմունիստ Գ. Մկրտչյանին, որն ավելի ձեռներեց ու փոր-
ձառու աշխատող էր: Վերջինս խորությամբ ուսումնասիրեց ֆերմայի ետ մնա-
լու պատճառները, ժամանակին միջոցներ ձեռնարկեց դրանք վերացնելու հա-
մար: Նա հիմնական ուշադրությունը նվիրեց կազմակերպական կողմին. սահ-
մանեց խնամքի ու կթի հաստատուն ռեժիմ, կարգ ու կանոն մտցրեց ամեն-
ուրեք, կարգավորեց կաթի հաշվառումը:

Այժմ ֆերմայի յուրաքանչյուր աշխատող իր տեղում է, գիտի իր անե-
լիքները: Գ. Մկրտչյանը մի խումբ անասնապահների հետ եղավ հարևան Մ.
Պարնիի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայում և ուսումնասիրեց
նրա մարդկանց առաջավոր փորձը: Ֆերմայի վարիչի հետևողականության
շնորհիվ սկսեց գործել զոոխմբակը, որտեղ ընդգրկված են 25—30 կթվոր-
անասնապահներ: Այժմ ֆերմայում նորմալ պայմաններ են ստեղծվել անաս-
նապահների աշխատանքի համար, նրանց կենսգործվում են նյութական խրա-
խուսանքի նպատակով սահմանված միջոցառումները: Նախորդ տարվա հա-
մեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացել է մեկուկես անգամ, 100
կովիցստացվել է համեմատաբար ավելի շատ հորթ և, ամենակարևորը, ամ-
րապնդվել է աշխատանքային կարգապահությունը:

Նման ձևով են վարվել նաև Գոգարանի, Սարալի, Լեռնավանի, ծաղկա-
բերի կոլտնտեսային, շաքարի գործարանի, կենցաղսպասարկման կոմբինա-
տի, ավտոգրասենյակի և շինարարական սկզբնական կուսկազմակերպություն-
ները: Ետ մնացող տեղամասերում գործերի վիճակը կարգավորելու նպատա-
կով՝ նրանք այնտեղ աշխատանքի են ուղարկել այնպիսի կոմունիստների,
որոնք դրսևորել են գործերի խորիմացություն, պատասխանատվության բարձր
զգացում և անձնական ակտիվություն, արդարացրել կուսակցության վստա-
հությունը:

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն անհրաժեշտ պա-
հանջկոտություն և հետևողականություն են հանդես բերում, որպեսզի կոմու-
նիստի ակտիվությունն ապահովվի ո՛չ միայն արտադրական պլանների կա-
տարման գործում, այլև մեր կյանքի հասարակական, քաղաքական գործու-
նեության բոլոր բնագավառներում: Կուսշրջկոմին վերջին տարիներս շատ էր
անհանգստացնում շրջանի ազգաբնակչության բուժսպասարկման անբավա-
րար վիճակը: Շրջկոմի բյուրոյում այդ հարցի քննարկման ժամանակ արձա-
նագրվեցին աղաղակող թերություններ: Պատճառը ղեկավարության թուլու-
թյունն էր, կոմունիստ բուժաշխատողների ցածր պատասխանատվությունը
հանձնարարված գործի նկատմամբ: Բուժմիավորման ղեկավարությունն ուժե-
ղացնելու և կուսկազմակերպությանը գործնական օգնություն ցույց տալու



շնորհիվ արդեն այնտեղ բոլորովին այլ է գործերի վիճակը: Առողջապահու-
թյան բնագավառի կոմունիստներն այժմ իրենց ավելի պատասխանատու են
զգում գործերի վիճակի համար, ակտիվ մասնակցում առաջադրված խնդիր-
ների լուծմանը: Կոլեկտիվի մնացած անդամները հետևում են նրանց օրի-
նակին:

Դրությունը բարվոք չէր նաև բնակչության կենցաղային սպասարկման
ասպարեզում: Այստեղ տևականորեն ձախողվում էր պլանների կատարումը,
ցածր էր սպասարկման մակարդակը: Կուսշրջկոմն այդ հարցը ես ուսումնա-
սիրեց ու քննարկեց բյուրոյի նիստում: Այստեղ խոսվեց ո՛չ միայն կենցաղ-
սպասարկման կոմբինատի ղեկավարների և կուսկազմակերպության թերու-
թյունների, այլև սովետական ու տնտեսական կազմակերպությունների աջակ-
ցության անհրաժեշտության, կենցաղային սպասարկման գործում նրանց որո-
շակի անելիքների մասին: Առանձնապես ընդգծվեց կենցաղային սպասարկ-
ման բարելավման գործում կոմունիստ ղեկավարների ակտիվության ապա-
հովման հարցը: Ճիշտ է, հաջողությունները դեռևս շոշափելի չեն, բայց առա-
ջին լուրջ քայլերն արվել են՝ նախկինում ստեղծված իրավիճակը վերացնելու
և սպասարկման գործը բարելավելու ճանապարհին:

Ընկ. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում ընդգծեց. կոմունիստների
գաղափարական կոփումը մեր կուսակցական շարքերի մարտունակության
բարձրացման անհրաժեշտ պայմանն է: Այդ ասպարեզում ևս հարկավոր է
բարձրացնել կոմունիստի ակտիվությունը: Պրոպագանդիստական կադրերից,
ագիտատորներից ու քաղինֆորմատորներից պահանջվում է մասսաների շըր-
ջանում ծավալել գաղափարական-քաղաքական արդյունավետ գործունեու-
թյուն, մշտապես զբաղվել նրանց աշխարհայացքի ձևավորմամբ:

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները հսկայական քաղաքական ու
աշխատանքային խանդավառություն են առաջ բերել շրջանում: Ոգևորվելով
վելով ձեռք բերած հաջողություններով՝ այժմ գործարար սոցիալիստական
մրցություն է ծավալվել կուսակցության նշած նոր բնագծերը նվաճելու հա-
մար: Ընդհանուր ֆոնի վրա ցայտուն երևում է կոմունիստների անձնվեր աշ-
խատանքը: Նրանք իրենց ակտիվությամբ անում են ամեն ինչ՝ շրջանի առջև
դրված խնդիրներն անթերի լուծելու համար:

Մեր խնդիրն է, զարգացնելով կոմունիստների ակտիվությունը, բարձրաց-
նել նրանց պատասխանատվությունը ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պա-
հանջների կատարման համար, խրախուսել առաջավորներին, բայց միաժա-
մանակ խստիվ պատասխանատվության ենթարկել նրանց, ովքեր իրենց
արարքներով արատավորում են կուսակցության անդամի բարձր կոչումը,
խախտում կուսակցական ու պետական կարգապահությունը:

Ս. Մ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

ՀԿԿ Սպիտակի շրջկոմի առաջին քարտուղար

# ԷՋԵՐ ԸՆԴՀԱՏՎԱԾ ԿՅԱՆՔԻՑ

Վայոց ձորից ճամփան սկսեց ոլոր-մոլոր բարձրանալ վեր՝ դեպի լեռները։ Մեր առջև շարունակ բացվում էին նոր տեսարաններ, մեկը մյուսից հետաքրքրական ու գեղեցիկ։

Լեռան կեռմաններից մեկում անսպասելիորեն հայտնվեց բեռնատար ավտոմեքենաների մի խումբ՝ բեռնված հսկայական ինչ-որ մեքենայով։ Մոտեցանք ավտոքարավանի շուրջը մտահոգ կանգնած մարդկանց։

— Ի՞նչ է պատահել։

— Կեռմանը չի հերիքում, որ անցնենք։

— Իսկ ի՞նչ է այս հսկան,— հարցրի՝ ակնարկելով ավտոքարավանի անսովոր բեռը։

— Տրանսֆորմատոր։

— Ո՞ւր եք տանում։

— Երևան՝ նորոգելու։

— Մի՞թե ավելի լավ չէր լինի, եթե նորոգողներն իրենք գային ձեզ մոտ...

— Չէ՛։ Հնարավոր չի։ Սրա համար հատուկ գործարան կա։

— Ո՞րն է։

— Հայէներգանորոգում։ Ալյումինի գործարանի մոտ։

Ոչ մի կերպ չէի կարողանում հաշտվել այն մտքին, թե տեղում հնարավոր չէ կազմակերպել տրանսֆորմատորի նորոգումը և, այնուամենայնիվ, ասացի.

— Ախր, ինչի՞ նման է, այս հսկայական բեռը Ջերմուկից քարշ եք տալիս Երևան, այնտեղից նորից նույն դժվարությամբ ետ եք տանելու...

— Ջերմուկն ի՞նչ է, ո՜ր... Դու Մինգեչաուրից, Վրաստանից ասա։ Եվ սրանից ավելի մեծ տրանսֆորմատորներ են բերում... Այդպես է, սրանց նորոգումը հնարավոր է միայն գործարանում։

— Պատկերացնո՞ւմ ես,— ասացի ընկերոջս, բայց լսելի նաև վարորդի համար,— ի՞նչ կլինի, եթե հանկարծ գործարանում անհոգի լինեն և չնորոգեն այնպես, ինչպես պետքն է... Նշանակում է՝ փոխադրման այս ահռելի գործը պիտի նորից կրկնվի։

— Չէ՛, չէ՜։ Այդպիսի բան չի եղել ու չի՛ լինի։ Այնտեղ՝ գործարանում, կարգին մարդիկ են աշխատում։ Նրանց դիրեկտորը գործը սիրող, խստապահանջ մարդ է։ Եվ հետո՝ կուսակցակա՜ն մարդիկ են նորոգողները։

Նա վերջին նախադասությունն արտասանեց այնպիսի անառարկելի տոնով և այնպիսի շեշտվածությամբ, որ այլևս կասկածելու տեղ չմնաց։

Ահա այսպես, Երևանից շատ ու շատ հեռու, բոլորովին անծանոթ մի մարդ՝ ավտոքարավանի երիտասարդ վարորդը, տվեց իր անկողմնակալ գնահատականը Հայէներգանորոգում գործարանի կոմունիստների լավ աշխատանքի մասին։

Բարի գործի համբավը հեռուներն է հասնում։

Ե՛կ, հարգելի ընթերցող, միասին այցելենք Հայէներգանորոգում գործարան, նրա աշխատողների լավ գործերին ծանոթանանք տեղում ու, թե սրտներիս մոտ կլինի՝ ձգտենք նմանվել նրանց։

### ՀԵՔԻԱԹԱՅԻՆ ԱՅԳԻ

Ճանապարհը դեպի գործարան անցնում է թավուտ պուրակի միջով։ Անծանոթ մարդը նախ շփոթվում է. հավանաբար սխալվել է, չէ՛ որ սա արդեն իսկական զբոսայգի է։ Սակայն եթե շարունակես քայլել պուրակի շավիղով, քո առջև կհայտնվի տուֆակերտ մի շենք՝ նման կուլտուրայի պալատի։ Ու եթե բացակայի ցուցանակը «Հայէներգանորոգում գործարան», շփոթությունը կատարյալ կլինի։ Գործարանի մասին մեր ունեցած պատկերացումների հետ ոչ մի կապ չունի այդ շինությունը։

Լայն դարբասով մտնում ենք բակ և... դարձյալ շփոթություն։

Չլինի՞ թե սա բուսաբանական այգու մասնաճյուղն է։ Իսկական կախարդական մի անկյուն, ուր կա ամեն ինչ՝ խոնարհված ուռենիներ, սաղարթախիտ ծառեր, բուրումնավետ վարդերի բազմաթիվ տեսակներ, մեխակներ, գլադիոլուսներ, շատ ու շատ այլ ծաղիկներ... Փոքրիկ շատրվանից ջրի ցողը նստում է ծաղիկների նուրբ թերթիկների վրա, իսկ ծառերով ու թփերով ասես քողարկված ջրավազանում ծփում է զուլալ ջուրը։

Ճաշակով ձևավորված ճեմուղիները քեզ կըտանեն տաղավարից տաղավար։ Թարմ, բուրումնավետ օդը լցվել է ամբողջ այգին։ Իսկ տաղավարներում իրենց ընդմիջումն են անցկացնում գործարանի աշխատողները։

Զրուցելով քեռի Ռուբենի հետ, մենք քայլում էինք փարթամ թփերի մոտով։ Հանկարծ անսպասելիորեն մեր առջև հայտնվեց հսկայական մի ջերմոց, որին կնախանձեին շատ կոլտնտեսություններ։ Տարին բոլոր այստեղ հասունանում են պոմիդորը, վարունգը, այլ կուլտուրաներ։ Ստացված հարուստ մթերքն առաքվում է գործարանի ճաշարան, ու բանվորներն ամառ թե ձմեռ իրենց ճաշասեղանների վրա թարմ բանջարեղեն ու կանաչ համեմունքներ են ունենում։

Գործարանի արտադրամասերում աճեցվում են մերձարևադարձային բույսեր, ծաղիկներ։ Ամենուրեք աչք շոյող կանաչ է, օրինակելի մաքրություն։

Իսկ համերգասրա՜հը։ Սա արդեն, իսկապես, նախանձելու բան է։ Ճեմասրահում՝ ամեն մի հարմարություն. ժամանակակից բար-կաֆե, պատերին՝ պղնձակոփ զարդեր, դռներին՝ դըրվագված մետաղ...

— Բոլորը-բոլո՜րը մեր գործարանի վարպետների ձեռքի գործն է։

Հոյակապ դահլիճում կախված են ժամանակակից գողտրիկ ջահեր։

— Սրանք նույնպես մեր տղաներն են պատրաստել...

Մարդ մնում է հիացած. մի ոչ մեծ գործարան կարող է ունենալ հրա՜շք այգի, շատրըվաննե՜ր, ջրավազա՜ն, ջերմո՜ց, անվճար վարսավիրանոց, նախանձելի մաքրությամբ ճաշարան և այսպիսի հոյակապ մի սրահ՝ համերգների ու հասարակական այլ միջոցառումների համար։

Եվ այս բոլորը բանվորների համար, գործարանի ամեն մի աշխատողի համար։

Կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Կոստանդին Փիրումյանը հպարտանում է, թե այս ամենն իրենց բանվորների ձեռքի գործն է։ Բանվորներին թե հարցնես, կասեն՝ սա մեր գործարանի դիրեկտորի նախաձեռնությունն է։ Դիրեկտոր Վլադիմիր Մարգարյանը համեստությամբ այս ամենը վերագրում է գործարանի հասարակական կազմակերպություններին և, ամենից առաջ՝ կուսբյուրոյին ու նրա քարտուղարին։

### ԿՈՒՍԲՅՈՒՐՈՅԻ ՔԱՐՏՈՒՂԱՐԸ

Իսկ ո՞վ է Հայէներգանորոգում գործարանի սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարը։ Քիչ առաջ առիթ ունեցանք իմանալու նրա անունը՝ Կոստանդին Սարգսի Փիրումյան։

Մենք այժմ կծանոթանանք նրա հետ։

Գործարանի դահլիճում կուսկազմակերպության դոնբաց ժողով է։ Ամբիոնի մոտ կանգնած խոսում է արդեն սպիտակահեր, տարիքն առած, բարի դիմագծերով, միջահասակից բարձըր, առողջ կազմվածքով մի մարդ։ Հենց որ ուզում է նայել թղթին, նա ակնոցը դնում է աչքերին, իսկ երբ սկսում է խոսել՝ ակնոցը հանում է։ Այդ մարդը Կոստանդին Փիրումյանն է՝ Հայէներգանորոգում գործարանի կուսկազմակերպության բյուրոյի առաջին քարտուղարը։ Նա զեկուցում է ընդունելության հարցի վերաբերյալ, ժողովականներին ներկայացնում մեխանիկական արտադրամասի փականագործ Հենրիկ Ումրոյանին, որը դիմում էր տվել կուսակցության շարքերը՝ անդամության թեկնածու ընդունվելու համար։

Հենրիկին կանչեցին նախագահության սեղանի մոտ։ Նա եկավ, կանգնեց, ձեռքով հենվեց սեղանին։ Սակայն մատները դողում էին։ Ձեռքը հեռացրեց սեղանից ու հետո չգիտեր, թե ի՞նչ է անելու դողացող ձեռքի հետ... Ախր, նա իր օրում միանգամից այդքան մարդու ներկայությամբ առիթ չի ունեցել պատասխանելու անսպասելի հարցերի։ Գոնե քիչ մարդ լիներ։ Հենց միայն կոմունիստները մոտ հարյուր հոգի են։ Մի այդքան էլ անկուսակցական աշխատողներ են հավաքվել, ներկա են գործարանի բոլոր ղեկավարները...

— Մի՛ հուզվիր, Հենրիկ, այստեղ բոլորը քո ընկերներն են,— շշուկով հուսադրեց Փիրումյանը։

Ժողովի նախագահը, դիմելով ներկաներին, հարցրեց.

— Կարիք կա՞, որ ընկեր Ումրոյանը պատմի իր կենսագրությունը։

Առաջին շարքերից մեկը բարձրաձայն ասաց.

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆԴԵՐՔԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ


Հ. Գ. ՄԱՂԱՔՅԱՆ

ԳԱ ԳԵՄ բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար, Հայկ. ՍՍՀ գիտության ու տեխնիկայի վաստակավոր գործիչ, պրոֆեսոր


Սովետական Միությունում ՀՍՍՀ-ն իր տերիտորիայով ամենափոքրն է (ընդամենը 30 հազ. քառ. կմ է, բնակչությունը՝ 2,5 մլն մարդ), սակայն երկրաբանական լավ ուսումնասիրման ու ընդերքի հարստության շնորհիվ նրա դերը լեռնահանքային մի շարք նյութերի արդյունահանման գործում համեմատաբար մեծ է։ Բավական է նշել, որ ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող մետաղների— երկաթի, պղնձի, մոլիբդենի, ոսկու, ալյումինի հումքային պաշարներով Հայաստանը գրավում է առաջատար տեղերից մեկը Միության հանրապետությունների շարքում։ Համամիութենական նշանակություն ունեն նաև որոշ ոչ մետաղային օգտակար հանածոների՝ տուֆի, պեմզայի, բազալտի, պեռլիտի, դիատոմիտի, բենտոնիտի, մարմարի, դոլոմիտի, հրակայուն նյութերի, քարաղի պաշարները։

Մետաղային և ոչ մետաղային օգտակար հանածոների հանքավայրերով արտակարգ հարուստ լինելը մեր հանրապետության երկրաբանական բարդ կառուցվածքի առանձնահատկությունների արգասիք է։

Հիրավի, շատ փոքր տարածության վրա (որն ավելի ընդարձակ Հայկական լեռնաշխարհի մի մասն է) զարգացած են հնագույն մինչքեմբրից և ստորին պալեոզոյից մինչև ժամանակակից հասակի երկրաբանական բոլոր առաջացումները. լայնորեն տարածվել են հին հրաբուխների գործունեության նյութերը՝ պորֆիրիտները, որոնք հարյուր միլիոնից ավելի տարիք ունեն։ Զարգացած են նաև հին նստվածքները, որոնք վերափոխված են թերթաքարերի, ավազաքարերի, կոնգլոմերատների, կրաքարերի և մարմարների։ Այդ հին ապարների վրա տեղադրված է երիտասարդ, չորրորդական հասակի (մինչև 300 մ) հզոր լավաների ու տուֆերի ծածկոցը, կապված նորերս հանգած հրաբուխների հետ, որոնց ժայթքումները, հավանաբար, դիտել են այդ շրջանների հնագույն բնակիչները։



Մեր լեռնաշխարհի ժամանակակից ռելիեֆը, իրեն հատուկ հրաբխային կոներով ու լավաների ծածկոցները սղոցած նեղ ու խոր գետահովիտներով, վկայում է հրաբխային գործունեության խոշոր դերի մասին. հրաբուխները գործել են բոլորովին նորերս և ուղեկցվել հալոցքի արտավիժումով՝ դեպի երկրի մակերեսը։

Երկրի կեղևի խորքային մասերի հալման երևույթը հաստատվում է գրանիտոիդային նյութի առկայությամբ վերին հորիզոններում, որտեղ այն բյուրեղանում է՝ գրանիտի, սիենիտի կամ խորքային այլ ապարների զանգվածների ձևով։ Մակերեսում այժմ մերկացող զանգվածները գրավում են մի քանի տասնյակ քառ. կմ տարածություն (Կողբ, Ծավ, Փամբակի խումբը, Ծամշադինի խումբը, Գեխի և այլն), իսկ ամենամեծ ելքը Հայաստանի հարավում Մեղրիի զանգվածն է, որն ունի մոտ 1000 քառ. կմ մակերես։ Առավել խորքային երևույթների արտացոլում է ուլտրահիմքային կազմության հալոցքի ներդրումը Սևանի գերխորքային խախտման ուղղությամբ. այստեղ ձևավորվում են դունիտի և պերիդոտիտի զանգվածները։ Հրաբուխների ժայթքման ժամանակ մակերես արտավիժված կամ խորքում սառած ու բյուրեղացած հալոցքների հետ սերտորեն կապված են Հայաստանի մետաղային և ոչ մետաղային համարյա բոլոր օգտակար հանածոները։ Հրաբխային գործունեության անմիջական արգասիք են տուֆի, պեմզայի, բազալտի, պեռլիտի բոլոր հանքավայրերը, իսկ անուղղակի՝ դիատոմիտի և բենտոնիտի կուտակումները։

Խորքային հալոցքների՝ գրանիտոիդների, ալկալային և ուլտրահիմքային ապարների հետ կապված են մետաղային հանածոների բոլոր հիմնական հանքավայրերը և հրակայուն հումքի (դունիտի) կուտակումները։ Այստեղ պետք է նշել, որ հալոցքում ցրված մետաղները, դրա դանդաղ սառեցման ու բյուրեղացման հետևանքով, մասամբ անջատվում և կուտակվում են հալոցքում (քրոմիտ, տիտանոմագնետիտ, պլատինի խմբի մետաղներ), մասամբ գերտաքացած ջրա-գազային լուծույթների միջոցով դուրս են բերվում վերին հորիզոններ. այստեղ մետաղները նստում են ապարների ճեղքերում ու դատարկություններում, առաջացնելով պղնձի, պղինձ-մոլիբդենային, բազմամետաղ, ոսկի-սուլֆիդային և այլ հանքավայրեր։ Հայաստանի պայմաններում հատկապես մեծ նշանակություն է ունեցել այդ պրոցեսը. համարյա բոլոր խոշոր մետաղային հանքավայրերն առաջացել են այդպես և պատկանում են, այսպես կոչված՝ հիդրոթերմալ տիպին։

Համեմատաբար ավելի փոքր նշանակություն են ունեցել Հայաստանում նստվածքների առաջացման երևույթները. ծովային և լագունային ավազաններում կուտակվել են կրաքարերի, դոլոմիտների ու քարաղի հանքավայրերը և հրաբխային գործունեության հետ կապված այդ ավազաններում առաջացել են մանգանային ու երկաթ-մանգանային ոչ մեծ էքսգալյացիոն-նստվածքային հանքավայրեր։

Առանձին, երբեմն արդյունաբերական տեսակետից հետաքրքրական հանքավայրերը տաք հանքային ջրերից են առաջացել (Արարատ հանքավայրի տրավերտինները)։ Հանքային աղբյուրները, որոնց թիվը Հայաստանում անցնում է 300-ից, նույնպես մեծարժեք են և օգտագործվում են բուժիչ նպատակներով (Արզնի, Ջերմուկ, Հանքավան, Դիլիջան, Լիճք, Տաթև և այլն)։

Առանց չափազանցության կարելի է նշել, որ հանքային հարստություններ և լեռնային արդյունաբերության զարգացման մակարդակը երկրի հա-

րըստության ու տնտեսական անկախության չափանիշն են. այդ վերաբերում է, հատկապես Սովետական Հայաստանին, ուր ցանքատարածությունները սահմանափակ են, հետևապես գյուղատնտեսությունն ի վիճակի չէ լրիվ բավարարելու արագ աճող բնակչության պահանջմունքները:

Անհրաժեշտ է նշել, որ լեռնագործությունն ու մետաղագործությունը հնագույն ժամանակներից ավանդական զբաղմունք են եղել Հայկական լեռնաշխարհի բնակիչների՝ խեթերի ու հայասների, խուրիների և սուբարների, արմենների և ուրարտների համար: Հնագետների (Բ. Ն. Առաքելյան և ուրիշներ) տվյալներով Հայկական լեռնաշխարհի սահմաններում հայտնաբերված են պալեոլիթի կուլտուրայի (Հրազդան գետի ավազան, Արթիկ, Նոյեմբերյան, Դարս) ու նեանդերտալյան մարդու (Վանիձորի քարայր) մնացորդներ. դրանք վկայում են, որ 600—800 հազար տարի առաջ այստեղ է երևան եկել նախնադարյան մարդը:

Մի շարք տեղերում պեղումներով հաստատված են հին կուլտուրայի շերտեր, սկսած ստորին պալեոլիթից մինչև մեզոլիթ, նեոլիթ, էնեոլիթ, բրոնզի և երկաթի դար: Այդ շերտերի ստորին մասերում գտնվել են գործիքներ ու զենք, օբսիդիանից պատրաստված նետերի ծայրակալներ, մանգաղի ներդրակներ, դանակներ, կայծքարից, յաշմայից, բազալտից կացիններ, հավանգներ, երկանքներ, գինու և գարեջրի կամ քնջութի յուղի տակառներ:

Կան տվյալներ, որ օբսիդիանը IV—III հազարամյակներում (մ. թ. ա.) արտահանվում էր Հարավային Ռուսաստան, Եգիպտոս, Միջագետք: Կիկլոպյան ամրոցների ու տաճարների շինարարության մեջ լայնորեն օգտագործվել են բազալտի բլոկներ, իսկ քարե սալերի վրա փորագրվել են արձանագրություններ ու նկարներ, որոնք արտահայտում են հնագույն մարդու պատկերացումները շրջապատող բնության մասին (Գեղամա լեռները): Մի փոքր ավելի ուշ մարդը քարից քանդակում է, այսպես կոչված՝ վիշապներ, ձկների արձաններ, որոնք մարմնավորում են ջրի ու արգավանդության պաշտամունքը, իսկ քրիստոնեություն ընդունելուց հետո, հատկապես IX—XVIII դարերում, տասնյակ հազարներով խաչքարեր են քանդակում: Նույն ժամանակաշրջանից (IV—III հազարամյակներում մ. թ. ա.), ինչպես վկայում են հնէաբանական պեղումները և լեռնային գործունեության ու հալոցքի մնացորդները, սկսվում է պղնձի ու բրոնզի (նաև արույրի) ձուլումը, իսկ ավելի ուշ՝ (II հազարամյակի կեսերից մ. թ. ա.)՝ Հայաստանի լեռներում սկսվում են երկաթի հանքանյութերի մշակումն ու ձուլումը:

Այդ հնագույն ժամանակաշրջանի մասին հետաքրքրական տվյալներ է բերում Ս. Կ. Դիկշիտը (С. К. Дикшит. Введение в археологию, 1960) «Եգիպտացիները, անկասկած, պղնձի մշակման հմտությունը ձեռք են բերել Միջագետքից՝ Սիրիայի վրայով, հավանաբար արմենոիդային ռասայի ներկայացուցիչներից, որոնք հայտնվել են Ներքին Եգիպտոսում մինչդինաստիական ժամանակաշրջանից շատ ավելի վաղ»: Նույն գրքում նշված է, որ «երկաթի ձուլման արդյունավետ եղանակը, որը մեծ չափով կանխեց նրա լայն տարածումը, ստեղծել են Հայկական լեռնաշխարհի ցեղերը»:

Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան մասում (Փոքր Հայքում) ձուլվում էր շատ բարձրորակ երկաթ. «Միայն այդ երկաթն է, որ չի ժանգոտում», դեռևս IV դարում (մ. թ. ա.) գրել է Արիստոտելը: Ասորական թագավոր Սարգոն II-ի տարեգրություններում, որը 714 թ. (մ. թ. ա.) ջախջախեց



ուրարտական զորքերը, գրավեց ու թալանեց Մուսասիր քաղաքի պալատները) նշվում է, որ այստեղից փոխադրվել է 2 տոննայից ավելի ոսկի, տասը տոննա արծաթ և մի քանի հարյուր տոննա պղինձ ու բրոնզ:

Սովետական Հայաստանի տերիտորիայում հնագույն (մ. թ. ա. III հազարամյակի սկիզբը) լեռնա-մետաղագործական կենտրոնի՝ Մեծամորի հայտնաբերումը (Երևանից 20 կմ դեպի հյուսիս-արևմուտք), ոսկու հնագույն մշակումները Զոդում և Մեղրաձորում (III—II հազարամյակներ մ. թ. ա.), ինչպես նաև պղնձի մշակման հետքերը Զանգեզուրում, Լոռիում, Միսխանայում, երկաթի մշակման հետքերը Կողբում, Հաղարծնում, Հրազդանում և այլուր անկասկած վկայում են հնագույն մետաղագործության լայն զարգացման և պղնձի, բրոնզի, արույրի, երկաթի, կապարի, արծաթի, ոսկու մշակման ու ձուլման մասին:

Չնայած հայ ժողովրդի ճակատագրի անակնկալներին, թշնամական հորդաների բազում ներխուժումներին ու ավերումներին, այնուամենայնիվ, լեռնագործության ու մետաղաձուլման հնագույն կուլտուրան անցնում էր սերնդից սերունդ և որոշ չափով պահպանվեց մինչև XVIII—XIX դարերը:

Սակայն, առաջին համաշխարհային պատերազմի սկզբին Հայաստանի բազմազան օգտակար հանածոներից մշակվում էին միայն Ալավերդու և Ղափանի պղնձահանքերը և տեղական կարիքների համար, փոքր քանակությամբ, բաց եղանակով արդյունահանվում էին տուֆ, բազալտ, մարմար: 1920 թ. պղնձի հանքերն ու գործարանը քանդված էին, ձեռնարկատերերն իրենց հետ տարել էին տեխնիկական փաստարկումը, իսկ Ալավերդու և Ղափանի հանքավայրերի պաշարները համարվում էին սպառված:

1923—1924 թթ. վերականգնվեց Ալավերդու պղնձաձուլական գործարանը, իսկ Ալավերդու խմբի հանքավայրերում, երկրաբան Հ. Տ. Կարապետյանի նախաձեռնությամբ, սկսվեցին հետախուզական աշխատանքներ, որոնք պսակվեցին դրական արդյունքով, հատկապես՝ Շամլուղի հանքավայրում:

1923 թ. կազմակերպվում է ժողովրդական տնտեսության բարձրագույն խորհրդի (ВСНХ) լեռնային բաժինը, որի հրավերով Մոսկվայից ու Լենինգրադից Հայաստան՝ երկրաբանական ուսումնասիրությունների են գալիս խոշոր երկրաբաններ՝ Ֆ. Յու. Լևինսոն-Լեսինգը, Կ. Ն. Պաֆենգոլցը, Վ. Գ. Գրուշևոյը, Վ. Ն. Կոտլյարը, Ի. Վ. Բարկանովը և ուրիշներ. հայ երկրաբաններից այդ ժամանակաշրջանում աշխատել են Հ. Տ. Կարապետյանը, Տ. Ա. Ջրբաշյանը, Հ. Ս. Ստեփանյանը: 1931 թ. Անդրկովկասյան երկրաբանական տրեստին կից ստեղծվում է հայկական երկրաբանական բազա, իսկ 1938 թ.՝ հայկական երկրաբանական վարչությունը:

Երկրաբանական ուսումնասիրություններին անհրաժեշտ էր գիտական հիմք. այդ կապակցությամբ 1935 թ. ստեղծվում է երկրաբանական գիտությունների ինստիտուտը (ԵԳԻ), որը 1936 թ. հանձնվում է Սովետական Միության գիտությունների ակադեմիայի հայկական ֆիլիալին, իսկ 1943 թ. մտնում է Հայկական հանրապետության գիտությունների ակադեմիայի ցանցը:

1934 թ. Երևանի պետական համալսարանում բացվում է աշխարհաերկրաբանական ֆակուլտետ (առաջին դեկանը պրոֆ. Տ. Ա. Ջրբաշյան), որը ձեռնամուխ է լինում երկրաբանների և աշխարհագրագետների կադրերի պատրաստմանը: Վերջապես, 1945 թ. ԵԳԻ-ում ստեղծվում է գեոֆիզիկական բաժին, որի հիման վրա 1962 թ. կազմակերպվում է գեոֆիզիկայի ու ինժեներային սեյսմոլոգիայի ինստիտուտ (ԳԻՍԻ)՝ Լենինականում: Երկրաբանու-

թյան ասպարեզում աշխատող համեմատաբար երիտասարդ կազմակերպություններից են՝ գիտահետազոտական լեռնա-մետաղագործության ինստիտուտը (ԳՀԼՄԻ, ստեղծված 1958 թ.) և գունավոր մետաղագործության մինիստրության արտադրական երկրաբանա-հետախուզական տրեստը (ստեղծված 1965 թ.)։ Մեր հանրապետությունում 1000-ից ավելի մասնագետներից կազմված կոլեկտիվը ծավալել է երկրաբանա-գեոֆիզիկական և աշխարհագրական աշխատանքներ։ ԵԳԻ-ի ԳԻՍԻ-ի, երկրաբանական վարչության, համալսարանի երկրաբանական ֆակուլտետի և մյուս կազմակերպությունների մասնագետները մանրազնին ուսումնասիրում են Հայաստանի երկրաբանական կառուցվածքը և օգտակար հանածոների հանքավայրերի առաջացման պայմաններն ու տեղաբաշխման օրինաչափությունները։ Կազմվում են երկրաբանական և դրանց հիման վրա՝ տեկտոնական, հիդրոերկրաբանական, գեոֆիզիկական, գեոմորֆոլոգիական, կանխատեսումնային մետաղածնային հատուկ քարտեզներ, որոնք ուղղություն են տալիս որոնումներին։

Ավարտվում են տեսական ու ամփոփիչ մի շարք աշխատություններ Հայաստանի երկրաբանության, օգտակար հանածոների վերաբերյալ (Հայաստանի Երկրաբանությունը բազմահատորյակը և այլն), ստեղծված են ուսումնական ձեռնարկներ Միության բուհերի համար (Մետաղային հանքավայրեր, Մետաղածնություն և այլն), որոնք թարգմանվել են մի շարք օտար լեզուներով։ Մշակված է լանջերի խորքային սողքի տեսությունը, կազմված է Հայաստանի ատլասը, ներդրվել են լեռնային ապարների և հանքանյութերի բացարձակ հասակի որոշման մեթոդները։ Հանրապետությունում կատարված երկրաբանական ուսումնասիրությունների համբավը տարածվել է ողջ Միությունում, դրանք հավանության են արժանացել նաև արտասահմանում, դառնալով միջազգային կոնգրեսների, սիմպոզիումների բազում զեկուցումների նյութ։

Կիրառական ասպարեզում կատարված աշխատանքներն զգալիորեն մեծացրին հանրապետության ընդերքի՝ մեզ համար ավանդական մետաղների— պղնձի ու մոլիբդենի պաշարները. հայտնաբերվեցին երկաթի, ալյումինի (կավահող՝ նեֆելինային սիենիտներում), ոսկու նոր, խոշոր հանքավայրեր, ինչպես նաև առայժմ անբավարար ուսումնասիրված ծարիրի, սնդիկի, մանգանի, տիտանի, հազվագյուտ ու ցրված մետաղների կուտակումներով հարուստ հանքատեսակներ։ Հայտնագործվել են ոչ մետաղային օգտակար հանածոներից՝ պեռլիտի, դիատոմիտի, բենտոնիտի, քարաղի խոշոր հանքավայրեր, որոնք արդեն հանձնված են շահագործման։ Երկրաբանների քրտնաջան աշխատանքի արդյունք էր այն, որ տարածությամբ փոքր Հայկական հանրապետությունը մի շարք կարևորագույն օգտակար հանածոների մշակմամբ գրավեց առաջատար տեղերից մեկը Սովետական Միությունում։

Ինչո՞վ է արտակարգ հարուստ Սովետական Հայաստանի ընդերքը։ Մետաղներից պետք է նշել պղինձը, մոլիբդենը, ալյումինը, երկաթը, ոսկին. ոչ մետաղային հումքից՝ տուֆը, պեռլիտը, բազալտը, մարմարը, դոլոմիտը, բենտոնիտը, դիատոմիտը, քարաղը։ Նշված հանքանյութերի պաշարները վիթխարի են, իսկ որոշ օգտակար հանածոներինը՝ նույնիսկ գործնականորեն անսպառ. դրանց նշանակությունը համամիութենական է. անդրադառնանք դրանցից մի քանիսին։

Պղինձը Հայաստանում հնուց հայտնի և լայն տարածված գլխավոր մե-



տաղն է։ Այժմ պղնձի պաշարներով ու ձուլման մակարդակով Հայաստանը գրավում է երրորդ տեղը Սովետական Միությունում (Ուրալից ու Ղազախստանից հետո), իսկ պղնձի հագեցվածության աստիճանով՝ առաջին։ Պղնձի հանքանյութերը ներկայացված են երկու տարբեր տեսակներով՝ հոծ հարուստ պիրիտ-խալկոպիրիտային (Ալավերդու խումբը, Ղափան) և երակիկա-ցանավոր պղինձ-մոլիբդենային (Քաջարան, Ագարակ, Հանքավան, Դաստակերտ և այլն) հանքանյութերով, երկուսն էլ խոշոր պաշարներով։ Նորերս Սևանա լճի ավազանում (Տիգրանաբերդ) հայտնաբերվել է մի նոր, հեռանկարային պղնձաբեր մարզ։

Մոլիբդենը մեզ համար համեմատաբար նոր մետաղ է, որի հանքավայրերը հետախուզվել են հիմնականում Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—1945 թթ.)։ Զանգեզուրի, մասամբ Փամբակի ու Հայոցձորի հանքաբեր մարզերում, մոլիբդենը հանքանյութերում սերտորեն կապված է պղնձի հետ և կազմում է, այսպես կոչված՝ Փամբակ-Զանգեզուրի պղինձ-մոլիբդենային գոտին։

Հետախուզված պաշարներով ու մոլիբդենային կոնցենտրատների արտադրության մակարդակով Սովետական Հայաստանը գրավում է առաջատար տեղը Միությունում։

Ալյումինի ամենատարածված բոքսիտի հանքանյութեր Հայաստանում չկան և Երևանի ալյումինի գործարանը բանում է Ուրալից բերվող հումքի բազայի վրա։ Երկրաբանների մեծ հաջողություններից մեկը պետք է համարել Փամբակի լեռնաշղթայում նեֆելինային սիենիտների հայտնաբերումը, որոնք հարուստ են կավահողով ($Al_2O_3$—22—24 տոկոս) և ունեն գործնականորեն անսպառ, վիթխարի պաշարներ։

Մեր քիմիկոսները (Մ. Գ. Մանվելյան) մշակել են այդ ապարներից կավահողի ստացման մի նոր եղանակ, որի շնորհիվ նույն ապարից կստացվի նաև ցեմենտ, կալիումային պարարտանյութեր, ապակի և բյուրեղապակի, մի շարք ցրված մետաղներ։ Երբ ավարտվի Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի կառուցումը, Երևանի ալյումինի գործարանը կապահովվի տեղական հումքով։

Երկաթը Հայաստանում մշակվել է հնուց. այդ են վկայում լեռնագործության, երկաթաձուլման հետքերը Հրազդանում, Կողբում, Մարցում, Հաղարծընում և շատ այլ վայրերում։ Չնայած դրան, երկար ժամանակ իշխում էր այն կարծիքը, թե Հայաստանը երկաթի հանքանյութերի պաշարներով հեռանկարային չէ։ Որոշ թերահավատներ նույնիսկ պնդում էին՝ Հայաստանում երկաթ չկա և չի կարող լինել։ Այդ կանխատեսումը, սակայն, չարդարացավ։ Երկրաբանների և գեոֆիզիկոսների սերտ համագործակցությամբ և մագնիսամետրիկ որոնմամբ հայտնաբերվեց երկաթի մոտ հիսուն հանքավայր, որոնցից առնվազն երեքը (Հրազդանը, Աբովյանը և Սվարանցը) ունեն հուսալի հեռանկարներ։

Հրազդանի հանքավայրը գտնվում է Հրազդան քաղաքի մոտ, Երևանից 40 կմ դեպի հյուսիս։ Հանքանյութերը մագնետիտային են, պարունակում են մոտ 40 տոկոս երկաթ, ինչպես նաև հազվագյուտ մետաղների արժեքավոր

խառնուրդ, համարյա զուրկ են վնասակար խառնուրդներից։ Հանքավայրի հետախուզված պաշարները կազմում են մոտ 100 մլն տ հանքանյութ. նույնքան են և հեռանկարային պաշարները։ Նախատեսվում է այս հանքավայրի բազայի վրա կազմակերպել հատուկ պողպատների արտադրանք, արագ աճող էլեկտրատեխնիկական արդյունաբերության պահանջները բավարարելու համար։

Աբովյանի (Կապուտանի) հանքավայրը գտնվում է Երևանից ընդամենը 20 կմ հեռավորության վրա, դեպի հյուսիս-արևելք, Հաղխի (Գյաղխ) լեռնալանջին։ Հետաքրքրական է այդ հանքավայրի հայտնաբերման պատմությունը. տեղամասն այստեղ ծածկված է այնպիսի բերվածքներով, որոնց մեջ երկրաբանները դեռ շատ վաղուց գտնում էին երկաթի հանքանյութերի բեկորներ։ Շահագրգռությունն այդ տեղամասի նկատմամբ մեծացավ, երբ ուշադրություն դարձվեց ուժեղ մագնիսական անոմալիայի վրա, որը հետագայում հաստատվեց գեոֆիզիկոսների կողմից։

Միջոցներ ստանալուն և նախնական հետախուզության կազմակերպմանը շատ օգնեց այն ժամանակվա սև մետաղագործության մինիստր, Իվան Թևադորոսի Թևոսյանը։ Այժմ հորատանցքերով հետախուզված ապատիտ-մագնետիտային հանքանյութերի պաշարները երկրաբանական վարչության կողմից գնահատվում են 300 մլն տ և այդքան էլ հեռանկարային պաշարներն են։ Հանքանյութը պարունակում է 15—20, մինչև 50—60 տոկոս երկաթ և 1—2 տոկոս $P_2O_5$ (ապատիտի ձևով, որը մագնիսական զատման միջոցով հեշտությամբ անջատվում է հանքանյութից)։ Այս հանքավայրի բազայի վրա նախատեսվում է կազմակերպել մետաղաձուլական խոշոր գործարան և, միաժամանակ, ապատիտային կոնցենտրատի բազայի վրա, սուպերֆոսֆատային պարարտանյութերի արտադրամաս։

Սվարանցի (Արամազդի) հանքավայրը Գորիսի շրջանում է. առաջացման պայմաններով Կաչկանար տիտանամագնետիտային հանքավայրի (հյուսիսային Ուրալ) նմանակն է այն։ Երկաթի միջին պարունակությունը Սվարանցի հանքանյութերում կազմում է 20—25 տոկոս (Կաչկանարում, որն արդեն մշակվում է՝ 15 տոկոս), սակայն դրանք պարունակում են նաև արժեքավոր խառնուրդներ— տիտան, վանադիում։ Հանքավայրի հեռանկարային պաշարները հասնում են 1 մլրդ տ։ Այստեղ նախատեսվում է կառուցել հարստացուցիչ հզոր գործարան, որը երկաթուղով կկապվի Ղափան քաղաքին (տարածությունը 25 կմ)։ Այսպիսով, հանրապետությունում արդեն հիմք է դրվում սև մետաղագործության։

Հին Հայաստանում ոսկու մշակմանը վերաբերող բազմաթիվ տեղեկություններ կան. դամբարաններում գտնվել են բազմաթիվ ոսկյա իրեր ու դրամներ, որոնք դասվում են III—II հազարամյակներին (մ. թ. ա.). շատ ավազաշերտերում հայտնաբերվել է ոսկի, սակայն, անհասկանալի պատճառներով ոսկու, ինչպես և երկաթի պաշարների նկատմամբ երկար ժամանակ իշխել է թերահավատությունը։

Հայաստանը, ասում էին ոմանք, գտնվել է առևտրական ճանապարհների հանգույցում և այն ոսկին, որը հայտնաբերում են հնագետները, և որի մասին հիշատակվում է հին ձեռագրերում ու սեպագրերում, ներմուծված է, տեղական չէ։ Երկրաբանների մեծ կոլեկտիվի համառ ջանքերով հաջողվեց



ապացուցել, որ ոսկյա իրերն ու դրամները տեղական են, իսկ Հայաստանի տերիտորիան ոսկու հարստությամբ կարող է մրցել այնպիսի ոսկեբեր մարզերի հետ, ինչպիսիք են՝ Միջին և Հարավային Ուրալը, Անդրբայկալը և այլ վայրեր։ Այժմ, բացի ցրոններից, Սովետական Հայաստանում հայտնի են ոսկու 20-ից ավելի արմատական հանքավայրեր։ Առանձնացվում են ոսկի-սուլֆիդային և ոսկի-թելուրիդային հանքավայրերը, որոնք ունեն առաջատար նշանակություն, կան նաև ոսկի-շեելիտային և հոծ սուլֆիդային հանքավայրեր, որոնց նշանակությունն այնքան էլ մեծ չէ։

Հնագույն աշխատանքների հետքերը և աշխատանքային գործիքների ու իրերի մնացորդները հաստատում են, որ ոսկու մի շարք հանքավայրեր (Զոդ, Մեղրաձոր, Համզաչիման և այլն) մշակվել են մ. թ. ա. III—II հազարամյակներից սկսած։ Այդ ժամանակաշրջանի դամբարաններից գտած (Լճաշեն գյուղի մոտ, Սևանի հատակին, որը մերկացել է ջրի իջեցման հետևանքով) ոսկյա իրերի և Սևանա լճի ավազանի արմատական հանքավայրերի ոսկու սպեկտրալ անալիզները ցույց են տալիս նույն տիպիկ խառնուրդները— արծաթ, թելուր, բիսմուտ։

Քանի որ այդ հանքավայրերի (Զոդ և այլ) շահագործման սկիզբը նույնպես համընկնում է ոսկյա իրերի թվագրությանը (III—II հազարամյակ մ. թ. ա.) կարելի է համոզված լինել, որ ոսկու աղբյուրը տեղական է։ Սովորաբար աշխարհում ոսկու արմատական հանքավայրերը մշակում են ոսկու 1—2 գ/տ ոչ պակաս պարունակության դեպքում։ Հայաստանի հանքավայրերը շատ ավելի հարուստ են և միջին հաշվով պարունակում են 10 գ/տ ոսկի, իսկ առանձին տեղամասերում՝ 50-ից մինչև 700 գ/տ։

Ոսկու մի շարք հանքավայրեր (Զոդ, Մեղրաձոր, Համզաչիման, Թեյ-Լիճքվազ) արդեն հետախուզված են ու հանձնվում են շահագործման։ Հայաստանը մոտ ապագայում կսկսի տալ զգալի քանակությամբ ոսկի, և ոսկու արդյունահանմամբ մեր հանրապետությունը համեմատելի կլինի Ուրալի կամ Անդրբայկալի հետ։

Այսպիսով, մետաղներից առնվազն հինգը՝ պղինձը, մոլիբդենը, ալյումինը, երկաթը և ոսկին Սովետական Հայաստանի տերիտորիայում կան խոշոր կուտակումներով, որոնք ունեն համամիութենական նշանակություն։ Հայաստանում հայտնի են նաև համեմատաբար ոչ մեծ կամ թույլ ուսումնասիրված կապար-ցինկի, քրոմիտի, մանգանի, տիտանի, վոլֆրամի, բիսմուտի, սնդիկի ու ծարիրի հանքավայրեր. մեծ նշանակություն ունեն նաև հազվագյուտ ու ցրված մետաղները, որոնք խառնուրդի ձևով հանդիպում են տարբեր կազմի ու տիպի հանքանյութերում և պետք է կորզվեն հիմնական մետաղների հետ մեկտեղ։

Հայաստանը մետաղային օգտակար հանածոների բնական թանգարան է։ Ոչ մետաղային հումքից հանրահայտ են բազմագույն հրաբխային տուֆերը— պատման ու երեսպատման հիանալի նյութ, որը լայնորեն օգտագործվում է շինարարության մեջ։ Մեծ նշանակություն ունեն անդեզիտա-բազալտի, պեմզայի, պեռլիտի, հնուց հայտնի սպիտակ, վարդագույն, մոխրագույն ու սև մարմարի խոշոր հանքավայրերը։ Հայաստանի պեռլիտը և իտալական հայտնի Կառարա մարմարի սպիտակ նմանակը արտահանվում են մի շարք օտար երկրներ ու լայնորեն օգտագործվում տեղում։ Վերջին տասնամյակնե-

րին հետախուզված են հրակայուն ուլտրահիմքային ապարների, բենտոնիտների, դիատոմիտների ու քարաղի շատ խոշոր հանքավայրեր, որոնք արդեն օգտագործվում են արդյունաբերության մեջ։

Անհրաժեշտ է ընդգծել, որ տուֆի, բազալտի, պեռլիտի ու բենտոնիտի հանքատեսակների որակով և գործնականորեն անսպառ պաշարներով, ինչպես և պեմզայի, դիատոմիտի, հրակայուն նյութի և քարաղի վիթխարի պաշարներով Հայաստանը եզակի է։ Այդ բոլոր ոչ մետաղային օգտակար հանածոների նշանակությունը դուրս է գալիս հանրապետության սահմաններից։

Մեծ հռչակ ունեն թվով 300-ից ավելի հանքային աղբյուրները, որոնցից ամենահետաքրքրականն են՝ Արզնիինը, Ջերմուկինը, Հանքավանինը, Դիլիջանինը, Լիճքինը։ Այդ վայրերը ծառայում են որպես առողջարաններ և ջրերի լցման բազա։

Հարկ է նշել, որ Հայաստանի օգտակար հանածոների հանքավայրերը հետազոտող գիտնականներին հաջողվեց հայտնաբերել հանքավայրերի օրինաչափ տեղաբաշխումը մեր հանրապետության հանքային երեք գոտիների սահմաններում. այդ գոտիներն իրարից տարբերվում են երկրաբանական զարգացման պատմությամբ, կառուցվածքով, հրային ապարների կազմով ու հասակով և՝ հանքավայրերի կազմությամբ։ Այդ հանքային գոտիներն են.

1. Ալավերդի-Ղափանի— բնորոշ է պղինձ-պիրիտային խոշոր հանքավայրերով.

2. Փամբակ-Զանգեզուրի— արտակարգ հարուստ է պղինձ-մոլիբդենային հանքանյութերով, պարունակում է նաև բազմամետաղ, երկաթի և ալյումինի հանքանյութեր։

3. Սևան-Ամասիայի— հարուստ է ոսկով, ունի նաև քրոմիտի, ծարիրի ու անդիկի ոչ մեծ հանքավայրեր։

Սովետական Հայաստանի տարածությունն ամբողջովին ներկայացնում է Միջերկրածովյան երիտասարդ ալպիական ծալքավոր ու մետաղածնային գոտու մի փոքր հատվածը և, որպես այդպիսին, ունի այդ գոտուն բնորոշ բոլոր գծերը— հարուստ է պղնձով, ալյումինով, երկաթով, ոսկով։

Նույն բնույթն ունի նաև Խաղաղօվկիանոսյան ծալքավոր ու մետաղածնային, նույնպես ալպիական հասակի գոտին։ Իր զարգացման ու հանքայնացման բնույթով այդ երկու գոտիներին շատ նման է Ուրալը, չնայած վերջինիս հասակը շատ ավելի մեծ է։ Որպես Միջերկրածովյան հանքային գոտու մի մաս, Հայաստանը, այսպիսով, նման է Ուրալին և, իրավամբ, անվանվում է փոքր Ուրալ. և՛ Ուրալը, և՛ Հայաստանը ունեն մետաղների նույնատիպ հանքավայրեր, արտակարգ հարուստ են պղնձի, երկաթի ու ոսկու հանքանյութերով։

Պետք է նշել, որ երկրաբանական զարգացման տեսակետից Ուրալի և Հայաստանի այդ նմանությունը հուշեց մեր երկրաբաններին՝ Հայաստանում, բացի վաղուց հայտնի պղնձից, ուրիշ մետաղներ՝ երկաթ և ոսկի հայտնաբերելու հնարավորությունը, որոնք վաղուց մշակվում են Ուրալում։ Ինչպես այժմ հայտնի է, արդարացվել է գիտական այդ կանխատեսումը, իսկ հանքային երեք գոտիների առանձնացումը, որոնցից յուրաքանչյուրն ունի հանքայնացման ուրույն բնույթ, օգնեց նպատակային դարձնելու մեր որոնումները և հասնելու հաջողությունների։

Մենք, երկրաբաններս, հաճախ նկատում ենք, որ ոմանք երկյուղում են



Հայաստանի հումքային պաշարների արագ սպառումից, կապելով այդ ինտենսիվ արդյունահանման հետ։ Իրավացի է այստեղ այն, որ ի տարբերություն գյուղատնտեսական ցանքերի, որոնք բերք են տալիս ամեն տարի, հանքավայրերն ընդերքում ստեղծված են միայն մեկ անգամ և մեկ անգամ էլ կարող են արդյունահանվել։ Այդ առումով, օգտակար հանածոների պաշարները Հայաստանում, ինչպես նաև այլ երկրներում, անսպառ չեն և դրանք պետք է մշակվեն մտածված, նվազագույն կորուստներով։ Մենք չենք կարող հաշտվել միայն հարուստ հանքանյութերի ընտրովի շահագործման և սոսկ, այսպես կոչված՝ գլխավոր բաղադրամասի կորզման հետ։ Այդ է պատճառը, որ Երկրի մասին գիտությունների բաժանմունքը խնդիր է դրել հանրապետության բոլոր երկրաբանական կազմակերպությունների առաջ՝ մշակել մի շարք առաջնահերթ պրոբլեմներ։

ա) Վերանայել կոնդիցիաները և մշակել տնտեսապես հիմնավորված նոր նվազագույն պարունակություններ, որոնք արդեն ընդունված են մի շարք մարզերում ու երկրներում (Ուրալ, Բուլղարիա, Ճապոնիա, ԱՄՆ և այլն). բաց եղանակով շահագործվող պղնձի հանքանյութի համար՝ 0,3 տոկոս, ոսկու՝ 2—4 գ/տ, երկաթի՝ 15 տոկոս։ Այդ միջոցառումը խիստ կպակասեցնի անվերադարձ կորուստները և մոտ երկու անգամ կավելացնի օգտակար հանածոների ընդհանուր պաշարները։

բ) Պարտադիր դարձնել հանքանյութերի կոմպլեքսային օգտագործումը, անջատելով բոլոր բաղադրամասերը. այդ միջոցառումը կապահովի համեմատաբար աղքատ հանքանյութերի շահագործման արդյունավետությունը։

գ) Հանրապետությունում կազմակերպել մետաղների, ինչպես և ոչ մետաղային հումքի (բենտոնիտ, պեռլիտ, մարմար) վերամշակումը։

Հայաստանի երկրաբանները ջանք չեն խնայում գունավոր ու սև մետաղագործության հզոր հումքային բազայի ստեղծման, ոչ մետաղային հումքի արդյունահանման ու մշակման համար։ Երկրաբանության նվաճումների հուսալի խթանն են գիտության ու տեխնիկայի ժամանակակից զարգացումը, գիտական կանխատեսումը։

# ՏՆՏՀԱՇՎԱՐԿԸ ԵՎ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ


Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու


Գյուղատնտեսական մթերքների արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու և ձեռնարկությունների աշխատանքի բարելավման նկատմամբ աշխատողների նյութական շահագրգռությունը բարձրացնելու նպատակով կուսակցությունն ու կառավարությունը կազմակերպական-տնտեսական միջոցառումների հետ միասին, առանձնահատուկ տեղ են տալիս տնտհաշվարկի ներդրման հարցին:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը կարևորագույն խնդիր են համարում սովխոզները և մյուս պետական գյուղատնտեսական ձեռնարկությունները փոխադրել լրիվ տնտեսական հաշվարկի ու բազմակողմանիորեն զարգացնել ներտնտեսային հաշվարկը կոլտնտեսային արտադրության մեջ:

Տնտհաշվարկը համարվում է տնտեսավարման մեթոդ և անխզելիորեն կապված է ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենքի հետ: Տնտհաշվարկը միտում է տնտեսությունների զարգացման գլխավոր խնդրի՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործմանը, արտադրվող արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, հետևապես արտադրության շահութաբերության մակարդակի բարձրացմանը:

Ինչպես պետական ձեռնարկություններում, այնպես էլ կոլտնտեսություններում, տնտհաշվարկը բաժանվում է՝ ընդհանուր տնտեսական և ներտնտեսային հաշվարկների: Առաջինն ընդգրկում է կոլտնտեսության կամ սովխոզի ու պետության, հիմնարկությունների և այլ ձեռնարկությունների տնտեսական հարաբերությունները, որոշում արտադրության կազմակերպման ու կառավարման հարցերը: Ընդհանուր տնտեսական հաշվարկի առավելություններն ավելի լավ են դրսևորվում ներտնտեսային հաշվարկի կիրառման դեպքում: Ներտնտեսային հաշվարկը որպես ընդհանուր տնտեսական հաշվարկի բաղկացուցիչ մաս, նախատեսում է արտադրամիավորների (բրիգադներ, ֆերմաներ, օղակներ) աշխատանքը կազմակերպել տնտեսական հաշվարկի սկզբունքներով, նպատակ ունենալով կոլտնտեսության արտադրական առաջադրանքների կատարումը:

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ընդգծեց. «Խիստ հրատապ է մնում տնտեսական հաշվարկի սկզբունքների հետևողական արմատավորումն ինչպես արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, այնպես և վերադաս տնտեսական օրգաններում»:



Ինչպես արդյունաբերական, այնպես էլ գյուղատնտեսական ձեռնարկություններում, տնտհաշվարկի նվազագույն պահանջը կատարված ծախսերի փոխհատուցումն է, որի միջոցով իրացվում է սոցիալիստական պարզ վերարտադրությունը: Սակայն տնտհաշվարկը չի սահմանափակվում միայն պարզ վերարտադրության ապահովմամբ, այլ հրամայաբար պահանջում է շահութաբեր աշխատանք, որպեսզի սեփական կուտակումների հաշվին իրականացվի ընդլայնված վերարտադրություն:

Կոլտնտեսությունն իր բնույթով տնտհաշվարկային ձեռնարկություն է, քանի որ այն արտադրությունը վարում է ինքնուրույն, ինքնածախսածածկման սկզբունքով և փոխհարաբերությունների մեջ է մտնում պետության ու զանազան տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների հետ, կազմակերպում արտադրանքի իրացումը և ստացված եկամուտների բաշխումը:

Սովխոզներում (որոնք դեռևս չեն փոխադրվել լրիվ տնտհաշվարկի) ընդլայնված վերարտադրությունն կատարվում է բյուջետային միջոցների հաշվին: Հայտնի է, որ անվճար ֆինանսավորումը սովխոզների և պետության փոխհարաբերության պասսիվ ձև է, որն, ըստ էության, հակասում է տնտհաշվարկի սկզբունքներին:

Սովխոզային արտադրության արդյունավետությունն ու աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1967 թ. ապրիլի 13-ին որոշեցին «Սովխոզները և պետական գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունները լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրել»: Այդ որոշման համաձայն 1967 թ. փորձնական լրիվ տնտհաշվարկի փոխադրվեցին 390 սովխոզ:

ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1968 թ. փետրվարի 14-ին որոշեց երկրի 400 սովխոզներ երկրորդ եռամսյակից փոխադրել լրիվ տնտհաշվարկի: 1968 թ. ապրիլի մեկից լրիվ տնտհաշվարկի են փոխադրվել հանրապետության Հոկտեմբերյանի շրջանի Լենինյան Ուղի և Կալինինոյի շրջանի Կալինինի անվան սովխոզները:

Միութենական կառավարության որոշմամբ 1969 թ. հունվարի մեկից լրիվ տնտհաշվարկի փոխադրվեց ևս 2879 սովխոզ, իսկ հանրապետությունում՝ Հոկտեմբերյանի շրջանի Նաիրի, Մայիսյան, Արաքս, Ձերժինսկու, Խանջյանի անվան, Արարատի շրջանի՝ Արմաշ, Սպանդարյանի, Կիրովի անվան, Էջմիածնի շրջանի՝ № 3, Նոյեմբերյանի շրջանի՝ Հաղթանակ, Ձեյթուն, Լալվար սովխոզները, Հոկտեմբերյանի՝ Լուկաշինի անվան սովխոզ-տեխնիկումը և Լենինականի սելեկցիոն կայանը:

Լրիվ տնտհաշվարկի փոխադրված սովխոզները սեփական միջոցների հաշվին հատուցում են արտադրության բոլոր ծախսերը, ապահովում հետագա ընդլայնված վերարտադրությունը (արտադրական նշանակություն ունեցող կապիտալ ներդրումներ, հիմնական հոտի ստեղծում, սեփական շրջանառու միջոցների աճ և այլն), ստեղծում տնտեսական խթանման և այլ ֆոնդեր, ինչպես նաև ժամանակին հատուցում պետբանկի վարկերը: Լրիվ տնտհաշվարկի փոխադրված սովխոզները պետությանը գյուղատնտեսական մթերքները վաճառում են կոլտնտեսությունների համար սահմանված վաճառքի գներով ու հավելումներով, որոնք զգալիորեն բարձր են ներկայումս գործող հանձնման գներից:

Լրիվ տնտհաշվարկի հիմնական սկզբունքներից մեկը սովխոզների ինքնուրույնության հետագա ընդլայնումն է: Դրա շնորհիվ կրճատվում են վերադաս կազմակերպությունների կողմից հաստատվող պլանային ցուցանիշները, իջեցվում են հետևյալները. արտադրության բնագավառում՝ պետությանը ժողովրդական տնտեսության պլանով նախատեսված արտադրանքի կարևորագույն տեսակների վաճառքի ծավալը՝ բնամթերային արտահայտությամբ, աշխատանքի՝ աշխատավարձի ընդհանուր ֆոնդը, ֆինանսների՝ շահույթի ընդհանուր գումարը, բյուջեից կատարված հատկացումները և գյուղատնտեսական հիմնական արտադրաֆոնդերի դիմաց կատարված վճարումը, կապիտալ ներդրումների՝ կենտրոնացված կապիտալ ներդրումների ընդհանուր ծա-

# ԳԼԽԱՎՈՐԸ ՊԱՀԱՆՋԱՐԿԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆ Է

Ա. Ս. ԹՈՒՄԱՍՅԱՆ

ՍՍՀՄ առևտրի մինիստրության պահանջարկի և առևտրի իրավիճակի ուսումնասիրության ՀԳԻ Հայկական մասնաճյուղի դիրեկտոր, տնտեսագիտության թեկնածու

Մեր երկրում ընթացիկ պահանջարկի ուսումնասիրությունը հիմնականում կատարվում է մեծածախ և մանրածախ առևտրական ձեռնարկություններում ու կազմակերպություններում, որտեղ ստեղծվել է պահանջարկի ուսումնասիրության ծառայությունների լայն ցանց, դրա մեթոդական ղեկավարումը կատարում է ՍՍՀՄ առևտրի մինիստրության, առևտրի իրավիճակի և բնակչության սպառման ապրանքների պահանջարկի ուսումնասիրության համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտը՝ միութենական հանրապետությունների մասնաճյուղերով: Ինստիտուտն առևտրի օղակների համար մշակում է բնակչության պահանջարկի ուսումնասիրության մեթոդիկա, զբաղվում դրա պահանջարկի հեռանկարային կանխորոշման պրոբլեմով, ղեկավարում ու կոորդինացնում է երկրում պահանջարկի ուսումնասիրությամբ զբաղվող գիտական օջախների աշխատանքը:

Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ վերջին համագումարում «Առևտրական կազմակերպությունները շատ դեպքերում պատշաճ գործնականություն չեն ցուցաբերում, դեռևս չեն սովորել ինչպես հարկն է ուսումնասիրել շուկայի պահանջարկը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, էջ 82):

Մեծ ու պատասխանատու խնդիր է դրվում պահանջարկի ուսումնասիրության համամիութենական ինստիտուտի և նրա հանրապետական մասնաճյուղերի վրա՝ իրոք բարձրացնելու պահանջարկի ուսումնասիրության մակարդակը և դրա արդյունավետությունը: Անցյալ հնգամյակում այս նպատակով որոշակի քայլեր են կատարվել:

1969 թվականի առաջին եռամսյակում ավարտվեց իններորդ հնգամյակում Հայաստանի բնակչության սպառման ծավալի ու կազմության փոփոխման սպասվելիք ընթացքին վերաբերող հետազոտությունը, որում մոտավոր ճշտությամբ կանխորոշվել է հանրապետության մանրածախ առևտրի ու սպառման ընդհանուր մակարդակը և դրանց զարգացման հեռանկարները: Այդ աշխատանքը պատշաճ գնահատական է ստացել վերադաս մարմինների կողմից և օգտագործվել՝ հանրապետության պլանավորող օրգանների մշակումներում: Բերենք այդ աշխատանքից մեկ օրինակ:



| Ապրանքների անվանումը | Իրացման ծավալը (հատով) | | | Հարյուր ընտանիքին ընկնում է (հատով) | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1965 թ. | 1970 թ. | 1975 թ. (կանխորոշում) | 1965 թ. | 1970 թ. | 1975 թ. (կանխորոշում) |
| Ռադիոընդունիչներ | 31400 | 39000 | 68000 | 59 | 65 | 78 |
| Հեռուստացույցներ | 23300 | 49000 | 67000 | 31 | 48 | 71 |
| Սառնարաններ | 18500 | 48400 | 49000 | 22 | 59 | 89 |
| Լվացքի մեքենաներ | 17500 | 35500 | 78000 | 29 | 44 | 72 |
| Էլեկտրափոշեծծիչներ | 5900 | 15000 | 37400 | 10 | 16 | 31 |
| Մոտոցիկլետներ, մոտոռոլերներ, մոտոհեծանիվներ և մոպեդներ | 11200 | 18700 | 41500 | 14 | 24 | 38 |
| Կարի մեքենաներ | 12700 | 12500 | 15700 | 43 | 49 | 55 |
| Ժամացույցներ (հազ. հատ.) | 120,5 | 240 | 340 | 2,6* | 3,4 | 4,6 |
| Ֆոտոապարատներ և կինոնկարահանման ապարատներ... | 6400 | 10000 | 33600 | 13 | 18 | 30 |

Բերված տվյալները վկայում են, որ բնակչության դրամական եկամուտների ու նրանց կուլտուր-կենցաղային պահանջմունքների բարձրացմանը համընթաց տարեցտարի ավելանում է տնտեսական ու կուլտուր-կենցաղային ապրանքների իրացման ծավալը: Ընդ սմին, Հայկական ՍՍՀ որոշ ապրանքների սպառումով (ռադիոընդունիչներ, հեռուստացույցներ, սառնարաններ, լվացքի մեքենաներ) գերազանցում է միջին միութենական համապատասխան ցուցանիշը: Իսկ բնակչության մեկ շնչին ընկնող որոշ կարևոր պարենային ապրանքների (մսամթերքներ, ձկնեղեն, ձու, բանջարեղեն և այլն) սպառումով Հայկական ՍՍՀ ետ է մնում միջին միութենական մակարդակից, չնայած միութենական մի շարք հանրապետություններից առաջ է:

Ընթացիկ հնգամյակում զգալի չափով կավելանա բնակչությանը վաճառվող մի շարք պարենային և արդյունաբերական ապրանքների ծավալը: Բերենք մի քանի օրինակներ: Եթե 1970 թ. հանրապետության բնակչությանը պետական ու կոոպերատիվ առևտրի միջոցով վաճառվել է 38730 հազար ռուբլու կաթ, կաթնամթերք (վերածված կաթի) և պանիր (1965 թ. համադրելի գներով), ապա 1975 թ., ինչպես ցույց են տալիս մեր հաշվարկները, կվաճառվի 54300 հազար ռուբլու:

1970 թ. հրուշակեղենի ապրանքաշրջանառությունը կազմել է 45875 հազար ռուբլի, իսկ 1975 թ. այն կհասնի 71500 հազարի: Կամ, եթե բնակչությանը 1970 թ. վաճառվել է 5500 հազար ռուբլու կարտոֆիլ, ապա 1975 թ. կվաճառվի 10500 հազարի, իսկ բոստանա-բանջարային կուլտուրաները 24820 հազարի դիմաց վաճառվելու է 42000 հազար ռուբլու: 1970 թ. գործվածքեղենի ապրանքաշրջանառությունը կազմել է 70210 հազար, իսկ 1975 թ. այն կհասնի 91027 հազար ռուբլու: Հետազոտություններում հաշվարկները կատարվել են նաև բնաիրային ձևով և ըստ տեսակաշարի, ինչպես նաև ցույց է տրված նրանց տեսակարար կշռի դինամիկան ընդհանուր ապրանքաշրջանառության ոլորտում և այլն:

Առևտրի իրավիճակի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության անընդհատ աճը, ինչպես նաև բնակչության եկամուտների ավելացումը պայմանավորում են մեր հանրապետության ապրանքաշրջանառության ծավալման բարձր ու առաջընթաց տեմպերը: Այնուհանդերձ որոշ ապրանքներ լիովին չեն բավարարում բնակչության պահանջարկը:

Պարենային ապրանքների շուկան բնութագրվում է մի շարք ապրանքների նկատմամբ բնակչության կողմից ներկայացվող բարձր պահանջարկով, ինչպես նաև առանձին ապրանքների մատակարարումների և վաճառքի ծավալի նշանակալի ավելացումով: Զգալի չափով ավելացել է մի շարք սննդամթերքների՝ ձվի, կենդանական յուղի, կաթի և կաթնամթերքի, մսի ու ձկան պահածոների, ալյուրի, ձավարեղենի վաճառքը: Սակայն լրիվ չի բավարարվել մսի, բուսական յուղի, թարմ բանջարեղենի, պահածոների, հրուշակեղենի (հատկապես փափուկ կոնֆետների) և այլ պարենների բնակչության

* Մեկ ընտանիքին:

տային ճգնաժամերը հաղթահարել ամերիկյան իմպերիալիզմին ձեռնտու միջոցներով:

Բրետոն-Վուդսի կոնֆերանսի որոշմամբ ստեղծվեց Միջազգային վալյուտային ֆոնդ (ՄՎՖ), որը սկսեց գործել 1946 թ. և որի անդամ երկրների թիվն այժմ հասնում է 118-ի: Այդ կազմակերպության կանոնադրությամբ վալյուտաների պարիտետը (հարաբերությունը ոսկու նկատմամբ կամ արժեքը ոսկով), որոշվում էր ամերիկյան դոլարով և միայն անուղղակի ճանապարհով (դոլարի միջնորդությամբ)՝ ոսկով: Վալյուտաները պետք է փոխանակվեին մեկը մյուսով դոլարի պարիտետին մոտ կուրսով, շեղումներ դեպի մեկ կամ մյուս կողմը թույլատրվում էր մեկ տոկոսի սահմաններում:

Դոլարի պաշտոնական գինը սահմանվել էր դեռևս 1934 թ. հունվարի 31-ին՝ մեկ ունցիա զուտ ոսկին արժեր 35 դոլար: Եվ քանի որ մեկ ունցիան 31,1 գ. է, ապա մեկ դոլարի արժեքը ստացվում է 0,88867088 գ. զուտ ոսկի: Ահա ՄՎՖ անդամ երկրները պարտավորվեցին ոսկին գնել և վաճառել դոլարի համար սահմանված այս գնով: Իսկ Միացյալ Նահանգները դոլարին ընձեռված այս արտոնությունների համար պարտավորվեցին նրանց կառավարությունների տրամադրության տակ եղած և կենտրոնական բանկերում կուտակված դոլարները փոխանակել կայուն գնով՝ վճարելով մեկ ունցիա զուտ ոսկի 35 դոլարի համար:

Որոշակի է, որ ՄՎՖ-ի կանոնադրությունը ոսկուն, դոլարի համեմատությամբ, հատկացնում էր երկրորդական տեղ, թեև ազգային վալյուտաների կապը ոսկու հետ (իհարկե անուղղակի ճանապարհով) պահպանվում էր: Այդ վալյուտաները ժամանակի ընթացքում կկարողանային վերածվել մեկը մյուսին և փոխանակվել դոլարով, իսկ դոլարը՝ ոսկով: ՄՎՖ-ի ստեղծման նպատակն էր՝ կապիտալիստական աշխարհի վալյուտա-ֆինանսական իրավիճակի կայունացումը: Սակայն այդ կազմակերպության գոյության 25 տարիների ընթացքում նրա անդամ-երկրների վալյուտաները ընդհանուր առմամբ արժեզրկվել են ավելի քան հարյուր անգամ: Կապիտալիստական բոլոր վալյուտաները, բացառությամբ շվեյցարական ֆրանկի, այդ ժամանակամիջոցում դոլարի նկատմամբ արժեզրկվել են առնվազն մեկ անգամ: Կապիտալիստական մրցակցության և տնտեսական անհամաչափ զարգացման պայմաններում միջազգային կապիտալիստական վալյուտային նոր սիստեմը պետք է ճեղքվածքներ տար, թեկուզ և այն պատճառով, որ համաշխարհային տնտեսության մեջ Միացյալ Նահանգների տեսակարար կշռի հարաբերական նվազումն ինքնըստինքյան դոլարը զրկելու էր իր մենաշնորհային նշանակությունից: Բրետոն-Վուդսի սիստեմի փլուզման առաջին նշանները ի հայտ եկան 1960 թ., երբ ազատ շուկայում ոսկու գինը հասավ 41 դոլարի (մեկ ունցիայի համար), որը նշանակում էր ամերիկյան վալյուտայի փաստական արժեզրկում ավելի քան 17 տոկոսով: Դրանից երկու տարի անց, Ֆրանսիայի պրեզիդենտ Շառլ դը Գոլն հայտարարեց, որ ամերիկյան դոլարն այլևս անկարող է միջազգային հիմնական ռեզերվային վալյուտայի դերը կատարել, ուստի, անհրաժեշտ է հրաժարվել դրա ծառայությունից և վերադառնալ ոսկու ստանդարտին: Դա նշանակում էր, որ ազգային վալյուտաները պետք է անմիջականորեն առնչվեին ոսկուն, առանց դոլարի միջնորդության:

Միջազգային կապիտալիստական վալյուտային ճգնաժամը հիշեցնում է մշտապես գործող հրաբուխ՝ պարբերական ժայթքումներով. ընդ որում, ամեն մի նոր ժայթքում ավելի ուժեղ է ու ավերիչ, քան նախորդը: Դրա պատճառն այն է, որ ճգնաժամի յուրաքանչյուր պոռթկումից հետո Միացյալ Նահանգներին և մյուս առաջատար կապիտալիստական երկրներին հաջողվում է զանազան միջոցներով առժամանակ հրդեհը մարել: Սակայն հասնելով ժամանակավոր դադարի, նրանք նախապատրաստում են նոր և ավելի ուժեղ ու դժվար հաղթահարելի պոռթկումներ, որովհետև գնալով սպառում են դրանք զսպելու միջոցները:

Այսպես, երբ 1960 թ. դոլարի գինը ընկավ և բռնկեց «ոսկու տենդը» արևմտյան ութ երկրներ ստեղծեցին, այսպես կոչված, «ոսկու պուլը»՝ համապատասխան մուծումներից գոյացած ոսկու յուրատեսակ ֆոնդ, որից նման դեպքերում որոշակի քանակություն շուկա էին նետում՝ ազնիվ մետաղի նկատմամբ եղած պահանջարկը մարելու համար: Սակայն 1968 թ., վալյուտային հերթական ճգնաժամից հետո, որը հանգեցրեց «պուլի» անդամ-երկրների ոսկու պաշարի կրճատման, այդ ֆոնդը վերացվեց: Կապիտալիստական երկրներին չի հաջողվում վերջնականապես կարգավորել վալյուտային շուկան այն պարզ պատճառով, որ նրա գլխավոր զսպանակը՝ ամերիկյան դոլարը, ոչ միայն չի կարողանում կատարել իր կարգավորիչ դերը, այլ, ընդհակառակը, վալյուտային տենդի գլխավոր հարուցիչն է:

## ԴՈԼԱՐԻ ՃԳՆԱԺԱՄԻ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

Կապիտալիստական որևէ երկրի թղթադրամի փաստական արժեքը որոշվում է նրա վճարման հաշվեկշռի վիճակով: Վճարման ակտիվ հաշվեկշռի դեպքում բարձրանում է թղթադրամի գնողունակությունը և ամրապնդվում է դրա նկատմամբ վստահությունը միջազգային ու ներքին շուկայում, պասսիվ հաշվեկշռի դեպքում՝ տեղի է ունենում հակառակ երևույթը:

ՄՎՖ-ի ստեղծումից մինչև 1949 թ. Միացյալ Նահանգների վճարման հաշվեկշիռը ուներ դրական „սալդո: Կորեական պատերազմից հետո՝ ռազմական ծախսերի ավելացման հետևանքով ԱՄՆ-ի առևտրական հաշվեկշիռը դարձավ պասսիվ: Վերջին 20 տարիների ընթացքում միայն երկու տարի Միացյալ Նահանգներին հաջողվել է ծայրը ծայրին հասցնել: 50-ական թվականներին դեֆիցիտը կազմում էր միջին հաշվով տարեկան 1,7 *մլրդ* դոլար: 60-ական թվականներին այն հասավ 2,7 *մլրդ* դոլարի, 1969 թ. կազմեց ռեկորդային գումար՝ 7 *մլրդ* դոլար, իսկ 1970 թ. հաջողվեց այն կրճատել՝ հասցնելով 3,8 *մլրդ* դոլարի: Այսպիսով ԱՄՆ-ի վճարման հաշվեկշռի դեֆիցիտի ընդհանուր գումարը 21 տարիների ընթացքում կազմել է 52 *մլրդ* դոլար:

Ո՞րն է այդ խրոնիկական երևույթի պատճառը: Արդեն նշվեց կորեական պատերազմի և դրա հետ կապված ռազմական ծախսերի աճը: Հետագայում ամերիկյան իմպերիալիզմն ագրեսիվ պատերազմ սկսեց Հարավ-Արևելյան Ասիայում: Ագրեսիան Հնդկաչինում արդեն կլանել է 200 *մլրդ* դոլար: Միացյալ Նահանգներն առասպելական գումարներ է ծախսում ստրատեգիական հումքի պաշարներ գնելու, սպառազինությունների մրցավազքի, օտար երկրներին ցույց տրվող ռազմական օգնության, աշխարհով մեկ սփռված ռազմական բազաները պահպանելու վրա: Դրան պետք է ավելացնել այն, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անցած ժամանակամիջոցում ԱՄՆ-ը յոթ անգամ ավելացրել է իր կապիտալ ներդրումները արտասահմանում և երկրի սահմաններից դուրս արդեն տարեկան 200 *մլրդ* դոլարի ապրանք է արտադրում: Այսպես, առ 1 մայիսի 1971 թ. Լոնդոնի՝ կապիտալիստական աշխարհի այդ հիմնական ֆինանսական կենտրոնի ամերիկյան առևտրական բանկերի դեպոզիտներում կուտակվել էր մոտ 28 *մլրդ* դոլար, որը 5 *մլրդ* դոլարով ավելի է անգլիական դեպոզիտներից:

Դոլարի մեծ պաշարները, որոնք կուտակվել էին արտասահմանում, հատկապես Եվրոպայում, ստեղծել են «եվրոդոլարների» դրամական շուկա: ԳՖՀ-ում դոլարի պաշարը կազմում է 17.359 միլիոն, Ճապոնիայում՝ 12.514 միլիոն: Նախկին «դոլարի քաղցի» փոխարեն այժմ գոյություն ունի ամերիկյան թղթադրամի ավելցուկ, որ կապիտալիստական երկրները չեն կարողանում մարսել, տառապում են դոլարային ճարպակալումից: «Եվրոդոլարների» դրամական շուկան դարձել է փոխառական կապիտալի ռեզերվուար, որից օգտվում են բանկերը, և ֆիրմաները, այդ թվում նաև ԱՄՆ-ի առևտրական բանկերը:

Վճարման հաշվեկշռում գոյացած դեֆիցիտը ԱՄՆ-ը ծածկել է արտահանության՝ ներմուծման նկատմամբ ունեցած գերակշռությունից ստացված գումարներով և փոքր քանակությամբ պետական ոսկու պաշարի հաշվին: Սակայն տարիների ընթացքում այդ գերակշռությունը կրճատվել է և ընթացիկ տարում ԱՄՆ-ի առևտրի հաշվեկշիռը առաջին անգամ XX դարում դարձավ դեֆիցիտային: Ինչ վերաբերում է ոսկու պաշարին, ապա 1949 թ. 25 *մլրդ* դոլարի ոսկու փոխարեն ամերիկյան պետական ոսկու պաշարն այժմ 10 *մլրդ* դոլարից մի քիչ ավելի է: Վճարման հաշվեկշռի դեֆիցիտի մյուս մասը փակելու համար ԱՄՆ-ը, օգտվելով դոլարի արտոնյալ վիճակից, ավելացրել է օտարերկրյա պետություններին ունեցած կարճատև պարտքերը, որը նշանակում է դոլարների կուտակում ամերիկյան բանկերում նրանց ունեցած հաշիվներում՝ պարտավորագրերի ձևով: Այդ պարտքի գումարն այս տարվա հունիսի վերջին կազմում էր 50 *մլրդ* դոլար: Բացի այդ, 25 *մլրդ* դոլար կուտակվել է մյուս երկրների կենտրոնական բանկերում, որոնք տեսականորեն իրավունք ունեն ԱՄՆ-ից պահանջել այդ գումարները փոխանակել ոսկով: Միայն այդ գումարն արդեն 15 մլրդ դոլարով ավելի է ԱՄՆ-ի պետական ոսկու պաշարից:

Ինչպես տեսնում ենք, ԱՄՆ-ը ո՛չ միայն չի կարողացել խուսափել ինֆլյացիայից, այլև ոսկով չապահովված թղթադրամով հեղեղել է ողջ կապիտալիստական աշխարհը: ԱՄՆ-ի արտասահմանում ունեցած ֆինանսական պարտավորությունների և դրանք մարելու հնարավորությունների միջև գոյացել է մեծ ճեղքվածք:

Դոլարի ճգնաժամի մի այլ կարևոր պատճառն այն է, որ ԱՄՆ-ը որպես հզոր տնտեսական տերություն կորցրել է իր բացարձակ գերակշռությունը կապիտալիստական աշխարհում, թեև արտադրանքի ծավալի տեսակետից շարունակում է մնալ աշխարհում առաջին տեղում: Մինչև 1953 թ. կապիտալիստական երկրները հիմնականում բուժեցին պատերազմի հասցրած վերքերը: Կապիտալիզմի թռիչքային զարգացման հետևանքով պատերազմում պարտություն կրած երկրները՝ Արևմտյան Գերմանիան, Ճապոնիան և Իտալիան ո՛չ միայն կարճ ժամանակ անց կարողացան վերադառնալ համաշխարհային շուկա, այլև դարձան ամենալուրջ մրցակիցը կապիտալիստական առաջատար երկրների համար: Արդյունաբերական արտադրության աճի տեմպերով ԱՄՆ-ը ետ է մնում մյուս երկրներից, բացառությամբ Մեծ Բրիտանիայի: Արդյունաբերական արտադրանքի ծավալով կապիտալիստական աշխարհի երկրորդ տերությունն այժմ Ճապոնիան է, որն արդեն մարտահրավեր է նետել ԱՄՆ-ին պողպատի և արդյունաբերական արտադրանքի այլ հիմնա-

առայժմ կարելի է դատել փինակագիրների և տնտեսագետների արած նախնական հաշիվներից: Ենթադրվում է, որ դրանք աղետալի կլինեն Ճապոնիայի համար: Մասնագետների կարծիքով 10 տոկոս մաքսային լրացուցիչ տուրքը մտցնելու հետևանքով Ճապոնիայի արտահանությունը Միացյալ Նահանգներ կկրճատվի տարեկան ավելի քան 1 *մլրդ* դոլարով, իսկ իենը 10 տոկոսով վերարժեքավորելու դեպքում այդ գումարը կավելանա ևս 500 *մլն* դոլարով: Ճապոնիայի արտահանության 30 տոկոսը բաժին է ընկնում ԱՄՆ-ին: Ամեն տարի նա արտահանում է 20 *մլրդ* դոլարի ապրանք, որի մեկերորդ մասը՝ ԱՄՆ: Նոր իրադրության մեջ Ճապոնիան ստիպված է արդեն այս տարի ԱՄՆ արտահանել 3,5 կամ նույնիսկ 3 *մլրդ* դոլարի ապրանք՝ 6 *մլրդ* փոխարեն: Ճապոնիայի հետ ունեցած առևտրում ԱՄՆ-ի պասիվը կազմում է 1,2 *մլրդ* դոլար, թեև այն գնալով անում է: Իսկ «Նյու-Յորք թայմսի» հաղորդագրության համաձայն ԱՄՆ-ը ցանկանում է Ճապոնիայից եկող ներմուծումը կրճատել 1—1 և կես միլիարդ դոլարով:

Արտակարգ միջոցառումները հարվածում են նաև ԱՄՆ-ի մյուս գործակիցներին, որոնք համառորեն դիմադրում են ամերիկյան ճնշմանը: Հատկապես անհողդողդ դիրք է գրավում Ֆրանսիան, որի ֆինանսների մինիստր Ժիսկար դ'Էսթենն ուղղակի հայտարարել է. «Ֆրանսիան հրաժարվում է ամերիկյան վճարման հաշվեկշռի վերականգնման համար հատուցել իր տնտեսական զարգացման տեմպերի դանդաղեցմամբ և զբաղվածության կրճատմամբ»: Ֆրանսիան և Իտալիան շարունակում են իրենց վալյուտաների կուրսի տատանումները վերահսկելու գիծը: Ինչպես երկկողմանի բանակցություններում, այնպես էլ ՄՎՖ-ի և ԳԱԹԹ-ի (մաքսային տարիֆների և առևտրի վերաբերյալ ընդհանուր համաձայնություն) շրջանակներում տեղի ունեցած բուռն բանավեճերում ԱՄՆ-ը չկարողացավ իր գործակիցներին հարկադրել վերարժեքավորելու մյուս վալյուտաները: Այնուհանդերձ նրանց հաջողվել է առայժմ հասնել այն բանին, որ արևմտագերմանական մարկը փոխանակվում է տատանվող կուրսով, իսկ Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը թույլ են տալիս տատանվող կուրս դոլարի և մյուս վալյուտաների նկատմամբ, թեև իրենց վալյուտաների միջև պահպանում են կայուն հարաբերություններ: Երկու շաբաթ դիմադրելուց հետո Ճապոնիան նույնպես մտցրեց իենի տատանվող կուրս:

ԱՄՆ-ը, անշուշտ, ողջունեց այս քայլերը, սակայն որպես նվազագույնը, ինչ պետք է անել «դոլարը փրկելու» համար և պահանջում է հետևողականորեն առաջ շարժվել «միջազգային վալյուտաների հավասարեցման» ճանապարհով, այսինքն՝ ընդհուպ մինչև ռևալվացիա: Իրենց հերթին ԱՄՆ-ի գործակիցները չցանկանալով գնալ միակողմանի զիջումների, պահանջում են վերացնել 10 տոկոս լրացուցիչ մաքսային տարիֆը: Այդ իրողությունը առանձնապես ցայտուն դրսևորվեց ֆինանսական ասպարեզում կապիտալիստական տասը առաջատար պետությունների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, ԳՖՀ, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի, Շվեդիայի, Կանադայի և Ճապոնիայի ֆինանսների մինիստրների և միջազգային հիմնական բանկերի նախագահների խորհրդակցությունում, որը տեղի ունեցավ սեպտեմբերի 15—17-ը, Լոնդոնում:

«Ընդհանուր շուկայի» երկրները պահանջում են կապիտալիստական վալյուտային շուկայում դոլարը որպես ստանդարտ աստիճանաբար փոխարինել ոսկով կամ ավելի կայուն վալյուտայով: Միջամերիկյան տնտեսական և սոցիալական խորհրդի վերջին նստաշրջանում լատինաամերիկյան 22 երկրների ներկայացուցիչները կատաղի քննադատեցին ԱՄՆ-ին: Հաշված է, որ 10 տոկոս լրացուցիչ մաքսային տուրքի պատճառով լատինաամերիկյան երկրները տարեկան մեկ և կես միլիարդ դոլարի վնաս կունենան ԱՄՆ-ի հետ վարած անհավասար առևտրում:

Ստեղծված իրադրության մեջ կապիտալիստական կառավարող շրջանները սկսում են ավելի ու ավելի հասկանալ միջազգային առևտրում խտրականության քաղաքականության անհեթեթությունը: Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստր Մորիս Շումանը գտնում է, որ համաշխարհային առևտրում պետք է մասնակցեն Արևելյան Եվրոպայի երկրները, հատկապես ՍՍՀՄ-ը:

Դոլարի ճգնաժամի հետևանքով վերանայվում են կապիտալիստական աշխարհում տասնամյակներ շարունակ անխոցելի համարվող սկզբունքները: Եվ դրանք վերանայվում են պայքարի ու ընդհարումների բուռն մթնոլորտում: Ահա թե ինչու «դոլարը փրկելու» համար գումարված խորհրդակցությունները անվանում են «խուլերի երկխոսություն»: Այդ խորհրդակցություններում ու նստաշրջաններում իշխում է «ով՝ ում»-ի նշանաբանը, որովհետև ԱՄՆ-ի գործակիցներից ոչ մեկը ցանկություն չունի կրելու ամերիկյան տնտեսությունն առողջացնելու և դոլարը փրկելու ծանր բեռը: Սակայն պայքարը միայն սկսվել է և կապիտալիստական երկրների հակասությունների սրումը դեռ չի հասել իր գագաթնակետին:

* * *

Դոլարի ճգնաժամը մասնակի հիվանդություն չէ և ոչ էլ անցողիկ պահ: Այն վկայում է ողջ կապիտալիստական աշխարհի վալյուտա-ֆինանսական և առևտրա-տնտեսական հարաբերությունների ճգնաժամը:

# Գիտության աշխարհում

Լ. Ս. ՄԱՐԿՈՍՅԱՆ
Կենսաբանական գիտությունների թեկնածու

## ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԻՈՔԻՄԻԱՆ

Բազմացման պրոցեսում օրգանիզմների՝ իրենց նմանին վերարտադրելու, ինչպես և միջավայրի փոփոխվող պայմանների համապատասխան այս կամ այն հատկանիշը փոփոխելու ունակությունը, այսինքն՝ ժառանգականությունը և դրա փոփոխականությունը կենդանի էակների կարևորագույն հատկանիշներն են: Եթե օրգանիզմներն օժտված չլինեին ժառանգականությամբ և փոփոխականությամբ, ապա տեղի չէր ունենա կենդանի բնության աստիճանական զարգացումը, չէր լինի կենդանի աշխարհը՝ իր բազմազանությամբ ու գեղեցկությամբ, չէր լինի մարդը:

Ժառանգականության հարցերն զբաղեցրել են գիտնականներին դեռ շատ վաղուց: Այդ հարցերի շուրջ սուր պայքար է ծավալվել փիլիսոփայական երկու հակադիր ուղղությունների՝ մատերիալիզմի և իդեալիզմի միջև: Առաջադրվել են տարբեր հիպոթեզներ և բացատրություններ կենդանի էակների ժառանգականության մեխանիզմի մասին: Ժամանակի քննությանը դիմացան միայն այն պատկերացումները, որոնք բացատրում են ժառանգականության հարցերը դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունից:

Կապիտալիզմի ջատագովներից շատերն ինչպես նախկինում, այժմ էլ, կապիտալիստական աշխարհում գոյություն ունեցող սոցիալական անհավասարությունները ջանում են բացատրել ռասայական «տեսությամբ»: Սակայն ժառանգականության կենսաբանական (մատերիալիստական) էության պարզաբանմամբ մեկ անգամ ևս հնարավոր դարձավ գիտականորեն ապացուցել, որ այդ տեսությունը— շահագործող դասակարգերի դարավոր աշխարհայացքը, անհիմն է: Այժմ ապացուցված է, որ ողջ երկրագնդի վրա մարդկությունը կենսաբանական մի տեսակ է (*Homo Sapiens*), իսկ այն մասնակի տարբերությունները, որ գոյություն ունեն առանձին ռասաների միջև, հետևանք են միայն էվոլյուցիայի ընթացքում արտաքին զանազան գործոնների երկարատև ազդեցության: Միաժամանակ ապացուցված է նաև, որ առանձին ռասաների միջև գոյություն ունեցող զարգացման տարբեր մակարդակները որևէ կապ չունեն ժառանգականության և փոփոխականության հետ. դրանք պայմանավորված են կապիտալիստական հասարակարգի սոցիալական անհավասարություններով: Ժառանգականության ժամանակակից մատերիալիստական պատկերացումը հիմնականում սկիզբ է առնում տասնիններորդ դարի կեսերից, երբ Մենդելը հանգեց այն եզրակացության, որ բջիջներում կա այս կամ այն հատկանիշի նյութական հիմքը՝ «փակտորը», որը սեռական բջիջների միջոցով անցնում է սերունդներին: Ժառանգականության ուսմունքի հետագա զարգացման անկյունաքարը հանդիսացան ժառանգականությունը կրող այդ նյութի հայտնաբերումը ու ուսումնասիրումը:

Ժամանակակից գենետիկան ժառանգականությունը կապում է բջիջների կորիզի կազմի մեջ մտնող մանր մասնիկների՝ քրոմոսոմների հետ: Այժմ պարզված է, որ յուրաքանչյուր

են տվել, որ ժառանգական հիվանդությունների հիմքում ընկած է զանազան բիոքիմիական պրոցեսների խախտումը, սկսած այս կամ այն ֆերմենտի (սպիտակուցի) սինթեզից:

Այստեղից ակներև է դառնում նաև, թե որքան կարևոր է մարդու համար ժառանգականության փոփոխման պրոցեսները կառավարելու ունակությունը: Տարբեր ազդակների ներգործությամբ գիտնականներին հաջողվում է ո՛չ միայն բուժել տարբեր ախտեր, այլև ստանալ մանրէների, բույսերի և կենդանիների բազմաթիվ տեսակներ ու սորտեր, որոնք անհամեմատ ավելի մեծ արժեք ունեն ժողովրդական տնտեսության և մարդու համար: Այսպես, մոխրագույն կարակուլե մորթին, ինչպես գիտենք, մի ժամանակ շատ հազվագյուտ էր, քանի որ հարյուրավոր ոչխարներից միայն մի քանիսն էին մոխրագույն, նրանց խաչաձևումից ստացված սերունդը 3—4 ամսական հասակում մահանում էր: Սելեկցիոներների բազում փորձերը՝ բուծելու մոխրագույն մորթի ունեցող ոչխարներ, դրական արդյունք չէին տալիս: Ոչխարաբույծներին օգնության եկավ գենետիկան: Յ. Լ. Գլեմբոցկին պարզեց, որ մոխրագույն մորթի ունեցող բոլոր ոչխարները տառապում են ժառանգական մի հիվանդությամբ, որը կոչվում է խրոնիկական տիմպանիտ. դրա ժամանակ գառները հրաժարվում են կաթից, անցնում այլ կերի և դրանից էլ մահանում են: Հետաքրքրական է, որ մահն արդյունք է զույգ քրոմոսոմներում հենց այդ մոխրագույն երանգը պայմանավորող գեների առկայության: Այդ իսկ պատճառով գիտնականները առաջարկեցին տրամախաչել մոխրագույն ոչխարներին սև մորթի ունեցողների հետ, որի շնորհիվ սերնդի կեսն ունենում էր մոխրագույն, մյուս կեսը՝ սև մորթի, դրանք հավասարապես բարձրարժեք են:

Ուսումնասիրելով ջրաքիսների քրոմոսոմային «ապարատը»՝ գենետիկները պարզեցին, որ մորթու գունավորումը պայմանավորող գեների թիվն անցնում է ութից: Պարզվեց, նաև, որ դոմինանտ (իշխող) գենը շագանակագույն գունավորումը պայմանավորողն է, իսկ ռեցեսիվը՝ արծաթագույնը: Ելնելով ստացված տվյալներից, գիտնականներին հաջողվեց ղեկավարել բազմերանգ մորթիների ստացումը: Այժմ ստացվում են ջրաքիսի ավելի քան 20 տարբեր գույների ու երանգների մորթիներ— սևից մինչև ձյունասպիտակ, բաց-մոխրագույնից մինչև բաց-եղևանի, իսկ 1963 թ. Նյու-Յորքի աուկցիոնի «թագուհին» դարձավ կանաչ մորթին, որն արժեր 400 դոլար:

Ահա մի այլ օրինակ. վաղուց հայտնի էր, որ արական բոժոժները 30 տոկոսով ավելի մետաքս են արտադրում, քան իգականը: Սակայն շատ դժվար էր դրանք զանազանել միմյանցից: Այդ հեշտացնելու նպատակով Վ. Ա. Ստրոննիկովը վերցրեց բոժոժների մի տեսակ, որոնց շերամասերմի մի մասը մուգ գունավորում ուներ և պարզեց, որ վերջինս պայմանավորող գենը չի գտնվում սեռական քրոմոսոմում: Ուստի, թե՛ արական և թե իգական սեռի սերունդները կարող էին ունենալ նման մուգ գունավորում: Գիտնականը ճառագայթման եղանակով կատարեց մի համարձակ փորձ: Նա անջատեց այդ գունավորման գենը քրոմոսոմից և միացրեց իգական սեռական քրոմոսոմին, որի շնորհիվ միայն իգական սեռի բոժոժներն են ունենում մուգ պիգմենտացիա: Այնուհետև, հատուկ սարքավորման միջոցով տարազատում են արական և իգական սեռերը և մետաքսի ստացման համար բուծում միայն արական սեռի բոժոժներ, մետաքսի արտադրությունը բարձրացնելով մոտ 40 տոկոսով:

Ուսումնասիրելով ժառանգականության ապարատի և նրա փոփոխականության օրինաչափությունները՝ գենետիկներին այժմ հաջողվել է շատ կարճ ժամանակամիջոցում ստանալ գյուղատնտեսական կուլտուրաների բազմաթիվ սորտեր, որոնք մի քանի անգամ ավելի բերքատու են և, միաժամանակ, դիմացկուն տարբեր հիվանդությունների նկատմամբ և այլն:

Ավելի նշանակալից է միկրոօրգանիզմների և սնկերի նոր շտամների ստացումը, որոնք մի քանի հազար անգամ ավելի անտիբիոտիկներ՝ պենիցիլին, տերրամիցին, ստրեպտոմիցին են արտադրում, քան դրանց նախկին ձևերը: Այսպիսով, հնարավոր դարձավ յուրաքանչյուր սովետական քաղաքացու ապահովել դեղորայքով, ինչպես նաև տնտեսել հսկայական միջոցներ և հարյուրավոր գործարանների փոխարեն կառուցել մեկը:

Ա. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Կենսաբանական գիտությունների թեկնածու

# ԿՅԱՆՔԻ ԽԹԱՆՆԵՐԸ

XX դարի երկրորդ կեսը գիտության մեջ իրավամբ կարելի է անվանել կենսաբանության դարաշրջան: Համեմատաբար կարճատև ժամանակամիջոցում ստեղծվեցին ժառանգականության կոնցեպցիայի քիմիական հիմքերը: Կենսաբանությունն այժմ նկարագրականից դառնում է ճշգրիտ գիտություն, դրա զարգացման հիմնական ուղղությունն այժմ կենդանի բնության մեխանիզմների հետազոտությունն է և դրա հետ կապված՝ այդ պրոցեսների ղեկավարման ուղիների հայտնագործումը: Շատ բան է արված ֆերմենտների՝ իրենց ակտիվությամբ ու բնույթով այդ խիստ ընտրողական կենսաբանական կատալիզատորների քիմիական կառուցվածքի և ազդեցության մեխանիզմների ուսումնասիրման ասպարեզում: Այն ամենը, ինչ անում ենք մենք՝ քայլում ենք, կարդում, քնում, մտածում կամ աշխատում, կապված է էներգիայի ծախսման և ֆերմենտների ակտիվ գործունեության հետ:

Առանց ֆերմենտների կարո՞ղ էին կծկվել մկանները, աշխատել մարսողական գեղձերը կամ տեղի ունենալ ներվային բարդ երևույթներ: Առանց ֆերմենտների չէր լինի օրգանիզմների կյանքը: Ըստ ժամանակակից պատկերացումների կենդանի բջիջը փոքրիկ մի լաբորատորիա է, որտեղ տեղի են ունենում բազմազան նյութերի սինթեզն ու քայքայումը: Քիմիական այդ ֆաբրիկայում աշխատանքը կատարվում է մարմնի ջերմաստիճանի պայմաններում, իսկ մեքենաները, որ մասնակցում են էներգիայի առաջացմանն ու վերափոխմանը, ունեն մոլեկուլյար չափեր: Այդ մեքենաները ֆերմենտներն են:

Չնայած ֆերմենտների վերաբերյալ գիտությունը՝ ֆերմենտոլոգիան, համեմատաբար երիտասարդ է, բայց ֆերմենտային պրոցեսները հայտնի էին դեռևս քաղաքակրթության արշալույսին և օգտագործվում էին հաց թխելիս, պանիր, զանազան սպիրտային խմիչքներ պատրաստելիս: Ֆերմենտային պրոցեսների վերաբերյալ առաջին հետազոտություններն սկսվեցին XVIII դարի երկրորդ կեսից: Այդ ժամանակ ֆրանսիացի բնախույզ Ռենե Անտուան Ռեոմյուրը և իտալացի բնագետ Լաձարո Սպալանցանին նկարագրեցին գիշատիչ թռչունների ստամոքսում մսի մարսելու երևույթը: Ֆերմենտների առաջին քիմիական հետազոտությունը սպիրտային խմորման վերաբերյալ կատարել է Անտուան Լորան Լավուազեն: XIX դարի սկզբներին Կ. Կիրհոֆին հաջողվեց ցույց տալ, որ գարու ծիլերի մզվածքը պարունակում է մի նյութ, որն օսլան վեր է ածում շաքարի: Դրանով, ըստ էության, հայտնաբերվեց ամիլազա ֆերմենտը և հիմք դրվեց ֆերմենտագիտությանը: Կարճ ժամանակ անց ֆրանսիացի քիմիկոսներ Պեյյան ու Պերսոն գարու ածիկից կարողացան անջատել այդ ֆերմենտը, որն անվանվեց դիաստազա (հուն.՝ դիաստազիս—քայքայում բառից):

Ժամանակակից պատկերացմամբ ֆերմենտները (լատ.՝ ֆերմենտում-մերան, թթխմոր բառերից) օրգանիզմի բջիջներում և հյուսվածքներում արտադրվող սպիտակուցային բնույթի յուրահատուկ կատալիզատորներ են, որոնք ունակ են նշանակալի չափով արագացնելու քիմիական ռեակցիաները, սակայն, չեն մտնում ռեակցիայից հետո ստացվող նյութերի կազմի մեջ: Ինչպես հայտնի է, ամեն մի քիմիական ռեակցիայի արագությունը պայմանավորված է այն բանով, թե այդ պրոցեսին մասնակցող նյութերի մոլեկուլներն ինչ հաճախականությամբ են իրար հանդիպում: Մոլեկուլների շարժման արագությունը կարելի է մեծացնել մի շարք ազդակներով: Օրինակ, ջերմաստիճանի բարձրացումն արագացնում է մոլեկուլների շարժումը, որը հանգեցնում է դրանց հանդիպման

ճանախականության: Այդ մոլեկուլները հասնում են գրգռված, ակտիվ վիճակի: Այն էներգիան, որը պահանջվում է նյութի մոլեկուլների գրգռման համար, ընդունված է անվանել ակտիվացման էներգիա: Քիմիական կատալիզատորները իջեցնում են տվյալ ռեակցիայի համար ծախսվող ակտիվացման էներգիայի քանակը: Ֆերմենտների ազդեցությունը նույնպես կատալիտիկ է: Սակայն ֆերմենտային ռեակցիաները տարբերվում են սովորական կատալիտիկ պրոցեսներից նրանով, որ իրենց գործունեության համար պահանջում են ջերմաստիճանի և միջավայրի համապատասխան չափավոր պայմաններ: Ի. Պավլովի բնորոշմամբ՝ ֆերմենտները կենդանի էակների մեջ քիմիական բոլոր փոխակերպումների գրգռիչներն են: Դրանք կենսագործունեության հիմքն են և կյանքի շարժիչները:

Ֆերմենտներն օժտված են մի շարք կենսաբանական բնորոշ առանձնահատկություններով, որոնք նրանց դարձրել են կյանքի հիմքը: Նախ՝ չնչին քանակությամբ ֆերմենտի առկայությամբ համապատասխան ռեակցիայի արագությունը կարող է մեծանալ ֆանտաստիկ չափերով: Օրինակ, ջրածինպերօքսիդը ջրի ու թթվածնի տարրալուծվելու համար որպես կատալիզատոր կիրառվում է երկաթը. նույն ռեակցիայում երկաթը համապատասխան ֆերմենտով փոխարինելով, նրա արագությունը մեծանում է ավելի քան քսան միլիոն անգամ: Չլինեն քիմիական ռեակցիաների այդ արագությունը, չէին լինի կենսական բարդ երևույթները և կյանքը: Պարզվել է, որ իրար հետ փոխազդեցության մեջ մտնելիս, քայքայվող նյութի հետ միանում է ֆերմենտի սպիտակուցային հատվածը, որը հետաքրքրական կառուցվածք ունի. այն բանալու պես բացում է միայն իր փականը: Դա ֆերմենտի, այսպես կոչված՝ ակտիվ կենտրոնն է:

Ժամանակակից տվյալներով ֆերմենտները բարձր մոլեկուլյար սպիտակուցային նյութեր են և, ի տարբերություն անօրգանական կատալիզատորների, չափավոր ջերմաստիճանի պայմաններում ինտենսիվ գործում են: Միջավայրի 40—50° տաքացումը նպաստում է կենսաբանական ռեակցիայի արագացմանը: Հետագա տաքացումը իջեցնում է ֆերմենտի ակտիվությունը: Բարձր ջերմաստիճանի պայմաններում ֆերմենտների մեջ մտնող սպիտակուցը մակարդվում է, և դրանք զրկվում են իրենց կենսաբանական հատկությունից: Սակայն կան նաև ջերմադիմացկուն ֆերմենտներ: Օրինակ, մկանների միոզինը, որի օգնությամբ իրագործվում է կծկման պրոցեսը կարող է դիմանալ մինչև 100° տաքացման: Զրոյից ցածր ջերմաստիճաններում ֆերմենտների ազդեցությունը դադարում է, բայց դրանք չեն քայքայվում:

Դեռևս գերմանացի քիմիկոս Էմիլ Ֆիշերի հետազոտություններով ցույց տրվեց, որ յուրաքանչյուր ֆերմենտ կարող է ազդել միայն իրեն համապատասխան մեկ կամ նման կառուցվածք ունեցող մի քանի նյութերի վրա: Այդ տեսակետից ֆերմենտների ազդեցությունը յուրահատուկ է, իսկ ռեակցիաները բջջի ներսում ընթանում են խիստ սահմանված հաջորդականությամբ ու հետևողականությամբ:

Ֆերմենտները շատ զգայուն են միջավայրի թթվության նկատմամբ: Մեր դարասկզբին Սերենսը բացահայտեց, որ օրգանիզմում գործող ֆերմենտների մի մասն ակտիվորեն գործում է թույլ թթվային կամ թույլ հիմնային, իսկ մյուսը՝ չեզոք միջավայրում: Ֆերմենտների այդ հատկությունը սերտորեն կապված է մարսողության հետ: Հայտնի է, որ ածխաջրատների մարսողությունն սկսվում է բերանի խոռոչից: Այստեղ արտազատվող թքի մեջ պարունակվող ամիլազա ֆերմենտը, գործելով չեզոք միջավայրում, ակտիվ մասնակցում է օսլայի քայքայմանը: Սակայն ստամոքսում ռեակցիան խիստ թթվային է, ամիլազայի ազդեցությունն անհանում է և գործնականորեն դադարում ածխաջրատների քայքայումը: Իսկ դրա փոխարեն ըսկսում է գործել մի այլ ֆերմենտ՝ պեպսինը, քայքայելով սպիտակուցները: Միայն աղիներում, ենթաստամոքսային գեղձի արտադրած հյութի ազդեցության տակ, միջավայրը դառնում է հիմնային: Այստեղ պարունակվում են մի շարք ֆերմենտներ, որոնք մասնակցում են ինչպես ածխաջրատների, այնպես և սպիտակուցների ու ճարպերի մարսողությանը:

Ի. Պավլովն առաջինը ցույց տվեց, որ ֆերմենտների մի մասը հյուսվածքներում ու բջիջներում գտնվում է ոչ ակտիվ վիճակում: Օրինակ, պեպսինի ոչ ակտիվ ձևը ակտիվանում և գործուն է դառնում աղաթթվի առկայությամբ: Ամիլազան ակտիվանում է քլորի մասնակցությամբ: Ֆերմենտների ակտիվացումը բարդ, բազմաստիճան պրոցես է: Օրինակ, աղիներում սպիտակուցը քայքայող ֆերմենտը՝ տրիպսինը գտնվում է ոչ ակտիվ վիճակում, որի համար անվանվում է տրիպսինոգեն: Տրիպսինոգենի ակտիվացումը կատարվում է, այսպես կոչված՝ էնտերոկինազայով: Պարզվել է, որ երբ տրիպսինոգենը կազմող շղթայից հատվում է վեց ամինոթթվային «աղյուսիկներից» կազմված մի հատված, ուղիղ շղթան դառնում է գալարաձև, տրիպսինոգենը վեր է ածվում ակտիվ տրիպսինի և մասնակցում սպիտակուցների քայքայմանը:

Սակայն ինչպե՞ս ֆերմենտները չեն մասնակցում հենց իր՝ օրգանի հյուսվածքի քայքայմանը: Այսպես, պեպսինը, մասնակցելով սննդի հետ ընդունված օտար ստամոքսի քայքայմանը, չի ազդում իր սեփական ստամոքսի վրա, որի մեջ այն արտազատվում է: Կամ, ուզած բուսական բջջում սինթեզվող օսլայի հատիկի կողքին գտնվում է այն քայքայող ֆերմենտը՝ ամիլազան, որը, սակայն, չի ազդում սեփական բջջի պարունակության վրա: Ենթադրվում է, որ բջջի ներսում քայքայվող նյութի և նրա վրա ազդող ֆերմենտի միջև գոյություն ունի որոշակի «պատնեշ», որը խանգարում է նրանց փոխներգործությանը: Հետաքրքրական է նաև այն փաստը, որ զարգացման էվոլյուցիայի ընթացքում ֆերմենտների հետ միասին կենդանի օրգանիզմի բջիջներում ստեղծվել են նաև հակաֆերմենտներ, որոնք համապատասխան պայմաններում արգելակում են տվյալ ֆերմենտի ազդեցությունը և պահպանում սեփական օրգանի քայքայումը: Նման հակաֆերմենտային հատկությամբ օժտված են նաև կենդանիների աղեստամոքսային տրակտում բնակվող պարազիտ որդերը: Հակաֆերմենտների ազդեցությունն օրգանիզմում ունի նաև կարևոր պաշտպանողական նշանակություն օտարածին, ինչպես և ախտածին զանազան մանրէների կողմից արտադրված ֆերմենտների վնասակար ազդեցությունը չեզոքացնելու համար:

Ֆերմենտները կարող են լինել պարզ և բարդ սպիտակուցներ: Պարզ սպիտակուցները բնորոշ են նրանով, որ դրանց տարրալուծումից ստացվում են միայն ամինոթթուներ, որոնցից կազմված է սպիտակուցների մոլեկուլը: Հետևաբար, պարզ սպիտակուցներն իրարից տարբերվում են իրենց մոլեկուլում եղած ամինոթթուների քանակով, դրանց հերթականությամբ: Բնության մեջ գոյություն ունեցող ֆերմենտների մեծ մասը պարզ սպիտակուցներ են: Այլ ֆերմենտները սպիտակուցի հետ միասին պարունակում են նաև ոչ սպիտակուցային նյութեր: Օրինակ, օրգանիզմի հյուսվածքներում և բջիջներում ընթացող շնչառության պրոցեսներին մասնակցող ֆերմենտները պարունակում են երկաթի օրգանական միացություններ: Ուրիշ ֆերմենտներ իրենց մոլեկուլում պարունակում են պղինձ, ցինկ, մանգան և այլն: Պարզվել է, որ այդ մոլեկուլներում կարող են լինել նաև զանազան վիտամիններ: Այստեղից հասկանալի է դառնում նաև վիտամինների կարևոր դերն օրգանիզմի նորմալ ֆիզիոլոգիական ֆունկցիայի պահպանման համար:

Ֆերմենտագիտության զարգացման ճանապարհին կարևոր քայլ էր հյուսվածքներից ֆերմենտների անջատումը և դրանց մաքրումը: Ջ. Սամներին հաջողվեց բյուրեղական վիճակում անջատել ուրեազա ֆերմենտը, իսկ Դ. Նորթրոպին՝ պեպսինը և տրիպսինը: Այդպիսով, ուղի հարթվեց ֆերմենտների խիստ զտված բյուրեղական պատրաստուկների ստացման համար և դրա հետ միասին հիմնավորապես ապացուցվեց դրանց սպիտակուցային բնույթը: Այժմ բնության մեջ հայտնի 800 ֆերմենտների 20 տոկոսը ստացվում է մաքուր վիճակում: Աշխարհի կենսաքիմիական տարբեր լաբորատորիաներում անջատում և վաճառում են ավելի քան 150 տարբեր ֆերմենտներ, որոնց մի մասն ստացվում է բյուրեղացված կամ խիստ մաքրված վիճակում: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո և, հատկապես, վերջին տարիներին, մշակվել և շարունակվում է զարգանալ ինչպես տեսական, այնպես էլ կիրառական ֆերմենտոլոգիան: Ուսումնասիրվում են հատկապես տարբեր ֆերմենտների անջատման եղանակները, դրանց մոլեկուլյար կառուցվածքն ու հատկությունները, մեկնաբանվում ազդեցության ու արգելակման մեխանիզմները:

Մաքուր վիճակով ֆերմենտների անջատումը դժվար և բարդ խնդիր է: Նախ՝ ֆերմենտները հյուսվածքներում և բջիջներում ոչ թե մեկուսացված են, այլ գտնվում են սպիտակուցների և նյութերի հետ տարբեր կոմպլեքսների և խառնուրդների ձևով: Մյուս կողմից՝ դրանք հյուսվածքի մեջ չնչին կշիռ են կազմում ու կողմնակի ազդակներից հեշտությամբ կարող են քայքայվել: Ֆերմենտների անջատման համար օգտագործում են տարբեր կենդանիների օրգաններն ու հյուսվածքները, բույսերի սերմերն ու ծիլերը, ինչպես նաև մանրէների բջջային զանգվածը: Այժմ մշակվել են ֆերմենտների անջատման մի շարք եղանակներ: Դրանցից մեկը, այսպես կոչված՝ ադսորբցիայի եղանակն է: Այս դեպքում ֆերմենտի զատումը կատարվում է համապատասխան նյութերի՝ ադսորբենտների օգնությամբ: Ֆերմենտների անջատման համար կիրառում են նաև իոնափոխանակային քրոմատոգրաֆիայի, էլեկտրոֆորեզի և այլ մեթոդներ: Ֆերմենտների մաքրության չափանիշը նրանց ակտիվության աճն է: Որքան ինտենսիվ է ֆերմենտը մասնակցում նյութի քայքայմանը, այնքան այն ավելի ակտիվ է: Սովորաբար ֆերմենտների ակտիվությունը հաշվվում են նյութի այն քանակով, որը մեկ րոպեում ենթարկվում է ֆերմենտային քայքայման: Ֆերմենտների ակտիվությունը որոշում են հատուկ սարքավորումների՝ սպեկտրոֆոտոմետրերի օգնությամբ: Ակտիվության որոշման այդ եղանակը հիմնված է նյութի ներկայությամբ լույսի տարբեր ալիքների սպեկտրների փոփոխության վրա: Ֆերմենտային բազմաթիվ ռեակցիաների արագությունը որոշվում է գունաչափական մեթոդով. ֆերմենտի առկայությամբ

ռեակցիայի ընթացքում առաջանում են նոր նյութեր, որոնք համապատասխան միացություններից գոյանալորվում են: Գույնի ինտենսիվությունը ցույց է տալիս ֆերմենտի ազդեցության աստիճանը:

Ինչպե՞ս են ֆերմենտներն առաջանում բջջի մեջ: Ֆերմենտների սինթեզը կատարվում է այնպես, ինչպես սպիտակուցներինը: Այդ իմաստով ֆերմենտոլոգիայի զարգացումը մեծ չափով պայմանավորված է սպիտակուցի քիմիայի և ֆիզիկայի, նրա կառուցվածքի վերաբերյալ գիտելիքների զարգացմամբ: Ժամանակակից պատկերացումների համաձայն սպիտակուցները տարբեր ամինոթթուներից կազմված կենսապոլիմերներ են՝ վեց հազարից մինչև մեկ և ավելի միլիոն մոլեկուլյար կշռով: Մոտ 20 տարբեր ամինոթթուները կազմում են սպիտակուցների բարդ և բազմազան կառույցի բաղադրամասերը, որոնք միանում են իրար հատուկ կապերով: Մի քանի սպիտակուց-ֆերմենտների մոլեկուլները կազմում են մեկ շղթա, որոշ ֆերմենտներ բաղկացած են մեկից ավելի շղթաներից: Կան ֆերմենտներ, որոնք հավասար մոլեկուլյար կշիռ ունեն և կազմված են նույն սպիտակուցից, բայց ազդեցությամբ տարբերվում են իրարից: Դա բացատրվում է սպիտակուցի շղթայի մեջ ամինոթթուների հերթականությամբ: Այժմ պարզվել է որոշ ֆերմենտների կառուցվածքը: Օրինակ, ռիբոնուկլեազա ֆերմենտի մոլեկուլը կազմված է 126 տարբեր ամինոթթուներից, որոնք իրար միանալով կազմում են մի շղթա:

Բջջի ներսում նրա բաղադրամասերի մեջ ֆերմենտները տեղադրված են խիստ սահմանված հերթականությամբ ու հաջորդականությամբ: Որոշ ֆերմենտներ տեղակայված են բջջապլազմայում, ուրիշները՝ բջջի «ուժային կայանների»՝ միտոքոնդրիաների մեջ: Ձնայած ֆերմենտները տարածականորեն իրարից համեմատաբար հեռու են տեղակայված, գործում են միասնաբար և համաձայնեցված ծրագրով: Այդ տեսակետից բջջում կատարվող նյութափոխանակության պրոցեսը մի ամբողջական շղթա է, որի որևէ հատվածում առաջացած նյութը հետագա վերափոխման և քայքայման է ենթարկվում մյուս օղակում:

Կենդանի բնության մեջ հանդիպում են նաև, այսպես կոչված՝ իզոֆերմենտներ: Այդ տերմինը գիտության մեջ մտավ վերջերս, երբ Վեսելը, Բիրնը, Վիլանդն ու Պֆլեյդերերը միաժամանակ նկատեցին, որ կաթնաթթվի փոխանակությանը մասնակցող նույն ֆերմենտը տարբեր օրգանիզմների հյուսվածքներում իր ֆիզիկա-քիմիական մի շարք առանձնահատկություններով տարբերվում է: Իզոֆերմենտների բնագավառում վերջին տարիների հետազոտությունները զգալիորեն նպաստեցին կենսաբանության տարբեր բնագավառների՝ սաղմնաբանության, համեմատական անատոմիայի ու ֆիզիոլոգիայի, իմունոլոգիայի և մի շարք այլ կնճռոտ հարցերի լուսաբանմանը:

Մեր օրերում ֆերմենտների վերաբերյալ հետազոտությունները լայն կիրառական նշանակություն են ստացել ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում: Գինեգործությունը, գարեջրի, սպիրտի, օրգանական թթուների ստացումը, հացաթխման գործը, պանրագործությունը, բեյի, ամինոթթուների, վիտամինների և հակաբիոտիկների արտադրությունը հիմնված է ֆերմենտային բազմազան պրոցեսների վրա: Կենսաբանության և բժշկագիտության մեջ այժմ դժվար է գտնել տեսական կամ կիրառական որևէ բնագավառ, որտեղ ֆերմենտների մասին հետազոտությունները վճռական նշանակություն չունենային ամենակարևոր հարցերը լուծելիս: Այժմ արդեն հայտնի է դարձել, որ ժառանգական պրոցեսն իրագործող գենետիկական գործոնների ազդեցությունն իրագործվում է միայն սպիտակուց-ֆերմենտների կենսասինթեզի ղեկավարման միջոցով: Օրգանիզմի ֆիզիոլոգիական ֆունկցիայի կանոնավորումը զանազան բուժամիջոցներով և թույներով, միկրոբների տոքսիններով և հակաբիոտիկներով, ինչպես նաև ֆիզիկական ու քիմիական մի շարք արտաքին ազդակներով, հանգեցնում են հյուսվածքներում ու բջիջներում այս կամ այն քիմիական, ֆերմենտային ռեակցիայի արագացմանը կամ դանդաղեցմանը, որը համապատասխան պայմաններում նպաստում է օրգանիզմի կենսունակության ու կենսականության ակտիվացմանը և առողջացմանը: Բազմազան ֆերմենտների քիմիական նուրբ կառուցվածքում և դրանից բխող առանձնահատկություններում է դրսևորվում տվյալ օրգանիզմի ամբողջականությունը: Որևէ շեղում և խախտում կառուցվածքի այդ ընդհանուր սկզբունքից, հարուցում է այս կամ այն ժառանգական հիվանդությունը: Կլինիցիստներին այժմ ոչ սակավաթիվ հիվանդություններ են հայտնի, որոնք կապված են նյութափոխանակության խանգարման, ֆերմենտային պրոցեսներում որևէ սխալի կամ խախտման հետ: Այսպես, երեխաների մոտ երբեմն երևան է գալիս գալակտոզեմիա հիվանդությունը, որի դեպքում արյան մեջ շատանում է գալակտոզան. այն զգալի չափերով հեռացվում է մեզի միջոցով: Վատանում է հիվանդի ախորժակը, դանդաղում աճը, խախտվում լյարդի նորմալ ֆունկցիան. սովորաբար այդ հիվանդությամբ տառապող երեխաները մտավորապես թույլ զարգացած են լինում:

Պարզվել է, որ այդպիսի հիվանդների մոտ գալակտոզայից գլյուկոզայի անցման ֆերմենտային օղակը նորմալ չի գործում, որի հետևանքով օրգանիզմը զրկվում է իր հիմնական վառելիքի գլյուկոզայի մեծ պաշարներից: Ֆերմենտների կենսասինթեզի հետ սերտորեն կապված են նաև ածխաջրատային այլ հիվանդություններ:

Մի շարք հիվանդություններ առաջանում են ամինոթթուների փոխանակության խանգարումից: Այսպես կոչված՝ ալկապտոնուրիա հիվանդությունն առաջանում է թիրոզին և ֆենիլ ալանին ամինոթթուների նորմալ փոխանակության խանգարումից: Առողջ օրգանիզմում նշված ամինոթթուներն առաջացնում են հոմոգենտիզինաթթու, որն այնուհետև համապատասխան ֆերմենտի օգնությամբ փոխակերպվում է մի այլ միացության: Սակայն հիվանդ օրգանիզմում այդ ֆերմենտի սինթեզի խախտման պատճառով նշված թթվի փոխակերպումը դադարում է և այն մեծ քանակությամբ դուրս է գալիս մեզի միջոցով:

Որոշ հիվանդությունների ախտորոշման նըպատակով այժմ կարևոր տեղ է տրվում արյան ֆերմենտային կազմի ուսումնասիրությանը: Արյան շիճուկում հայտնի են ավելի քան 50 տարբեր ֆերմենտներ, որոնց քանակությունն առողջ օրգանիզմում համեմատաբար կայուն է: Պարզվել է, որ որոշ հիվանդությունների դեպքում արյան շիճուկում մշտապես գոյություն ունեցող ֆերմենտների ակտիվությունն զգալիորեն պակասում է, որը հետևանք է ֆերմենտն արտադրող հիվանդ օրգանի թերֆունկցիայի: Այդ դեպքում, ընդհակառակը, արյան շիճուկում ֆերմենտների պարունակությունը շատանում է: Դա բացատրվում է նրանով, որ հիվանդագին ճանապարհներով այլ օրգաններից ֆերմենտները թափանցում են արյան մեջ: Արյան շիճուկում ֆերմենտների կազմի նշված փոփոխությունների ուսումնասիրությունը կարևոր նշանակություն ունի լյարդի, սրտի, ենթաստամոքսային գեղձի հիվանդությունների, ինչպես նաև չարորակ նորագոյացությունների մի քանի տեսակների հայտնաբերման ու ախտորոշման համար: Այսպես, ֆոսֆատազա ֆերմենտի ակտիվության հետ սերտորեն կապված են լյարդի, ոսկորների և մի քանի գեղձերի հիվանդությունների ճիշտ ախտորոշումը: Պարզվել է, որ լյարդի հիվանդությունների դեպքում արյան մեջ նշված ֆերմենտների քանակությունն անում է 5—10 անգամ: Դա բացատրվում է նրանով, որ հիվանդ օրգանից մեխանիկաբար ֆերմենտը հեշտությամբ անցնում է արյան մեջ:

Վերջին տարիներին ախտորոշիչ նպատակներով ուշադրության է առնվում մի այլ ֆերմենտի՝ տրանսամինազայի ակտիվությունը: Նկատվել է, որ արյան մեջ այդ ֆերմենտի քանակությունը բարձրանում է հատկապես սրտամկանի ինֆարկտի ժամանակ:

Բերված օրինակները ցույց են տալիս, որ օրգանիզմի հյուսվածքներում ու բջիջներում ֆերմենտների քանակի և ազդեցության հետազոտությունը տարբեր հիվանդությունների համար կարևոր ախտորոշիչ նշանակություն ունի: Միաժամանակ որոշ ֆերմենտներ հենց իրենք օգտագործվում են որպես բուժամիջոց: Բուժական նպատակներով լայնորեն օգտագործվում են հատկապես մարսողական հյութերում գտնվող ֆերմենտները՝ պեպսինը, տրիպսինը, քիմոտրիպսինը, ինչպես նաև ֆերմենտային այլ պրեպարատներ: Օրինակ, հիալուրոնիդազա ֆերմենտը, որը քայքայում է միջբջջային նյութը, օգտագործվում է դեղանյութերի արագ ներծծման համար: Առողջությանը մեծապես վնասող տրոմբոզ հիվանդությունը բուժում են մի այլ պրեպարատով՝ պլազմինով, որն օժտված է տրոմբը լուծելու հատկությամբ: Ճնշառական ֆերմենտներով բուժում են թթվածնային անբավարարությունը:

Բուժական նպատակներով կիրառվում են ո՛չ միայն ֆերմենտ-սպիտակուցները, այլև դրանց սիստեմի մեջ մտնող ոչ սպիտակուցային նյութերը (օրինակ վիտամինները): Սակայն որոշ հիվանդությունների դեպքում, երբ վնասված է ֆերմենտի սպիտակուցային մասը, այս բուժումը ցանկալի արդյունք չի տալիս: Այս դեպքում, ամենից առաջ, հոգում են սպիտակուցային սովը վերացնելու մասին: Ժամանակակից բուժական պրակտիկայում լայնորեն կիրառվում են ֆերմենտների այնպիսի բաղկացուցիչ մասեր, ինչպիսիք են՝ վիտամին $B_1$-ը (մասնակցում է ածխաջրատների փոխանակությանը), $B_2$-ը (մտնում է օքսիդացման ֆերմենտների մեջ), նիկոտինաթթուն (հյուսվածքային շնչառության ֆերմենտների բաղկացուցիչ մասը) և այլն:

Գիտելիքները ֆերմենտների վերաբերյալ օրեցօր հարստանում են նոր փաստերով: Հայտնի է, որ արյունը ներկող նյութը՝ հեմոգլոբինը, թոքերի միջոցով ներշնչված թթվածինը տեղափոխում է մարմնի հյուսվածքներն ու բջիջները: Մինչև այժմ այդ պրոցեսը բացատրվում էր միայն ֆիզիկայի ու քիմիայի օրենքներով: Բայց այժմ հայտնի է դարձել, որ այդ պրոցեսին մասնակցում է հատուկ ֆերմենտ: Վերը նշված ֆիզիկա-քիմիական եղանակով էր բացատրվում նաև օրգանիզմից ածխաթթու գազի արտազատման մեխանիզմը: Սակայն այժմ պարզվել է, որ այդ պարզ քիմիական պրոցեսի խթանիչը մի հատուկ ֆերմենտ է, որն իր մեջ ցինկ է պարունակում:

——⊙——

միայն իրենց դասակարգային իդեալների ու հոգեբանության, այլև **ազգի լավագույն հատկանիշների ու առաջավոր տրադիցիաների**, նրա **կուլտուրական նվաճումների արժանի կրողներն ու պահպանողներն են:** Դա բնավ չի խանգարում այն բանին, որ ազգի պատմական վերընթացում **վճռական դերը կատարի դասակարգային հոգեբանական գործոնը:** Այսպես լուծելով խնդիրը, գրախոսվող գրքի հեղինակը համոզում է, որ շահագործող և շահագործվող դասակարգերի էթնիկական հոգեբանության միջև կան որոշ **ընդհանուր բաներ, շեշտակի տարբերությունների հետ միասին:** Սակայն շահագործվող դասակարգերի համար բարեկամության զգացմունքն է հատկանշականը: Ուստի, ճիշտ չեն նրանք, ովքեր «հերքում» են այն իրողությունը, թե ազգ կազմած հակոտնյա դասակարգերին հատուկ են ազգային ընդհանրության որոշակի գծեր (էջ 26—27):

Ահա թե ինչու մարքսիստը կոչված է պայքարելու ինչպես ազգային **յուրահատկությունների թերագնահատման,** նմանապես և դրանց նշանակության **ուռճացման** փորձերի դեմ: Սոցիալիզմը, բացառելով բուրժուական նացիոնալիզմի ամեն մի դրսևորում, միաժամանակ մերժում է ազգային նիհիլիզմը: Իր ուսումնասիրությամբ այս ճշմարիտ համոզմունքն է պրոպագանդում հեղինակը: Աշխատության կարևորությունն ընդգծելու միտումով նա հիշատակում է, որ առանց հանգամանորեն իմանալու ազգային հոգեբանության էությունն ու դերը հասարակական կյանքում, հնարավոր չէ արդյունավետ ուսումնասիրել ՍՍՀՄ ազգերի մերձեցման ու ծաղկման իրական ընթացքը: Եվ դա ճիշտ է:

Հետազոտության երկրորդ գլխում հեղինակը մարքսիստաբար քննարկում է ազգային նկարագրի ու հոգեբանության էվոլյուցիայի հարցերն ուսումնասիրած բուրժուական էթնոհոգեբանական դպրոցի ներկայացուցիչների հայացքները: Շարադրելով աշխարհագրական, ֆիզիոլոգիական, բիոլոգիական այն հայացքները, որոնք իրենց հետևություններով արդարացնում են վայրագ ցեղայնության, ֆաշիզմի ու համատարած մարդասպանության XX դարի պրակտիկան, հեղինակը եզրակացնում է, որ գեոգրաֆիզմի ու ռասիզմի մարդատյաց ձգտումները ցայտուն դրսևորվել են արևմտագերմանական ռեակցիոն սոցիոլոգների երկերում: Բազում փաստերի վերլուծմամբ ապացուցելով ազգային հոգեբանության և ազգային խառնվածքի բուրժուական ըմբռնումների հակագիտական բնույթը, նա ընդգծում է, որ ըստ մարքսիզմի ժողովրդի էթնիկական հոգեբանությունը կաղապարվում է գլխավորապես առկա արտադրաեղանակի, նրա աշխատանքային գործունեության ու հասարակական հարաբերությունների **որոշիչ** ներգործությամբ (էջ 45): Հիշատակելով, որ հասարակական պրոգրեսին համընթաց նվազում է բնության խոլական ուժերի ազդեցությունը մարդկանց վրա, Ջանդիլդինը միաժամանակ շեշտում է, թե աշխարհագրական գործոնները ևս ազդում են ազգային հոգեբանության վրա:

Հեղինակին հաջողվել է համոզել ընթերցողին թե որքան այժմեական ու կարևոր է ազգային նկարագրի ու ազգային հոգեբանության ուսումնասիրությունը:

Քննարկվող հետազոտության երրորդ մասում շոշափվում է մի կարևոր հարց ևս— ազգային խառնվածքը կամ նկարագիրը պատրա՞նք է, թե՞ իրականություն: Այս հատվածում հեղինակը քննադատում է Ի. Ս. Կոնի այն դրույթը, որ **ազգային խառնվածքը և՛ միֆ է, և՛ իրականություն:** Նշելով Կոնի սույն դրույթի խախուտությունը՝ Ջանդիլդինը վկայակոչում է նրա հետևյալ տողերը. «...պատմական մատերիալիզմը երբեք չի հերքում տարբեր ժողովուրդների հոգեկան յուրակերպ հատկությունները... Զարգանալով բնական, հասարակական, կուլտուրական պայմաններում, տարբեր ժողովուրդներ ունեցել են խառնվածքների բազմակերպ տիպեր, մտածելակերպեր, վարվելաձևեր, որոնցից յուրաքանչյուրն առավել կամ նվազ չափով համապատասխանել է իրեն ծնող հանգամանքներին: Գիտությունը չի կարող հրաժարվել այդ առանձնահատկությունների ուսումնասիրությունից» (տե՛ս «Иностранная литература», № 9, 1968, стр. 223):

Եզրակացնելով, որ Կոնը հարցի էությունը շփոթում է դրա դրսևորման սուբյեկտիվ եղանակի հետ, հեղինակը մի անգամ ևս ընդգծում է, որ **ազգային հոգեբանության գոյությունը բնավ չի բացառում դասակարգային տարբերությունների առկայությունն ազգի ներսում:** Գռեհիկ սոցիոլոգն է դասակարգայնության հովանու ներքո հերքում ազգային հոգեբանությունների գոյությունն ու զանազանությունը: Ինչպես ազգային կուլտուրայում կա երկու կուլտուրա, այդպես էլ ազգային ընդհանուր խառնվածքում կան դասակարգային հոգեբանության տարբեր տիպեր (էջ 102—103):

Միանգամայն ճիշտ է վարվել հեղինակը, ազգային հոգեբանության ընդհանրության կըռվանը հաստատելով մարքսիզմի դասականների մտքերի վկայակոչմամբ: Անհրաժեշտ ենք համարում հիշատակել դրանք այս շարադրանքում: Ֆ. Էնգելսը գրել է. «Անգլիական ազգային խառնվածքը էապես զանազանվում է ինչպես գերմանականից, նմանապես և ֆրան-



սիականից...» (Соч., т. 1, стр. 602): Այնուհետև Էնգելսի մոտ կարդում ենք. «Անգլիայի քաղաքացիական ազատությունը, նրա ազատ մամուլը, ծովային գերիշխանությունը և վիթխարի արդյունաբերությունը... լիակատար զարգացրին գրեթե յուրաքանչյուր անհատի ազգային խառնվածքին հատուկ եռանդը, վճռական գործնականությունը զուգորդված ամենասառնհանգիստ դատողականության հետ...» (նույն տեղը, էջ 618—619): Էնգելսը ցավում էր, որ «ոչ ոք չի խորացել անգլիական պատմության էության և անգլիական ազգային խառնվածքում» (նույն տեղը): Ավանդույթներին չափազանց կարևորություն տալ, անցյալի գերագնահատում, զանազան պայմանականությունների խստագույն կատարում— ահա սրանք են անգլիական ազգային խառնվածքին բնորոշ հատկանիշները: Անգլիայում որքան նվազում է միապետության տարրը, այնքան բարձրանում է անգլիացու հարգանքը միապետի նըկատմամբ: Ոչ մի երկրում չկառավարող անձնավորությունն այնքան հարգանք չի վայելում, որքան Անգլիայում: Այդպես և լորդերի պալատը (տե՛ս նույն տեղը, էջ 621—622):

Որպեսզի ընթերցողն իր համոզման մեջ անսասան լինի, հեղինակը վկայակոչում է Ֆ. Էնգելսի մի այլ միտք. «Շատ առումներով անգլիացիների ու իռլանդացիների միջև այնպիսի տարբերություն կա, ինչպիսին ֆրանսիացիների ու գերմանացիների միջև. առավել թեթևամիտ, դյուրաբորբոք ու տաքարյուն իռլանդացու և հանդարտաբարո, չափավոր, խոհական անգլիացու միջև շփումը վերջին հաշվով կարող է երկուսի համար էլ օգտակար լինել միայն: Անգլիական բուրժուազիային հատուկ քարթու էգոիզմն ավելի երկար կմնար բանվոր դասակարգի մեջ, եթե նրան չխառնվեր այնքան ինքնուրաց, ամենից շատ զգացմունքով առաջնորդվող իռլանդացու խառնվածքը, ու եթե զուտ խոհական ու սառը անգլիական խառնվածքը չմեղմանար իռլանդական արյանը խառնվելով և վերջիններիս հետ մշտական շփումներով» (Соч., т. 2, стр. 356, 381): Վերջապես, Ֆ. Էնգելսը նշում է, որ անգլիական ու ֆրանսիական մատերիալիզմների տարբերությունը համապատասխանում է այդ ազգերի զանազանությանը: Ֆրանսիացիներն անգլիական մատերիալիզմն օժտեցին սրամտությամբ, միս ու արյունով, պերճախոսությամբ, դրան հաղորդեցին ցարդ չեղած շուք ու ավյուն:

Գրախոսվող գրքի հեղինակը նշում է, որ տվյալ ժողովրդի փիլիսոփայական մտքի ընթացքը պայմանավորված է **ո՛չ միայն** ազգային խառնվածքով, այլև ուրիշ գործոններով: Այս ամենից հետո նա եզրակացնում է, թե ազգային նկարագիրը միագումարն է հոգեբանական այն յուրահատուկ գծերի, որոնք առավել կամ նվազ չափով հատուկ են սոցիալ-էթնիկական այս կամ այն հանրությանը զարգացման պատմա-տնտեսական, կուլտուրական ու բնական հանգամանքներում (էջ 122): Ազգային հոգեբանության հատկանիշները փոփոխվում և անհետանում են նույնպիսի դանդաղությամբ, ինչպիսի դանդաղությամբ ձևավորվում են:

II

Ի դեպ, ավելորդ չենք համարում այս գրախոսականում խիստ համառոտակի անդրադառնալ Է. Ա. Բաղրամովի՝ **Ազգային հարցը և բուրժուական գաղափարախոսությունը** ծանրակշիռ հետազոտությանը, որը լույս է տեսել Ջանդիլդինի գրքից հինգ տարի առաջ: Այս դեպքում մեզ հետաքրքրում են նշված երկի երկրորդ և երրորդ գլուխները, որոնք հիմնավորապես արծարծում են ազգային հոգեկան խառնվածքի ու ազգային հարաբերությունների պսիխոլոգիզացիայի էության կենսական հարցերը:

Բաղրամովը ևս ընդգծում է, որ ազգային խառնվածքի պրոբլեմը պետք է քննարկել ու լուծել պատմական մատերիալիզմի մեկնակետից, ժողովրդի հոգևոր կերպարին ինտերնացիոնալ մոտեցում ցուցաբերելով: Մազաչափ անգամ չանտեսել ազգային յուրահատկությունները, բայց և **բնավ չգերագնահատել դրանց նշանակությունն ու տեղը հանրության կյանքում,**— գրում է նա:— Իրականում բոլոր ազգերն ու ժողովուրդները **յուրովի** են դրսևորում իրենց մտքերը, զգացմունքները, որոնք, սակայն, հատուկ են բոլորին: Սա վերաբերում է զարգացման տարբեր աստիճանների վրա գտնվող, ինչպես և սոցիալական մեկ ընտանիքում ապրող ՍՍՀՄ ազգերին: Բացի այս, ազգն ունի իր արտադրահարաբերությունների տիպն ու ձևը, աշխատանքի կիրառման սոցիալական եղանակը, որոշակի բնավորությունը, կուլտուրայի ու կենցաղի հաստատությունները: Տարբեր են նաև ժողովուրդների աշխարհագրական միջավայրերն ու գոյամիջոցների հայթայթման արգելքները: Ազգն ունի միաժամանակ իր տրադիցիաները, որոնք, իհարկե, կենսունակ են ու պատմության ընթացքում անցնում են սերնդե-սերունդ. թեև Բաղրամովը հիշատակում է, որ ազգերի միջավայրի ընդհանրականության դեպքում համանման են նաև նրանց հոգեկան խառնվածքները: Հետևաբար, ազգերի **ապրելակերպի համանման պայմանները** նրանց հոգևոր կերպարին **ընդհանրություն են հաղորդում** և հակա-

ռակը, առանձնահատուկ **միջավայրն ու ապրելակերպը,** նրանց օժտում են **հոգեկան յուրակերպ գծերով** (էջ 90—91):

Ինքնին հասկանալի է, որ տվյալ ազգի հոգևոր կերպարի առանձնահատկություններն առավելապես դրսևորվում են նրա կուլտուրայի բոլոր ոլորտներում, աշխատանքում, կենցաղում և, առհասարակ՝ նիստուկացում: Բայց, միաժամանակ, ազգայինը երբեք չի հակասում համամարդկայինին, **չի սքողում մարդկանց դասակարգային** ու այլ **զատորոշող հատկանիշները:** Որ ազգն էլ զննենք, գրում է Բաղրամովը, նրա ներկայացուցիչներն ունեն թե՛ համամարդկային, թե՛ դասակարգային հատկանիշներ, ինչպես և անհատական առանձնահատկություններ: Իսկական արվեստի ներկայացուցիչը, արտահայտելով **համամարդկային զգացմունքներ, չի կարող միաժամանակ ազգային չլինել** (էջ 94):

Հիրավի, ազգի հոգեկան **նկարագիրը դասակարգային սահմաններից լայն է,** բայց ճիշտ չէ այդ հասկացությունը լիովին մեկուսացնել դասակարգայինից: Դրանք փոխներգործում են, իսկ ազգի հոգեկան խառնվածքի **միասնությունը պայմանական է:** Իրականում համազգային հոգեբանության գծերը տարբեր դասակարգերի ու խավերի ապրելակերպում ու իդեոլոգիայում տարբեր իմաստ ու սոցիալական երանգ են ունենում (էջ 95):

Ազգային հոգեբանության հարցերը քննելիս մենք չպետք է մոռանանք, որ պատմական հույժ տևական ժամանակահատվածում են կազմավորվել նրա հատկանիշները, որոնք փոփոխվում են սոցիալական միջավայրի բարդ ոլորտներում: Մանավանդ, ազգային խառնվածքի վրա իր կնիքն է դրոշմում **ներազգային դասակարգային պայքարը, սահմանափակելով** դրա դերը ազգի լինելության մեջ: Այդպես է լինում այն պատճառով, որ մարդու ստացած տպավորությունները նախ և առաջ անցնում են դասակարգային գիտակցության բովից, թեև ժամանակի ընթացքում դասակարգերը զարգանալով կորցնում են ազգային հոգեկան խառնվածքի որոշ հատկանիշներ, որոնք շարունակում են մնալ այլ խավերի կյանքում:

Արդարև, իրավացի է Բաղրամովը, երբ ասում է, թե ազգային խառնվածքը կամ նկարագիրը պետք է գնահատել հույժ պատմականորեն, ելնելով փոփոխվող հանգամանքների ներգործությունից: Բայց, շարունակում է նա, **չի կարելի ազգի հոգեկան խառնվածքը շփոթել նրա սոցիալ-քաղաքական կերպարի հետ,** որն արմատապես փոխվում է **նոր հանգամանքների** թելադրանքով, իսկ ազգային նկարագրի ընդհանուր գծերը պահպանում են որոշակի կայունություն: Նույնիսկ այն դեպքում, երբ փոխված է ազգային կուլտուրայի բովանդակությունը (ինչպես դա կատարվել է ՍՍՀՄ-ում), ազգի հոգեկան խառնվածքի բնորոշ հատկանիշները հիմնականում դրսևորվում են կուլտուրայի ձևերում: **Բանվորի ու բուրժուայի հոգեբանություններն ըստ էության տարբեր են, բայց ըստ ձևի՝ ընդհանուր-ազգային:** Մերկացնելով ազգային կուլտուրայի լոզունգի ռեակցիոն բնույթը՝ Լենինը ժխտում էր դրա բովանդակությունը (բուրժուական էությունը) և ոչ դրա ազգային ձևը: Պրակտիկան ցույց է տալիս, որ ազգային հոգեկան նկարագրի տարբեր տարրեր կարող են հնանալ, իսկ որոշ գծեր ավելի վառ դրսևորվել նոր պայմաններում (էջ 100):

Միանգամայն համոզիչ է Բաղրամովի այն գնահատականը, որի համաձայն սոցիալիստական գաղափարախոսության և հոգեբանության տիրապետմամբ, ավտոմատիկաբար չեն վերանում ազգային յուրահատկությունները: Ընդհակառակը, ՍՍՀՄ ազգերի ու ժողովուրդների սոցիալիստական կուլտուրաների ծաղկմամբ **զարգանում են** և ազգերի նկարագրի լավագույն գծերը: Ժողովուրդներն սկսում են օգնել և հարգել միմյանց, ազդել ու ազդվել կուլտուրական շփումներում: Զարգացման ներկա էտապում ՍՍՀՄ ազգերի մերձեցմամբ նրանց յուրահատկությունները **չեն համահարթվում:** Դա կլինի շատ հետո (էջ 104—105):

Հեղինակի սույն հետևությունը բխում է սովետական ժողովրդի ավելի քան կեսդարյա փորձից. մի հանգամանք, որն իր փաստական տվյալներով հաստատում է ազգային հոգեբանության ու ազգային նկարագրի հասկացությունների և իրողությունների ռեալականությունը մեր օրերում:

Չմոռանանք ասել, որ վերջին քանամյակում ազգային հարցերին նվիրված սովետական հեղինակների հետազոտությունների մեջ՝ Բաղրամովի վերոհիշյալ երկը աչքի է զարնում հարցերի համակողմանի ու խոր քննարկմամբ:

III

Անդրադառնալով ազգային նկարագրի կամ խառնվածքի, ազգային գիտակցության ու ազգային զգացմունքի առնչություններին, Ջանդիլդինն իրավամբ գրում է, թե հանրության **ազգային նկարագիրն,** անշուշտ, **ազգային հոգեբանության կարևոր տարրն է,** որի հետ սերտորեն զոդված են ազգային գիտակցությունը, ինչպես և ազգային զգացմունքը: Սրանից հետո նա ընդգծում է, թե ազգային ինքնագիտակցությունը հանգեցնել էթնիկական պատկանելության պարզ ճանաչումին, ճիշտ չէ, քանի որ էթնիկական պատկանելության



գիտակցումը գոյավորվում է էթնիկական հանրության լինելության համընթաց, իսկ ինքնագիտակցության առաջացումը ենթադրում է ժողովրդական զանգվածի զարգացման ավելի **բարձր մակարդակ:** Ըստ որում, այս ամենն էականորեն չեն շոշափում անհատի դասակարգային գիտակցությունն ու աշխարհայացքը. կապիտալիստի ու բանվորի **ազգային պատկանելության** պարզ գիտակցումի մեջ **դժվար թե դասակարգային հենք լինի:** Այլ է ազգային ինքնագիտակցությունը, որը ձևավորվում է զարգացող կապիտալիզմի պայմաններում, դասակարգային շահերի ու գիտակցության, հետևաբար և գաղափարական զանազան հիմքերի վրա (էջ 125—129):

Այսուհանդերձ, հարկադրված ենք ասել, որ վերոհիշյալ առնչությունների իրական աղերսը նվազ համոզիչ է և տակավին կարոտ հիմնավոր մշակման: Այո՛, ժողովրդի ազգային ու դասակարգային գիտակցությունների փոխներթափանցման ու փոխադարձ կապի առեղծվածը պետք է ավելի հանգամանորեն հետազոտվի տարբեր ժողովուրդների ազգալինելության դարավոր պրոցեսի կոնկրետ զննմամբ: Այս առումով հարցի հետագա լուսաբանմանը որոշ չափով կնպաստեն վերջերս լույս տեսած մի քանի աշխատություններ[1]: Ճիշտ է, որ ազգային հոգեբանության առկայությունը ենթադրում է երեք բան՝ ազգային նկարագիր, ազգային զգացմունք և ազգային ինքնագիտակցություն: Սակայն չպետք է անտեսել այդ ամենի գոյավորման ընթացքի վրա ունեցած ազգային ավանդույթների ու սովորույթների ներգործությունը: Գոյատևման առումով այս վերջինները զարմանալի կերպով կենսունակ են ու երկարակյաց:

Հասարակական հոգեբանության էվոլյուցիան գալիս է ապացուցելու, որ տվյալ ազգի ազատագրական վերընթացի՝ համազգային ճգնաժամի (կեղեքիչ ազգի հետ բախվելիս) ժամանակահատվածում ազգային ինքնագիտակցության դերն անգնահատելի է: Մի՞թե ֆաշիզմի ու իմպերիալիզմի մարդակործան արշավի դեմ ծառացած ազգերի ինքնագիտակցության դերն այնքան աննշան է եղել, որքան կարծում են ոմանք: Իհարկե ոչ: Անհերքելի է, որ Սարդարապատի հաղթական ճակատամարտը, Վանի գոյամարտը և Մուսա լեռան քառասուն օրն ազգային ինքնագիտակցության մեծանշանակ ու վառ դրվագներ են:

Իրավացի է գրախոսվող գրքի հեղինակը, մերժելով այն հեղինակների հայացքը, ովքեր ազգային նկարագրի կամ խառնվածքի **միակ ոլորտը** կուլտուրան են համարում: Իրականում ազգային հոգեկանի հատկանիշները գոյավորվում են ո՛չ միայն նրա տնտեսակարգի յուրահատկություններով, այլև հասարակական, աշխարհագրական, կուլտուրական, կրոնական, ազգամիջյան կապերի հանրագումարով:

Տեղին է ասված, որ ազգային խառնվածքը (որին էապես առնչվում են սովորույթներն ու վարվեցողությունը, անսովոր միջավայրի նկատմամբ ցուցաբերած զգացմունքային-հոգեբանական ռեակցիան, արժեքային կողմնորոշումը, պահանջները ու ճաշակը), անհատների մոտ նվազ ցայտուն է դրսևորվում, քան մարդկային **զանգվածների** գործողություններում: Թեև անհատական խառնվածքների էթնիկական գծերից են միահյուսված ազգային հոգեբանության առանձնահատկությունները, բայց և այնպես անհատն ի վիճակի չէ պարփակելու ազգային նկարագրի ողջ հարստությունը: Սա երբեք չի նսեմացնում այն մեծ ներգործությունը, որն ունի անհատների հոգեկան ատաղձի վրա ազգային ընդհանուր հոգեբանությունը (էջ 146—152):

Միանգամայն անառարկելի է հեղինակի այն կարևոր հետևությունը, թե միատիպ զանազան ազգերի միջև ավելի շատ են նրանց ինտերնացիոնալ, քան ազգային յուրահատուկ գծերը, որի ապացույցներից են նրանց առակներն ու հեքիաթները: Այստեղ վառ դրսևորվում է յուրաքանչյուր ազգի հոգեկան հարստության ինտերնացիոնալ էությունը:

Ուշագրավ է հեղինակի այն պնդումը, թե էթնիկական **զտարյուն** հանրություններ, **զուտ** ազգեր չկան: Այդ ամենը ռեակցիոն ռասիզմի մտահնարանքն է: Իրողությունն այնպիսին է, որ զարգացած կապիտալիզմի օրոք արդի բուրժուական ազգերն իրարից զանազանվում են **ավելի շատ** յուրահատկություններով, քան իրենց նախորդները: Իբրև ապացույց այս եզրակացության, հեղինակը վկայակոչում է Ֆ. Էնգելսի հետևյալ ասույթը. «Եթե VII և VIII դարի Սկանդինավիայի ու Գերմանիայի բնակիչները միմյանցից քիչ էին տարբերվում, քան այժմ, ապա դրա պես էլ Իռլանդիայի ու Գաղիայի կելտերի միջև սկզբում ավելի շատ նմանություններ պետք է եղած լինեն, քան արդի իռլանդացիների ու ֆրանսիացիների միջև

[1] Б. Г. Ананьев. Человек как предмет познания. Л., 1969. М. Г. Ярошевский. Психология в XX столетии. М., 1971. Г. Уэллс, Крах психоанализа, М., 1968, «История и психология». М., 1971.

կան»: Այստեղից հետևում է, որ պատմական տարբեր աստիճանների վրա գտնվող ժողովուրդների զանազանություններն ավելի ակնբախ են, քան նույնակերպ մակարդակ ունեցողներինը: Կապիտալիստական զարգացած ազգերի տարբերություններն ավելի շատ են, քան հին ու հետամնաց ժողովուրդներինը (էջ 159—160). կապիտալիզմից առաջ, ժողովուրդների զարգացման վիհն այնպես խոր չէր, ինչպես նրա օրոք: Այս դեպքում է, որ գոյանում են կեղեքող ու կեղեքվող թշնամի ազգեր: Այստեղից է սնվում ազգատելության, նացիոնալիզմի ու շովինիզմի գաղափարախոսությունը: Սրա հետ մեկտեղ, կապիտալիզմի օրոք ընտեղծվում են տնտեսության, քաղաքականության, գիտության և կյանքի այլ կողմերի ինտերնացիոնալ միասնության օբյեկտիվ նախադրյալներ, որոնք **լիովին** զարգանալ ու մարմնավորվել կարող են միայն սոցիալիզմի օրոք:

Ազգային զգացմունքը պատմական կատեգորիա է, որն սկզբնավորվում է ազգի գոյավորման հեռավոր ակունքներում և դրսևորվում է այն դեպքում, երբ առկա են ազգային ինքնագիտակցության ու մարդկանց էթնիկական պատկանելության իրողությունները: Այլ ազգի վերաբերյալ ունեցած անհանդուրժողականությունը, գոռոզամտությունը թյուր ըմբռնման, սխալ ինֆորմացիայի, կեղծ դաստիարակության հետևանք են՝ ձեռնտու կեղեքողներին, «բաժանի՛ր, որ տիրես» սկզբունքն իրագործելու համար:

Միանգամայն ճիշտ է հեղինակը ազգային զգացմունքը համարելով բազմակողմանի ու բարդ մի կոմպլեքս, որն առնչվում է ո՛չ միայն իր, այլև ազգերի գոյավիճակին և փոփոխվում է հասարակական կյանքին զուգընթաց: Ազգային զգացմունքը հասարակական օբյեկտիվ իրականությամբ պայմանավորված հոգեկան այն յուրակերպ վիճակն է, որում արտացոլվում է մարդկանց առնչությունն իրենց ժողովրդի կյանքի տարբեր կողմերին (էջ 177): Այս առումով հեղինակը տեղին է վկայակոչում Լենինի դրույթն այն մասին, որ բուրժուազիան դավաճանում է ազատության, հայրենիքի, լեզվի ու ազգի շահերին, երբ նրա հանդիման հեղափոխական պրոլետարիատն է ծառանում: Երկրի տնտեսական, կուլտուրական ու քաղաքական հաստատությունների տեր բուրժուազիային հաճախ հաջողվում է իր դասակարգային շահատենչությանը ենթարկել կեղեքվող զանգվածներին, ինչպես և նրանց ազգային զգացմունքները: Ապա բերված է Լենինի դրույթը. «...խոսել ազգային զգացմունքի, իբրև ուրույն գործոնի մասին, նշանակում է միայն ավաղել հարցի էությունը»:

Իսկ ո՞րն է հարցի էությունը: Այն, որ մարդկանց կյանքում (դասակարգային հակամարտ հասարակությունների օրոք), պատմության շարժման առանցքը՝ դասակարգային նյութական շահերն են գերակշռող դեր խաղում ազգի առաջընթացում: Այսպիսով, բուրժուազիայի ազգային զգացմունքը ևս շահադիտական է, որը կոծկում է նրա շովինիզմի զավթողական միտումները: Հետևաբար, ազգային զգացմունքը չպետք է շփոթել բուրժուական նացիոնալիզմի հետ (էջ 209—210): Հարցը վերլուծելով պատմական առումով՝ հեղինակը եզրակացնում է. կեղեքող ու կեղեքվող ազգերի ընդհարումներում, վերջինիս դասակարգային ներքին հակամարտությունն առժամանակ մղվում է ետին պլանի վրա: Այն հանգամանքը, որ իմպերիալիստներն անողոք թալանում ու կեղեքում են ճնշված ազգի բոլոր խավերին, դրանով իսկ հարուցում են մերձակա նպատակի ու խնդիրների ընդհանրության, համերաշխության ըզգացմունք, ընդհանուր թշնամու դեմ միավորվելու և կռվելու կամեցողություն:

Կեղեքիչների հանդեպ տածած նողկանքի բուռն զգացմունքը շարժման որոշ փուլում վերաճում է համազգային զգացմունքի, որին բնորոշ է սոցիալական և ազգային տարակերպ երկու նկրտումների ներքին համաձուլումը: Ճնշված ժողովրդի ազգային զգացմունքի ընդհանրականությունը լինելով հարաբերական, իրականում արտաքին ազդակների ներգործությամբ համազգային միասնական կերպարանք է առնում, երբ ճնշվող ազգի մարդիկ ձգտում են թոթափել օտարի լուծը: Ազգային զգացմունքի **զարգացումը,** գրում է Ջանդիլդինը, զուգադիպում է նրա ազգային ինքնագիտակցության զարթոնքին (էջ 222—223):

Մարդկային հասարակության պատմությունն առհասարակ և ՍՍՀՄ ժողովրդի ազգային վերածննդի հարուստ պատմությունն ապացուցում են Կ. Մարքսի այն թեզի ճշմարտացիությունը, ըստ որի՝ մարդկային զգացմունքների ու ունակությունների լիակատար ազատագրումը կարող է լինել լոկ մասնավոր սեփականության վերացմամբ:

Քննարկման առարկա հետազոտության տեսական բոլոր թեզերն իրենց համակողմանի փաստարկումն են գտնում գրքի հինգերորդ գլխում, ուր հեղինակը պատշաճ բանիմացությամբ վերլուծում է սոցիալիստական ազգերի կեսդարյա արգասալի էվոլյուցիան, որն ընթանալով ազգայինի ու ինտերնացիոնալիստականի լենինյան զոդման հունով, դարձել է ողջ մարդկությանը դեպի կոմունիզմ տանող մայրուղին:

Որքան իրավ, նույնքան և համոզիչ է հեղինակը, երբ անհրաժեշտ է համարում շարունակել պայքարը ՍՍՀՄ սոցիալիստական ազգերի մերձեցման արհեստական փութացման և տամերձեցման արհեստական փութացման և տակավին հարատևող ազգային որոշ թորշոմած վերապրուկների դեմ: Ակներև է, որ հատուկ, գործնական անհրաժեշտություն չկա քովետական հետազոտողների գլխավոր ուշադրությունը սևեռել ազգերի ու ազգային կուլտուրաների ապագա միաձուլման վրա, քանի որ արդի իրականությունը կոնկրետ նյութ է տալիս միայն ազգերի մերձեցման ու ծաղկման վերաբերյալ (տե՛ս էջ 291): Այդուհանդերձ, Ջանդիլդինը տեղին է համարում հիշատակել, որ սոցիալիստական ազգերի ծաղկող կուլտուրաների ձևերը հետզհետե ձեռք են բերում ինտերնացիոնալ բնույթ: «Բայց ազգային ձևերի ինտերնացիոնալացումը չի կարելի համարել կուլտուրայի ապազգայնացման պրոցես: Ազգային այն տարրերը, որ ինքնակատարելագործվելով միջազգային հրապարակ են ելնում և դառնում շատ ժողովուրդների սեփականությունը, չեն դադարում ազգային լինելուց, չեն զրկվում իրենց սպեցիֆիկ գույնից» (էջ 290):

Ամփոփենք մեր ասելիքը այս ուշագրավ աշխատության մասին:

1. Գրախոսվող երկն ակներև ներդրում է ազգային հարցի մարքսիստական լուսաբանության բնագավառում և նշանակալի առաջխաղացում՝ հեղինակի նախորդ գրքի համեմատ:

2. Ստեղծագործական որոնումը զուգորդելով նյութի հիմնավոր մշակման հետ, հեղինակին հաջողվել է իր մտահղացումն իրագործել պատշաճ մակարդակով, մի շարք ուրույն եզրահանգումներով հանդերձ:

3. Տոգորված լինելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կոնստրուկտիվ գաղափարներով և այժմեականության հրամայական պահանջների գիտակցությամբ, հետևողականորեն մերկացնելով բուրժուական աշխարհի ջատագովների սնամեջ ենթադրությունները, անժխտելի ու նշանակալի փաստերի վերլուծմամբ գիրքն իմաստավորում է սոցիալիստական ազգերի լենինյան ուղին ՍՍՀՄ-ում:

4. Ուսումնասիրության ոլորտն առնելով զգալի չափով նոր նյութեր, հեղինակը մերկացրել է ազգային հարցի բուրժուական տեսության և հոռի քաղաքականության ռեակցիոն, մարդատյաց էությունը:

5. Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ քննարկվող աշխատությամբ հեղինակը զգալիորեն խարխլում է դոգմատիկների կառուցած պատնեշները և դրանով իսկ ստեղծագործական մարքսիզմի կիրառման խոստումնալի օրինակ ծառայում:

Վերոհիշյալ արժանիքների հետ մեկտեղ աշխատությունը զերծ չէ ստվերներից:

ա) Աշխատությունը, դժբախտաբար, պարունակում է նախորդ գրքում[1], եղած սխեմատիզմի տարրեր. բ) ազգային հարցի **արդի** բուրժուական մի շարք տեսաբանների երկերը քննադատական վերլուծման չեն ենթարկված. գ) փաստարկումները հաստատող պատմական էքսկուրսները սակավ են. դ) համարձակ ու ճշմարտացի եզրակացությունները երբեմն ընթացակցվում են թերասածության բնույթի վերապահումներով. ե) անբավարար է օգտագործված ժողովուրդների ազգային-ազատագրական մաքառումների հարուստ պատմությունը. զ) ցայտուն չի բացահայտված հեղափոխական շարժման **անցյալի** ու **ներկա** դոգմատիկների գաղափարական կապը:

Ինչևէ: Դրական գնահատելով հեղինակի այս արգասաբեր քայլը, ցանկանք, որ փրագմենտար, բայց օգտակար այդ հետազոտությունը մոտակա տարիներում վերամշակվի, ընդլայնվի ու դառնա ծավալուն մենագրություն: Անհրաժեշտ է գրախոսվող գիրքը թարգմանել հայերեն:

**Ա. Գ. ԱԴՈՅԱՆ**
**Հայկ. ՍՍՀ կուլտուրայի**
**վաստակավոր գործիչ**

[1] Н. Джандильдин, Коммунизм и развитие национальных отношений. М., 1964.

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1971 Թ. ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ







## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ-ՀԱՄԱԳՈՒՄԱՐ







ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻ ՆԱԽԱԳԻԾԸ



ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ



ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03274 Պատվեր 1855 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ 12.200 Գինը 25 կ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 19/XI 1971 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կարգապահության մասին, *երկրորդ, լրացված հրատ. (ժողովածու), Մ.,* «Политиздат», *1971, 232 էջ:*

ԻԼՅԻՉԵՎ Լ. Ֆ.— Մտածող, մարտնչող մարդը *(Ֆրիդրիխ Էնգելսի մասին): Մ.,* «Знание» *հրատ., 1971, 32 էջ:*

ԳՈՐԿԻ Ա. Մ.— Վ. Ի. Լենին, *Մ.,* «Политиздат», *1971, 64 էջ:*

*Լենինի մասին գրված լավագույն գործերից է: Իլյիչն ինձ համար եղել է,— գրում է Գորկին,— խստապահանջ ուսուցիչ, բարեսիրտ ու հոգատար ընկեր: Գրքում Լենինը ներկայացված է իբրև խստակյաց մարդ, հիանալի տեսաբան, պրոլետարիատի հեռատես առաջնորդ:*

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների մատենագիտություն: *1904—1969: Կազմեց Ելենա Բաղդասարյանը: «Հայաստան» հրատ., 1971, 380 էջ:*

*Այստեղ զետեղված են Վ. Ի. Լենինի 1904—1970 թթ. հրապարակված երկերի այբենական ցանկը, թեմատիկ ժողովածուների, կույրերի համար հրատարակված գրքերի, Հայաստանում այլ լեզուներով (ռուսերեն, քրդերեն, ադրբեջաներեն և այլն) հրատարակված երկերի ցանկը, վիճակագրական տվյալներ հայերեն հրատարակության մասին և այլ նյութեր:*

Վ. Ի. Լենինը և արդիականությունը *(Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված գիտական-տեսական կոնֆերանսի նյութեր), «Հայաստան» հրատ., 1971, 176 էջ (ռուսերեն):*

ԶՈՒԲՈՎ Ն.— Ֆ. Է. Ձերժինսկի. *Մ.,* «Политиздат», *1971, 424 էջ:*

Սովետական հանրապետությունների եղբայրական համագործակցությունը տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ: *Մ.,* «Мысль» *հրատ., 1971, 240 էջ:*

ԱՄԻՐԲԵԿՅԱՆ Վ. Մ.— Հայաստանի մամուլը Հայրենական մեծ պատերազմի տարիներին *(1941—1945), Եր., ԳԱ հրատ., 1971, 286 էջ:*

Քաղաքատնտեսության սեմինար պարապմունքների անցկացման մեթոդիկա: *Մաս 1-ին: Կապիտալիստական արտադրական միջոց (դասագիրք): Մ.,* «Высшая школа» *հրատ., 1971, 288 էջ:*

ՅԱՐՈՇԵՎՍԿԻ Մ. Գ.— XX դարի հոգեբանությունը *(Հոգեբանական գիտության զարգացման տեսական խնդիրները), Մ.,* «Политиздат», *1971, 368 էջ:*

*Բացահայտելով մարքսիստական փիլիսոփայության դերը, հոգեբանական մտքի զարգացման ոլորտում, հեղինակը բնութագրում է ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության շրջանում հոգեբանության զարգացման առանձնահատկությունները, այդ հեղափոխության ավանդը հոգեբանական պրոցեսների ուսումնասիրման և նրանց կառավարման ոլորտում:*

ԷՌՆԵՍՏ Լ. Կ.— Մեքենաները հաշվում են: *Հաշվիչ մեքենաները անասնապահության եջ, «Հայաստան» հրատ., 1971, 116 էջ:*

ՎԱՍԻՆ Մ. Գ.— Մինչև հրաշք երկու քայլ է: *«Հայաստան» հրատ., 1971, 216 էջ:*

*Այս գիրքն արտացոլում է քիմիայի դերի մասին՝ տեխնիկայի, գյուղատնտեսության, արդյունաբերության և կենցաղի մեջ:*

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ա.— Հրաշալի էստաֆետը *(պատմվածք ակադեմիկոս Սերգեյ Մերգելյանի մասին), «Հայաստան» հրատ., 1971, 206 էջ:*

ԳԻՆԸ 25 Կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՆՔԱՅԻՆ ՋՐԵՐԸ

*Կրինիցկի զինվորական առողջարանի մի խումբ բժիշկներ ուսումնասիրում են մարդու և կենդանիների օրգանիզմում մագնեզիումի և կալցիումի անբավարարության հետևանքով առաջացած պաթոլոգիական փոփոխությունները։*

*Հանքային նյութերի անբավարարությունը լրացվում է մագնեզիում պարունակող ածխաթթվային ջրերի օգտագործմամբ, որը լավ արդյունք է տալիս, հատկապես, այնպիսի հիվանդությունների ժամանակ, ինչպիսիք են՝ վահանաձև գեղձի անբավարարության, լյարդի խրոնիկական բորբոքումները, կենտրոնական նյարդային համակարգի խանգարումները, ճարպափոխանակության խախտումները։*

*Լեհական և արտասահմանյան գիտնականների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մագնեզիումի անբավարարության հետևանքով ավելանում են չարորակ փոփոխություններն օրգանիզմում։ Արյունատար անոթների սկլերոտիկ փոփոխությունները ևս գիտնականները հակված են համարելու մագնեզիումի անբավարարության հետևանք։*

*Այսպիսով, միանգամայն հնարավոր է, որ հանքային ջրերը դառնան նույնպիսի ներգործող միջոց, որպիսիք են անտիբիոտիկները։*

## ՆՈՐ ՔԱՅԼԱՉԱՓ

*Բուժիչ քայլքով, վազքով զբաղվողները, տուրիստական արշավների մասնակիցներն ու ճանապարհորդները, անշուշտ, կուզեն իմանալ, թե որքան տարածություն են կտրել-անցել։ Այդ հեշտ է իմանալ, միշտ ունենալով* MM—5 *նոր մոդելի փոքրիկ քայլաչափը, որը թողարկում է Պենզայի ժամացույցի գործարանը։*

## «ԱՌԱՋԳԱԿԱՆ ԱԼՄԱՍՏ»

*Տարօրինակ է հնչում, այնպես չէ՞։ Բայց շատ ամուր հյուսվածքի առաձգականությունը և ալմաստի հատիկների կարծրությունը միահյուսված են այստեղ կաուչուկի միջոցով։ «Առաձգական ալմաստ»-ը թողարկվում է ժապավենի տեսքով, որը դյուրավ կարելի է կտրել տարբեր չափսերով։ Այն օգտագործվում է հղկման, փայլեցման և սուպերֆինիշային մշակման համար։*

## ՀԱՄԻ ԶԳԱՑՄԱՆ ԿՈՐՈՒՍՏ

*Համի զգացման նվազումը նախկինում անհայտ հիվանդություն էր. եզրահանգել է «Ջոռնել օֆ Ամերիկըն մեդիկալ ասոշիէյշն» ամսագիրը 35 մարդու ուսումնասիրման արդյունքների հիման վրա։ Դրա ախտանիշները մարդու մոտ ի հայտ էն գալիս հատկապես շնչառական ուղիների, ինչպես և գրիպից կամ վիրահատությունից հետո, որոնք առնչություն չունեն բերանի և քթի խոռոչի հետ։ 35 հիվանդներից 28-ը չէին զանազանում սննդամթերքի համը, թարմ և հնացած կերակուրը, չէին զգում գազի հոտը։ Համի կորստի հետևանքով նրանք չափից ավելի շատ են օգտագործում աղ և շաքար։ Համի զգայարանների կառուցվածքային փոփոխություններ չեն նկատվել։*

## ԱՎՏՈՄԱՏ-ԵՐԿՐԱԲԱՆ

*Աէրոֆոտոնկարահանումների միջոցով կազմված խոշոր մասշտաբի քարտեզների ավտոմատ պատճենահանումը հնարավորություն է ընձեռում վերլուծելու մարդու գործունեության տարբեր կողմերը և նրան շրջապատող միջավայրի առանձնահատկությունները։*

*Այս մեթոդի շնորհիվ կարելի է հայտնաբերել օգտակար հանածոների հավանական հանքավայրերը, հետախուզել անտառները՝ ծառատեսակները որոշելու, վնասատուներից տուժած բուսականության տեղամասի չափսերը ճշգրտելու համար։*

*Աէրոնկարահանումների միջոցով կարելի է որոշել բնակչության տեղաբաշխումն ու խտությունը, բնակավայրերի տնտեսական զարգացման մակարդակը, ինչպես նաև մի քանի ամսով կրճատել էկոլոգների և գեոդեզիստների հոգնատանջ աշխատանքը։*

*Ավտոմատ հետազոտման այդ տեխնիկան ստեղծել են ամերիկյան գիտնականները։*